ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 1
ՀՈՒՆՎԱՐ
1964 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
43-ՐԴ
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ԼԱՅՆ ՃԱՆԱՊԱՐՀ ՄԵԾ ՔԻՄԻԱՅԻՆ

Կոմունիստական պարտիան, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեն հետևողական ու հաստատուն կերպով կենսագործելով ՍՄԿՊ Ծրագիրն ու XXII համագումարի որոշումները, Սովետական Միության ողջ աշխատավորության ջանքերն ուղղել են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման նպատակին: Մեր լայնարձակ հայրենիքի բոլոր մասերում՝ հանքախորշերում ու դոմնային հնոցների մոտ, գործարաններում ու տրանսպորտում, հանրային դաշտերում, քիմիական լաբորատորիաներում միլիոնավոր մարդիկ իրենց ստեղծագործական նախաձեռնություններով ակտիվ մասնակցում են յոթնամյակի առաջադրանքները կատարելու և գերակատարելու համար մղվող պայքարին: Լուսաշող ու երջանիկ հասարակարգի կառուցման մեծ արշավի ավանգարդում են կոմունիստները, որոնք իրենց հերոսական գործերով ոսկե էջեր են գրում մեր դարի պատմության մեջ:

Անշեղորեն ղեկավարվելով մեր առաջնորդ և ուսուցիչ Վ. Ի. Լենինի այն ցուցումով, որ ռևոլյուցիայի հաղթանակից հետո տնտեսական շինարարությունը, երկրի էկոնոմիկայի վարգացումը կոմունիզմի համար մղվող պայքարի գլխավոր ասպարեզներ են, կոմունիստական պարտիան, նրա Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությունը բոլոր ջանքերը կենտրոնացնում են ժողովրդական տնտեսության կարևորագույն ճյուղերի արագ զարգացման վրա:

ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի դեկտեմբերյան պլենումում լսվեց և քննարկվեց ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար, ՍՍՌՄ Մինիստրների սովետի նախագահ ընկեր **Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ՝** **«Քիմիական արդյունաբերության արագ զարգացումը գյուղատնտեսական արտադրության վերելքի և ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն պայմանն է»** զեկուցումը: Վերլուծելով և հանրագումարի բերելով մեր երկրի էկոնոմիկայի զարգացման արդյունքները վերջին ժամանակաշրջանում, ընկեր Խրուշչովը նշեց այն վճռական և ռևոլյուցիոն դերը, որ կատարել է կոմունիստական պարտիան արտադրության, գիտության ու տեխնիկայի զարգացման և ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման գործում:

ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի նոյեմբերյան (1962 թվականի) պլենումի որոշումներին համապատասխան պարտիական օրգանները վերակառուցվեցին արտադրական սկզբունքով: Այդ նրանց հնարավորություն տվեց ավելի կոնկրետ և նպատակասլաց զբաղվելու արդյունաբերության ու գյուղատնտեսության էական հարցերով: Պարտիայի Կենտրոնական կոմիտեն և միութենական կառավարությունը մշակեցին նաև ժողովրդական տնտեսության «պլանավորումը բարելավելու,— ասում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— տեխնիկական քաղաքականությունը կենտրոնացնելու, կապիտալ շինարարության ասպարեզում կարգ ու

կանոն հաստատելու խոշոր միջոցառումներ»: Այդ ձեռնարկումներն արդեն տալիս են իրենց լավագույն պտուղները: Վերջին տասը տարում մեր հայրենիքում կառուցվել են **ութ հազար հինգ հարյուր արդյունաբերական խոշոր ձեռնարկություններ**, արտադրության համախառն արտադրանքն ավելացել է 2,7 անգամ, գրեթե երկու անգամ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը: Այդ աճն ավելի ցայտուն է արդյունաբերության արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրության ոլորտում. տասը տարում չուգունի արտադրությունն ավելացել է 31,3, պողպատինը՝ 41,9 միլիոն տոննայով, էլեկտրաէներգիայինը՝ 277,3 միլիարդ կիլովատ ժամով, նավթինը՝ 152,7 միլիոն տոննայով, բոլոր տեսակի գործվածքներինը՝ 2374 միլիոն գծամետրով, կաշվե կոշիկինը՝ 223 միլիոն զույգով:

Զգալի են նվաճումները նաև մեր երկրի գյուղատնտեսության զարգացման ասպարեզում: 1962 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, գնվեց 1,8 անգամ շատ հացահատիկ, 2,4 անգամ շատ միս, 2,7 անգամ շատ կաթ: Անցյալ տարի բամբակի հումքի բարձր բերք աճեցրին Միջին Ասիայի, հատկապես Ուզբեկստանի բամբակագործները, որի շնորհիվ ամբողջ Սովետական Միությունում գնվեց **հինգ միլիոն հարյուր երեսուն հազար տոննա բամբակ:** Մեր երկրում երբեք բամբակի հումքի այդպիսի բարձր բերք չի ստացվել:

Գլխավորն այն է, որ Սովետական Միությունում վճռական փոփոխություն է տեղի ունեցել գյուղատնտեսական մթերքների պետական մթերումների, հատկապես անասնաբուծական մթերքների մթերումների ստրուկտուրայում: Այսպես՝ 1940 թվականին երկրի գյուղատնտեսության հանրային սեկտորը պետությանը հանձնել է մեկ միլիոն 360 հազար տոննա միս, իսկ կոլտնտեսականները իրենց անձնական տնտեսություններից, որպես պարտադիր մթերումներ՝ 805 հազար տոննա, կաթ՝ համապատասխանորեն՝ 4 միլիոն 259 հազար տոննա և 2 միլիոն 194 հազար տոննա: Պարտիայի ձեռնարկած միջոցների շնորհիվ այժմ պատկերը բոլորովին փոխվել է: Ընկեր Խրուշչովն իր զեկուցման մեջ ընդգծում է, որ 1962 թվականին անասնապահական մթերքների պետական գնումների մեջ կոլտնտեսությունների և սովխոզների բաժինը կազմում էր մսինը՝ 86, կաթինը՝ 95, ձվինը՝ 70 տոկոս: Անասնապահական մթերքների պետական գնումների կառուցվածքի այսպիսի փոփոխումը սոցիալ-քաղաքական մեծ հաղթանակ է մեր երկրի համար:

Չնայած, որ 1963 թվականը կլիմայական բացառիկ անբարենպաստ տարի էր, այնուամենայնիվ երկրում, 1953 թվականի համեմատությամբ, 836 միլիոն փթով ավելի հացահատիկ մթերվեց: Սակայն հացահատիկը, գլխավորապես ցորենը, չբավարարեց բնակչության պահանջմունքները, որի պատճառով էլ Սովետական կառավարությունն ստիպված եղավ որոշ քանակությամբ հացահատիկ գնել արտասահմանից:

Երկրի ժողովրդական տնտեսության բուռն վերելքի շնորհիվ, անցյալ տասնամյակում 2,3 անգամ ավելացավ ազգային եկամուտը, 61 տոկոսով աճեցին աշխատավորների (մեկ աշխատողի հաշվով) ռեալ եկամուտները, հանրային ֆոնդերից բնակչության ստացած վճարումներն ու արտոնություններն ավելացան 17 միլիարդ ռուբլով:

Պարտիայի ու կառավարության, մեր երկրի աշխատավորության գործադրած ջանքերի շնորհիվ կոմունիզմի կառուցման ճանապարհին մենք արդեն կատարել ենք մեծ քայլ, Սովետական Միությունում ստեղծվել է հզոր ծանր ինդուստրիա,



որը տարեցտարի ավելացնում է արտադրանքի թողարկումը. կատարելագործվում է արտադրությունը նոր, առաջավոր տեխնիկայի բազայի վրա:

Բայց այն, ինչ արված է կոմունիզմի կառուցման ծրագրի կատարման համար, միայն մեծ գործի սկիզբն է: Մեր պարտիան ձգտում է լուծել ավելի վեհ խնդիրներ, իրականացնել ազնիվ նպատակներ: Պարտիայի կարևորագույն խնդիրներից է՝ լայն ասպարեզ տալ տեխնիկայի առավել առաջադիմական ուղղությունների և, ամբողջությամբ վերցրած, ժողովրդական տնտեսության կարևորագույն ճյուղերի զարգացմանը, բարձրացնելով արտադրության տնտեսական արդյունավետությունը: Իսկ ժողովրդական տնտեսության այդպիսի ճյուղերից մեկը քիմիական արդյունաբերությունն է: Ահա թե ինչու այժմ, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ժամանակաշրջանում պարտիան ու ժողովուրդը իրենց նվիրական պարտականությունն են համարում քիմիական ինդուստրիայի զարգացումը, արտադրության քիմիացումը: Զարգացած քիմիական արդյունաբերությունը հնարավորություն կստեղծի լուծելու կոմունիզմի կառուցման կենսական հարցերը՝ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, բազմապատկելու հասարակական հարստությունը, ստեղծելու սննդամթերքների և լայն սպառման առարկաների առատություն: Ժողովրդական տնտեսության մեջ քիմիական նյութերի մասսայական օգտագործումը լայն ճանապարհ կհարթի տեխնիկական առաջադիմության, ավելի շատ և բարձրորակ արտադրանք թողարկելու համար:

ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում տված իր զեկուցման մեջ ընկեր Խրուշչովն ընդգծելով քիմիայի դերը արդի ժամանակաշրջանում, նշեց, որ «Եթե Վլադիմիր Իլյիչ Լենինը կենդանի լիներ, ապա, երևի, նա այժմ մոտավորապես կասեր այսպես՝ կոմունիզմը Սովետական իշխանությունն է՝ գումարած ամբողջ երկրի էլեկտրիֆիկացումը, գումարած ժողովրդական տնտեսության քիմիացումը»:

Մեր երկրում մեծ քիմիայի զարգացման խնդիրների լուծումն ունի ո՛չ միայն տնտեսական, այլև խոշոր քաղաքական նշանակություն, որովհետև քիմիական արդյունաբերությունն այն բանալին է, որը մեզ բերում է նյութական բարիքների առատություն: Դրա համար էլ վերջին տարիներս կոմունիստական պարտիան ու Սովետական կառավարությունը մեծ քիմիայի զարգացմանը հատկացնում են դրամական խոշոր միջոցներ ու նյութական լայն ռեսուրսներ:

ՍՄԿՊ Կենտկոմի 1958 թվականի մայիսյան պլենումում ընդունվեց Սովետական Միությունում մեծ քիմիա ստեղծելու ծրագիրը: Երկրի քիմիական արդյունաբերության զարգացման հարցը իր արժանավոր տեղն է գրավել ՍՄԿՊ Ծրագրում, ուր նշված է. կոմունիստական պարտիայի «խոշորագույն խնդիրներից մեկն է **քիմիական** արդյունաբերության ըստ ամենայնի զարգացումը, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ժամանակակից քիմիայի նվաճումների լրիվ օգտագործումը, որը հսկայական չափով ընդլայնում է ժողովրդական հարստության աճման, արտադրության նոր, ավելի կատարյալ ու էժան միջոցների և ժողովրդական սպառման առարկաների թողարկման հնարավորությունները»:

Իրագործելով երկրի քիմիական արդյունաբերության զարգացման մեծ ծրագիրը, պետությունը վերջին ժամանակաշրջանում այդ նպատակին հատկացրել է խոշոր միջոցներ: Միայն յոթնամյակի հինգ տարում այդ ճյուղում կապիտալ ներդրումները կազմել են հինգ միլիարդ երեք հարյուր միլիոն ռուբլի, որը գրեթե մեկ ու կես անգամ ավելի է, քան Սովետական իշխանության բոլոր քառասուն

տարիներինը: Այդ միջոցառումների կգալի մասը հատկացվել է հանքային պա-
րարտանյութերի և գյուղատնտեսության համար նախատեսված քիմիական այլ
նյութերի արտադրության նոր կարողություններ ստեղծելուն:
1958 թվականից հետո ընկած ժամանակաշրջանում Սովետական Միությու-
նում գործարկվել են **երեսունհինգ քիմիական գործարան և ավելի քան երկու
հարյուր հիսուն խոշոր արտադրություն:** 1953 թվականին ՍՍՌՄ-ում արտադր-
վել են 7 միլիոն տոննա հանքային պարարտանյութ, 103,6 հազար տոննա սին-
թետիկ ձյութեր ու պլաստմասսա, 62,3 հազար տոննա քիմիական թել, իսկ 1963
թվականին՝ 20 միլիոն տոննա հանքային պարարտանյութ, 580 հազար տոննա
սինթետիկ ձյութեր ու պլաստմասսա, 310 հազար տոննա քիմիական թել: Այժմ
մեր երկրի քիմիական արդյունաբերությունը երկու օրում տալիս է այնքան ար-
տադրանք, որքան արտադրվել է նախառևոլյուցիոն Ռուսաստանում ողջ 1913
թվականին:
Ամբողջ երկրի հետ միասին քիմիական արդյունաբերության կարգացման
գործում մեծ հաջողություններ են ձեռք բերել նաև մեր ռեսպուբլիկայի քիմիա-
գործները: ՍՄԿՊ Կենտկոմի 1958 թվականի մայիսյան պլենումից հետո Սովե-
տական Հայաստանի քիմիական արդյունաբերության արտադրանքի ծավալը մե-
ծացել է ավելի քան երկու անգամ, իսկ սինթետիկ ձյութի և պլաստմասսայի թո-
ղարկումը՝ **յոթ անգամ:** Կարևորն այն է, որ վերջին տարիներս ռեսպուբլիկայի
քիմիական արդյունաբերության մեջ տեղի են ունեցել ո՛չ միայն քանակական,
այլև որակական լուրջ փոփոխություններ: Հայաստանի քիմիական արդյունա-
բերության ձեռնարկությունները յուրացրել և ներկայումս թողարկում են 126 տե-
սակի քիմիական արտադրանք, այդ թվում՝ քլորոպրենային կաուչուկ, ամոնիակ
և ազոտային պարարտանյութեր, ավտոդողեր ու ռետինատեխնիկական իրեր,
ացետիլցելյուլոզ ու արհեստական թել, մելամին և սինթետիկ կորունդ, պոլիմերի-
զացիոն պլաստիկներ, ներկանյութեր և այլն: Ռեսպուբլիկայի էկոնոմիկայի և,
առաջին հերթին, քիմիական արդյունաբերության կարգացման գործում մեծ դեր
խաղաց եղբայրական Ադրբեջանից ստացվող գազը:
Երևանի Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի գործարանը երկրի առաջին
ձեռնարկությունն է, ուր թողարկվում է բարձր ջերմա-ցրտակայունությամբ ու
յուղակայունությամբ աչքի ընկնող քլորոպրենային սինթետիկ կաուչուկ: Գոր-
ծում է Կիրովականի արհեստական թելերի հսկա գործարանը, որն անցյալ տա-
րի տվեց իր առաջին արտադրանքը: Այստեղ ամեն տարի կթողարկվի մի քանի
հազար տոննա ացետատային մետաքս: Այդ թելերից կարելի է պատրաստել
միլիոնավոր մետր մետաքսյա ու տրիկոտաժի գործվածքներ: Երևանի «Պոլիվինիլ-
ացետատ» գործարանի կոլեկտիվը օգտակար աշխատանք է կատարել սննդա-
մթերքը սինթետիկ հումքով փոխարինելու մասին պարտիայի ու կառավարության
ցուցումները կենսագործելու ուղղությամբ: Այստեղ արտադրության մեջ ան-
ցյալում օգտագործվող սննդայինի փոխարեն՝ էթիլային սինթետիկ սպիրտի ա-
ցետալդեհիդի յուրացումը հնարավորություն է ընձեռել մեկ տարում տնտեսելու
ավելի քան երկու միլիոն փութ հացահատիկ, կամ յոթ միլիոն փութ կարտոֆիլ:
Ընկեր Ն. Ս. Խրուշչովը պարտիայի Կենտրոնական կոմիտեի դեկտեմբեր-
յան պլենումում տված իր բովանդակալից զեկուցման մեջ խոր կերպով վերլու-
ծելով երկրի քիմիական արդյունաբերության արդի վիճակը, նրա վճռական
դերը ժողովրդական տնտեսությունում, նշեց քիմիական ինդուստրիայի արագ
կարգացման և ժողովրդական տնտեսության քիմիացման ուղիները: Կենտկոմի



պլենումը անհրաժեշտ գտավ առաջիկա յոթ տարում քիմիական արդյունաբերու-
թյան կարգացման և գյուղատնտեսության կոմպլեքսային քիմիացման նպատակ-
ներին հատկացնել 42 միլիարդ ռուբլի, այդ թվում, միայն գյուղատնտեսության
հետ կապված ծախսերը՝ 10,5 միլիարդ ռուբլի: Այն միլիարդավոր ռուբլիները, որ
կներդրվեն մեծ քիմիայի արագ կարգացման համար, դրանք մեր երկրի էկոնո-
միկայի նոր, հզոր աճի, ժողովրդի բարեկեցության բարձրացման միլիարդավոր
ռուբլիներ են, որոնք գործադրվում են երկրում առատություն ստեղծելու նպա-
տակով: **Յոթ տարում Սովետական Միությունում կառուցվելու են քիմիական
արդյունաբերության երկու հարյուր գործարան, վերակառուցվելու են ավելի քան
հինգ հարյուր ձեռնարկություն:**
Պարտիայի և կառավարության գործադրած այդ միջոցառումների շնորհիվ
1970 թվականին մեր երկրի քիմիական արդյունաբերությունը կարտադրի պա-
րարտանյութ 70—80 միլիոն, բույսերի պաշտպանության և վնասատուների դեմ
պայքարի քիմիական միջոցներ՝ 450 հազար, պլաստմասսա և սինթետիկ ձյութ՝
3,5—4 միլիոն, քիմիական թել՝ 1350 հազար տոննա, ավտոդողեր՝ 44 միլիոն
հատ: Ինչո՞ւ է պարտիան այսպիսի մեծ ուշադրություն հատկացնում քիմիական
արդյունաբերության կարգացմանը. որովհետև քիմիան նպաստում է արտադրու-
թյան բոլոր ճյուղերի աճին, հնարավորություն է տալիս ավելի արագ կարգաց-
նելու գյուղատնտեսական արտադրությունը, թեթև արդյունաբերության և ժո-
ղովրդական տնտեսության այլ ճյուղեր:
Կոմունիստական պարտիան իր առջև լուրջ նպատակ է դրել՝ մոտակա տա-
րիներին հացահատիկի արտադրությունն ավելացնել հինգից-յոթ միլիարդ փթով,
այսինքն՝ նրա համախառն արտադրանքը 1970 թվականին հասցնել 14—16 մի-
լիարդ փթի: Չէ՞ որ հացահատիկն է հանդիսանում գյուղատնտեսության բոլոր
ճյուղերի կարգացման հիմքերի հիմքը, իսկ հացահատիկի, ինչպես նաև գյու-
ղատնտեսական մյուս կուլտուրաների բարձր բերք ապահովելու համար անհրա-
ժեշտ է ցանքատարածությունները պարարտացնել հանքային և օրգանական
պարարտանյութերով, քանի որ պարտիան այժմ խնդիր է դրել ո՛չ թե ընդարձա-
կել վարելահողերը, այլ գյուղատնտեսությունը վարել ինտենսիվ ձևով:
Հանքային պարարտանյութերը հմտորեն կիրառող գիտական հիմնարկնե-
րի, առաջավոր կոլտնտեսությունների ու սովխոզների փորձը ցույց է տալիս, որ
ամոնիակային բորակի մեկ ցենտները ցորենի մեկ հեկտարի բերքը բարձրաց-
նում է չորսից-հինգ, բամբակի հումքինը՝ երկու, շաքարի ճակնդեղինը՝ 25—30,
կարտոֆիլինը՝ 20 ցենտներով: Մեկ ցենտներ սուպերֆոսֆատով հողը պարար-
տացնելիս հեկտարից լրացուցիչ ստացվում է 3—4 ցենտներ հացահատիկ:
Բայց քիմիան միայն պարարտանյութ չէ: Այժմ թողարկվում են քիմիական
այնպիսի պրեպարատներ, որոնք ոչնչացնում են մոլախոտերը և գյուղատնտե-
սական բույսերը պաշտպանում վնասատուներից ու հիվանդություններից: Քի-
միայի դերը մեծ է նաև անասնաբուծության բնագավառում, իսկ անասնաբու-
ծական մթերքների արտադրությունն առաջիկայում էլ ավելի է աճելու: Այսպես,
1970 թվականին արտադրվելու է միս (սպանդանոցային քաշով) 20—25, կաթ՝
115—135 միլիոն տոննա:
Ահա թե ինչու մեր պարտիան գտնում է, որ օգտվելով քիմիայի ընձեռած
մեծ հնարավորություններից ու միաժամանակ բարելավելով հողերի ոռոգման ու
ջրովի դարձնելու, գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման ու մեքենայացման
աշխատանքները, դրանով իսկ կգալի չափով կթուլացնենք մեր երկրի գյուղա-

տնտեսության կախումը բնությունից և կկարողանանք բոլոր եղանակների դեպքում ստանալ երաշխավորված բերք, լիովին ապահովել երկրի հացահատիկի և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների պահանջը:

Մեր ժամանակներում քիմիան մեծ հնարավորություն է տալիս ո՛չ միայն գյուղատնտեսությունն առաջ մղելու, այլև կարևոր դեր է խաղում ժողովրդական սպառման ապրանքների լայն ու բազմազան ասորտիմենտի արտադրության ուղղությամբ: Քիմիան՝ այդ հագուստ է, կոշիկ, կահույք, կենցաղային բազմազան իրեր, դեղորայք: Ուստի անհրաժեշտ է քիմիայի նվաճումները լայնորեն կիրառել ժողովրդական սպառման ապրանքների արտադրության մեջ:

Արդեն հրամայական պահանջ է դառնում քիմիայի նվաճումները ծանր ինդուստրիայի և շինարարության մեջ ներդնելը: Երկրի, ժողովրդի շահերը պահանջում են պլաստմասսաներից պատրաստել խողովակներ, սանիտարա-տեխնիկական սարքավորումներ, շենքերի հատակներ, դռներ ու լուսամուտներ, պլաստմասսաները լայնորեն օգտագործել փոխադրական միջոցներ թողարկող արդյունաբերության մեջ: Պլենումը երկրի համար կենսական հարց համարեց մեքենաշինության մեջ և նորակառույցներում՝ մետաղի, փայտի փոխարեն խնայքեր նյութերի՝ սինթետիկ ձյութի, պլաստմասսայի օգտագործումը: Այսպիսով մեքենաշինության մեջ հնարավորություն կստեղծվի տարեկան խնայելու միլիոնավոր տոննա սև, գունավոր ու հազվագյուտ մետաղներ, իսկ նորակառույցներում տնտեսելու տասնյակ միլիոնավոր խորանարդ մետր անտառանյութ: Այդ նշանակում է կործանումից փրկել տասնյակ հազարավոր հեկտար անտառներ, որոնք երկրի համար կենսական նշանակություն ունեն:

Այն միլիարդները, որ առաջիկա յոթ տարում հատկացվելու են մեր երկրում մեծ քիմիայի զարգացմանը, ո՛չ միայն վճռական դեր կխաղան ժողովրդական տնտեսության արագ աճման գործում, կնպաստեն ժողովրդի կենսամակարդակի բարձրացմանը, այլև կբերեն մեծ շահույթներ հանրային տնտեսությանը: Հաշվարկումները ցույց են տալիս, որ առաջիկա յոթ տարում քիմիական արդյունաբերության մեջ ներդրված գումարներն, արդարացնելով իրենց, Սովետական Միության ազգային ֆոնդը կհարստացնեն 15 միլիարդ ռուբլի շահույթով:

Ընթացիկ յոթ տարում մեծ կապիտալ է ներդրվելու Սովետական Հայաստանի քիմիական արդյունաբերության ընդարձակման ու զարգացման բնագավառում: Վերակառուցվելու և կառուցվելու են քիմիական ինդուստրիայի բազմաթիվ հզոր օջախներ:

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների, առաջին հերթին՝ Երևանի, Կիրովականի, Ալավերդու և Հրազդանի կոմունիստների սրբազան պարտքն է՝ մոբիլիզացնել բոլոր ուժերը, արդյունավետ օգտագործել միջոցները՝ ժամանակին շահագործման հանձնելու քիմիական արդյունաբերության նորակառույցները:

ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի դեկտեմբերյան պլենումն իր ներկայացուցչական լայն կազմով հանդիսացավ մեր պարտիայի մի մեծ խորհուրդ, որը քննարկեց կոմունիստական հասարակարգի կառուցման առջև դրված գլխավոր խնդիրներից մեկը՝ քիմիական արդյունաբերության հետագա զարգացման հարցը: Վիթխարի է վերջինիս նշանակությունը կոմունիստական շինարարության, մեր երկրի էկոնոմիկայի զարգացման, նրա հզորության ամրապնդման գործում: Պլենումում բացահայտվեցին մեր երկրի անսպառ հնարավորությունները մեծ քիմիայի ստեղծման ու վերելքի, երկրի էկոնոմիկայի հետագա զարգացման, սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման ասպարեզում: Գլխավորն այն է, որ խելացի օգտագործվեն ժամանակն ու միջոցները:

«Քիմիական ինդուստրիայի ստեղծման գործում մեծ դեր է պատկանում մեր երիտասարդությանը,— ասված է ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումում—կոմերիտմիությանը: Քիմիան արդյունաբերության այնպիսի ճյուղ է, որ պահանջում է եռանդուն, գրագետ, նպատակասլաց մարդիկ: Կոմերիտմիությունը, սովետական բոլոր պատանիներն ու աղջիկները պետք է իրենց միջավայրում գտնեն քիմիական շինարարության էնտուզիաստներ: Կոմերիտմիությունը, երիտասարդությունը պետք է համալրի մեծ քիմիայի բանվորների, ինժեներա-տեխնիկական կադրերի շարքերը: Քիմիական հզոր ինդուստրիայի ստեղծումը կոմունիստական շինարարության հարվածային շոկատն է, ամբողջ պարտիայի, ամբողջ ժողովրդի գործը»:

Մեր հորիզոնները պարզ են, ասում է ընկեր Խրուշչովը, պարզ է ծրագիրը, պարզ է այն ուղին, որը նշվեց պարտիայի Կենտրոնական կոմիտեի նոյեմբերյան պլենումում: Իսկ մեր ժողովուրդը հարգում է իր պարտիային և իր ողջ ջանքն ու եռանդը կգործադրի, որպեսզի կենսագործվեն պլենումի ընդունած որոշումները: Սովետական ժողովուրդը ստեղծագործ ժողովուրդ է, հաղթանակներ կերտող ժողովուրդ: Կոմունիստական պարտիայի որոշումներն ու շահերը նա համարում է իրենը, գիտակցելով, որ Լենինի ստեղծած պարտիայի միակ և վեհ նպատակն է՝ ծառայել ժողովրդին, գլխավորել նրա պայքարը երջանիկ կոմունիստական հասարակարգ կառուցելու համար:

Սովետական ժողովուրդը արշավի է ելել ՍՄԿՊ XXII համագումարի և համագումարից հետո տեղի ունեցած Կենտրոնական կոմիտեի պլենումների որոշումները կենսագործելու, պարտիայի ծրագրում նախատեսված խնդիրները պատվով լուծելու համար: Պարտիական կազմակերպությունների սրբազան գործն է՝ գլխավորել աշխատավորական մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը, նրանց արտադրական խանդավառությունը, օգտագործել բոլոր հնարավորություններն ու ռեզերվները արագ, լայն ճակատով ընթանալու դեպի մեր մեծ նպատակը՝ կոմունիստական հասարակարգի կառուցումը:

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԿԱՊԻՏԱԼ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՊԱՅՄԱՆՆ Է

Ս. ՄՈՎՍԻՍՅԱՆ

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի նախագահի առաջին տեղակալ

*Սովետական Հայաստանի աշխատավորներն իրավամբ կարող են հպարտանալ ռեսպուբլիկայի արդյունաբերության բուռն զարգացմամբ, որին հասել են նրանք կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ։ Արդյունաբերական արտադրանքի թողարկման պլանները տարեցտարի գերակատարվում են. յոթնամյակի անցած հինգ տարիների ընթացքում (1959—1963 թթ.) ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալն ավելացել է 60 տոկոսով, արտադրանքի աճի բացարձակ չափը հավասար է Հայաստանում Սովետական իշխանության հաստատումից հետո առաջին 34 տարիների աճին։ Անցած տարիների արտադրանքի միջին տարեկան աճը կազմում է ավելի քան 11 տոկոս։ Արդյունաբերությունը յուրացրել է արտադրանքի ավելի քան 350 նոր տեսակ (այդ թվում 82-ը ՍՍՌՄ-ում թողարկվել է առաջին անգամ)՝ մետաղահատ հաստոցներ, մեքենաներ, ճշգրիտ չափիչ և արտադրական պրոցեսները կարգավորող սարքեր, բարձրարժեք սինթետիկ նյութեր, հաշվիչ-հաշվողական մաթեմատիկական մեքենաներ, ժողովրդական սպառման նոր ապրանքներ։*

*Հատկապես արագ տեմպերով են զարգանում քիմիական և էներգետիկ արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան, մեքենաշինությունը։*

*Արտադրանքի քանակական աճի հետ մեկտեղ անշեղորեն բարելավվում են արդյունաբերության տեխնիկա-տնտեսական ցուցանիշները, բարձրանում է արտադրության կուլտուրան։*

*Անցած հինգ տարվա ընթացքում մեծ գործ է կատարված արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումներն արմատավորելու, առանձին արտադրական պրոցեսները նոր, ավելի պրոգրեսիվ տեխնոլոգիայով զինելու ուղղությամբ։ Ահա մի քանի օրինակ.*

*Երևանի դազգահաշինական, Հայէլեկտրամեքենաշինական և Ձերժինսկու անվան գործարանում ձուլման ցեխերը ենթարկված են կոմպլեքսային մեքենայացման, որի շնորհիվ տարեկան ստացվում է 1,5 միլիոն ռուբլու տնտեսական օգուտ։*

*Քանաքեռի ալյումինի գործարանում յուրացված է հեղուկ մետաղից անմիջականորեն ալյումինե մետաղալարի (կատանկայի) ստացման տեխնոլոգիան. այդպիսով կարճել արտադրության ժամանակ վերացվում է մետաղի գլանման աշխատատար պրոցեսը։*

*Երևանի ռետինատեխնիկական իրերի և էջմիածնի պլաստմասսաների գործարաններում արմատավորված են «Մարս-200» տիպի էլեկտրոնային ունիվերսալ ճախարակային մեքենաներ, որոնց միջոցով ավտոմատացվել են ջերմաստիճանային ռեժիմի գրանցումը, ազդանշանումն ու կարգավորումը տեխնոլոգիական պրոցեսում։*

*Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի գործարանում արմատավորված են նոր, հզոր ռեակտորներ, կարգավորված է ացետիլենի դիմերիզացման (երկու համանման մոլեկուլների միացում) տեխնոլոգիական պրոցեսը։*

*Վերջին տարիներս մեծ աշխատանք է տարվել ո՛չ միայն առանձին ձեռ-*
*նարկությունների, այլև ամբողջ արդյունաբերության մասնագիտացման ուղղու-*
*թյամբ, ելնելով ռեսպուբլիկայի հումքային ռեսուրսների, ամբողջ Սովետական*
*Միության էկոնոմիկայի զարգացման շահերից։ Արդյունաբերության մեջ*
*նշվել են հետևյալ հիմնական ուղղությունները՝ մեծ քիմիա, գունավոր մե-*
*տալուրգիա, մեքենաշինություն, շինանյութերի արդյունաբերություն, թեթև ու*
*սննդի արդյունաբերություն։*

*Էկոնոմիկայի և կուլտուրայի աճի, ամբողջ բնակչության բարեկեցության*
*բարձրացման համար դրական նշանակություն ունի Հայաստանի ԿՊ Կենտ-*
*կոմի և ռեսպուբլիկայի Մինիստրների սովետի կողմից վերցրած կուրսը, որի*
*համաձայն առաջին հերթին արդյունաբերական նոր ձեռնարկություններ են*
*տեղծվում այն քաղաքներում ու բնակավայրերում, որտեղ արդյունաբերու-*
*թյունը թույլ է զարգացած, հաշվի առնելով, անշուշտ, տնտեսական գործոնները։*
*Արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը 1959—*
*1963 թվականների ընթացքում բարձրացել է 24 տոկոսով։ Բարձրացել է և*
*արդյունաբերության շահութաբերությունը։*
*Սրանք են յոթնամյակի անցած տարիների արդյունաբերության համա-*
*ռոտ արդյունքները. ամենակարևորն է, որ գերակատարվել է արդյունաբերա-*
*կան արտադրանքի աճման յոթնամյա պլանի առաջադրանքը։*
*Թողարկվող արտադրանքի ավելացման բարձր տեմպերը ձեռք են բերվել*
*աշխատանքի արտադրողականության անշեղ աճի, արտադրական հրապա-*
*րակների, տեղակայված սարքավորումների ու մեքենաների ավելի արդյու-*
*նավետ օգտագործման, արտադրության մեջ նոր տեխնիկայի ու առաջավոր*
*տեխնոլոգիայի արմատավորման շնորհիվ։ Այդ գործում, անշուշտ, էական*
*նշանակություն ունեցավ արդյունաբերության մեջ կապիտալ շինարարության*
*մեծ ծավալը, նոր գործարանների ու ֆաբրիկաների, հանքերի ու էլեկտրա-*
*կայանների, արդյունաբերական զանազան կառույցների շինարարությունն ու*
*դրանց շահագործման հանձնումը։*
*Մեր օրերում չկա էկոնոմիկայի, կուլտուրայի ու կենցաղի այնպիսի*
*բնագավառ, որի զարգացումն ու կատարելագործումը կապված չլինի կապի-*
*տալ շինարարության հետ։*
*Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ կենտրոնացված կա-*
*պիտալ ներդրումների գծով յոթնամյա պլանի առաջադրանքն անցած հինգ*
*տարիների ընթացքում գերակատարվել է. 887 մլն ռուբլու դիմաց ներդրված*
*է 960 մլն ռուբլի, կամ՝ մոտավորապես 8 տոկոսով ավելի։ Ներդրումների*
*միջին տարեկան աճը կազմում է մոտ 20 տոկոս։ Վերջին հինգ տարվա ընթաց-*

քում ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի բնագավառի պետական
կապիտալ ներդրումները գերազանցել են 1921—1956 թվականների ծավալը։
Կապիտալ ներդրումների զգալի մասը՝ մոտ 52 տոկոսը, հատկացված է արդ-
յունաբերական օբյեկտների շինարարությանը՝ արդյունաբերության զարգաց-
մանը։ Կառուցված ու գործարկված են 189 արդյունաբերական ձեռնարկություն
ու խոշոր ցեխ, այդ թվում՝ Աթարբեկյանի և Երևանի հիդրոէլեկտրակայան-
ները, Երևանի ջերմաէլեկտրակենտրոնի առաջին ագրեգատները, Կիրովականի
արհեստական մետաքսաթելի գործարանը և ացետիլցելյուլոզի արտադրու-
թյունը «Պոլիվինիլացետատ» գործարանում, Ագարակի պղնձա-մոլիբդենա-
յին կոմբինատը, ֆոլգոգլանվածքի արտադրությունն ալյումինի գործարանում,
Իջևանի գորգի կոմբինատը, Երևանի դաշնամուրի ֆաբրիկան, տասնյակ
մեքենաշինական, դազգահաշինական ու սարքաշինական գործարաններ, սննդի,
մսի-կաթի և թեթև արդյունաբերության ձեռնարկություններ։ Գործարկված են
ավելի քան 800 միլիոն ռուբլու հիմնական ֆոնդեր, այսինքն՝ այնքան, որքան
գործարկվել է յոթնամյակին նախորդող 10 տարիներում։

Ձեռնված մասշտաբների կհասնի կապիտալ շինարարությունը 1964—
1965 թթ.։

Միութենական կառավարության հաստատած պլանի համաձայն յոթնամ-
յակի այս վերջին երկու տարում ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության
և կուլտուրայի զարգացմանը կհատկացվեն միայն կենտրոնացված ներդրում-
ներ՝ մոտ 650 միլիոն ռուբլու չափով, կամ 1,5 անգամ ավելի, քան նախա-
տեսված է կոնտրոլ թվերով։

Կապիտալ ներդրումների ծավալն այս երկու տարվա ընթացքում գրեթե
կհավասարվի յոթնամյակի առաջին չորս տարիների՝ 1959—1962 թվական-
ների կապիտալ ներդրումներին. 1964—1965 թվականներին կգործարկվեն զգա-
լի չափով ավելի հիմնական ֆոնդեր, քան նշված չորս տարիների ընթացքում։

Այսպիսով, կապիտալ շինարարության գծով յոթնամյակի պլանը մոտ
20—22 տոկոսով կգերակատարվի։

1959—1965 թվականներին ռեսպուբլիկայի էկոնոմիկայի, կուլ-
տուրայի զարգացմանը կհատկացվեն երեք անգամ ավելի միջոցներ, քան
նախորդ յոթ տարիների՝ 1952—1958 թվականների ընթացքում։ Ժողովրդա-
կան տնտեսության մեջ կներդրվեն մոտ 1500 մլն. ռուբլու հիմնական ֆոնդեր։

1964—1965 թվականների համար նախատեսված կապիտալ ներդրում-
ների կեսից ավելին կծախսվի արդյունաբերական ձեռնարկությունների, գործա-
րանների ու ֆաբրիկաների, էլեկտրակայանների ու հանքերի շինարարության
վրա։

Հայաստանի ԿԿ Կենտկոմն ու ռեսպուբլիկայի Մինիստրների սովետը,
կենսագործելով քիմիական արդյունաբերության զարգացման մասին ՍՄԿԿ
Կենտկոմի դիրեկտիվները, ծավալել և իրականացնում են քիմիական նոր
ձեռնարկությունների կառուցման, գործող ձեռնարկությունների վերակառուց-
ման և ընդլայնման մեծ ծրագիրը։ Ներդրումների ծավալը արդյունաբերության
այդ առաջավոր ճյուղերում տարեցտարի ավելանում է։ 1964—65 թվական-
ների համար արված հատկացումները 1,5 անգամ գերազանցում են յոթնամ-
յա պլանի նախագծումները և համարյա թե հասնում յոթնամյակի առաջին
չորս տարվա փաստացի ներդրումներին։

Բացի վերը նշված երկու խոշոր օբյեկտներից արտադրական շատ ցեխեր



են շահագործման հանձնվել գործող ձեռնարկություններում՝ Կիրովականի
քիմիական կոմբինատում, Կիրովի անվան և «Պոլիվինիլացետատ» գործա-
րաններում։

Հսկայական մասշտաբների կապիտալ շինարարություն է ծավալվել Կիրովի
անվան գործարանում։ Սովետական Միությունում առաջին անգամ այստեղ է
բնական գազից ացետիլեն ստացվելու ջերմաօքսիդացման՝ պիրոլիզի մեթոդով.
զգալիորեն կավելանան սինթետիկ կաուչուկի թողարկման կարողությունները։

Կիրովականի քիմիական կոմբինատում միջոցներ են ձեռնարկվում նաև
բնական գազից ամոնիակ ստանալու և նրա արտադրությունը մոտ հինգ ան-
գամ ավելացնելու ուղղությամբ։ Այդ թույլ կտա ընդլայնելու ազոտային պա-
րարտանյութերի արտադրությունը, ինչպես նաև ստեղծելու նոր թանկարժեք
նյութի՝ կարբամիդի (միզանյութի) արտադրությունը։

Կարբամիդը հումք է ծառայում պլաստմասսաների պատրաստման
համար, բարձրարժեք ազոտային պարարտանյութ է, ու մեծ չափերով ավե-
լացվում է խոշոր եղջերավոր անասունների կերին՝ սպիտակուցի պակասը
լրացնելու համար։

Երկրում հանքային պարարտանյութերի արտադրության ավելացման
բնագավառում հույժ կարևոր նշանակություն ունեն ծծմբաթթվի արտադրու-
թյան համար ստեղծվող նոր կարողությունները Ալավերդու պղնձա-քիմիական
կոմբինատում։ Այստեղ ավարտին են մոտենում ծծմբաթթվի նոր գործարանի
առաջին հերթի գործարկման աշխատանքները։ Բացի վերոհիշյալ այդ խոշոր
կառույցից, մոտակա երկու տարիներին շարք կմտնեն նոր ագրեգատներ, և
ծծմբաթթվի արտադրությունը տարեկան կհասցվի մի քանի հարյուր հազար
տոննայի։ Ինչպես հայտնի է, ծծմբաթթուն քիմիական արդյունաբերության մեջ
այնպիսի նշանակություն ունի, ինչպիսին պողպատն ու չուգունը՝ մեքենաշի-
նության մեջ։ Առանց ծծմբաթթվի հնարավոր չէ ֆոսֆորային պարարտանյու-
թեր արտադրել։

Մեր օրերում պայքարը հանուն գյուղատնտեսական կուլտուրաների բեր-
քատվության բարձրացման՝ դա ամենից առաջ պայքար է հանքային պարար-
տանյութերի արտադրության ավելացման համար. հանքային պարարտանյու-
թերի արտադրության ավելացումը առավել ձեռնտու է, քան ցանքատարածու-
թյունների հետագա ընդլայնումը կապիտալ ներդրումների միջոցով։

Քիմիական արդյունաբերության զարգացման լայն հնարավորություններ
են ստեղծվել մեր ամբողջ երկրում և, մասնավորապես՝ Հայկական ՍՍՌ-ում։
ՍՍՌՄ Գերագույն սովետի երկրորդ սեսիայում հաստատված պլանի համա-
ձայն 1964—1965 թվականներին քիմիական արդյունաբերության մեջ կներ-
դրվեն 2,5 անգամ ավելի միջոցներ, քան նախատեսված է եղել յոթնամյակի
կոնտրոլ թվերով. այդ երկու տարիների ընթացքում հատկացումների ծավալը
կհավասարվի 1959—1962 թվականների ներդրումներին։

Կզարգանա քիմիական արդյունաբերության ամենաարդյունավետ ճյու-
ղերի՝ հանքային պարարտանյութերի, արհեստական մետաքսաթելերի, սին-
թետիկ կաուչուկի ու ձյութի, պլաստմասսաների արտադրությունը։

Քիմիական խոշորագույն ձեռնարկությունների՝ Երևանի Կիրովի անվան
և «Պոլիվինիլացետատ» գործարանների, Կիրովականի քիմիական կոմբինա-
տի, Ալավերդու ծծմբաթթվի գործարանի արմատական վերակառուցման և
ընդլայնման խոշոր աշխատանքներն ավարտելու հետ միասին կկառուցվեն

նոր գործարաններ. կնախապատրաստվեն գալիք տարիների քիմիական ձեռ-
նարկությունների շինարարության նախագծերը։

1964 թվականին նախատեսվում է Կիրովականում արհեստական մետաք-
սաթելի գործող ձեռնարկության կողքին կառուցել երկրորդը. արդեն կազմվում
են կառուցման տեխնիկական փաստաթղթերը. դրվում է շինարարության
սկիզբը։ Ինչպես ցույց են տալիս հաշվումները, այդ գործարանի կարողու-
թյունը կրկնապատկելը 25 տոկոսով ավելի էժան է նստում և երկու անգամ
պակաս ժամանակ է պահանջում, քան նոր տեղերում համանման արտադրու-
թյուն ստեղծելը։ Այսպիսի ընդլայնումից հետո Կիրովականի արհեստական
մետաքսաթելի գործարանը կարող է վերամշակել այն ամբողջ ացե-
տիլցելյուլոզը, որը կարտադրվի Երևանի «Պոլիվինիլացետատ» գործա-
րանում և ամեն տարի կտա այնքան արտադրանք, որքան հարկավոր է
մի քանի տասնյակ միլիոն մետր մետաքսյա ընտիր գործվածք արտադրելու
համար։

Հերթի է դրված Հայաստանում երկրորդ նույնանման ձեռնարկության
շինարարությունը՝ «Վինոլ» տիպի սինթետիկ մետաքսաթելի գործարանը
Երևանում։ «Վինոլ» մետաքսաթելն օգտագործվում է ջուլհակության մեջ,
բրդյա և բամբակյա թելերի խառնուրդով։ Այսպիսի մի գործարանը տարեկան
կտա մեծ քանակությամբ արտադրանք։

Կիրովի անվան գործարանում բնական գազից ացետիլենի արտադրության
ժամանակ մնացորդ է մնում սինթեզ գազը։ Սակայն այդ «մնացորդից» ևս
կարելի է մեծ օգուտ քաղել, օգտագործել քիմիական արժեքավոր նյութերի՝
սինթետիկ ձյութերի և պլաստմասսաների համար։ Այդ նպատակով նախա-
տեսված է կառուցել մի նոր խոշոր քիմիական կոմբինատ։ 1964 թվականին
կկազմվեն այդ խոշոր նորակառույցի նախագծա-տեխնիկական փաստա-
թղթերը։ Սեփական արտադրության՝ մեթանոլի և Կիրովականի քիմիական
կոմբինատի արտադրության՝ մելամինի և կարբամիդի բազայի վրա կթողարկ-
վեն մի շարք նոր նյութեր, այդ թվում՝ ամոնիոպլաստներ և կարբամիդային
ձյութեր՝ հումքեր դեկորատիվ և կոնստրուկտիվային պլաստմասսաների և մի
շարք այլ առարկաների պատրաստման համար. մեքենաշինության և սարքա-
շինության մեջ գունավոր մետաղներին փոխարինող պոլիֆորմալդեհիդ, հումք՝
հատուկ սոսինձների, լաքերի և քիմիական տարբեր տեսակի թելերի արտա-
դրության համար։

Մոտակա երկու-երեք տարում շարք կմտնի քիմիական ռեակտիվների
գործարանը, ուր կարտադրվեն հարյուրավոր քիմիական տարբեր իրեր։

Քիմիական արդյունաբերության մեջ ստեղծված հիմնական ֆոնդերը, նոր
արտադրական կարողությունների գործարկումը կապահովեն քիմիական,
գլխավորապես սինթետիկ նյութերի արտադրության զգալի աճ։ Այդ բնագա-
վառում 1965 թ. արտադրությունը երեք անգամ կգերազանցի 1958 թ. մակար-
դակը։ Եթե հաշվի առնենք, որ ներկայումս ստեղծված ձեռնարկությունները մի
քանի տարի հետո կաշխատեն իրենց ամբողջ կարողությամբ, ապա 1965 թվա-
կանից հետո ընկած ժամանակաշրջանում, նոր յոթնամյակի առաջին տարինե-
րին, վկա կլինենք Հայաստանի քիմիական արդյունաբերության զարգացման
ավելի բարձր տեմպերի։

Կապիտալ ներդրումներն ավելի մեծ ծավալ կստանան ռեսպուբլիկայի
էներգետիկ տնտեսության մեջ։ Բավական է նշել, որ Որոտան գետի վրա



Տաթևի հիդրոէլեկտրակայանի հետ մեկտեղ (որն իր հզորությամբ երկրորդը
կլինի Գյումուշ-գէսից հետո) կառուցվում են ջերմաէլեկտրակայաններ
Երևանում, Հրազդանում ու Կիրովականում, որոնք որպես վառելիք պետք է
օգտագործեն բնական գազը։ Երևանի ջերմաէլեկտրակայանը իր հզորու-
թյամբ հավասար է Սևան-Հրազդան կասկադին՝ իր վեց հիդրոէլեկտրակայան-
ներով, իսկ էլեկտրաէներգիայի արտադրանքի տեսակետից գերազանցում է
նրան մոտ 1/3-ի չափով։ Թե ինչպիսի կարևոր նշանակություն կստանան
ջերմաէլեկտրակայանները ռեսպուբլիկայի տնտեսական կյանքում, դժվար չէ
պատկերացնել հետևյալ տվյալներից. եթե 1962 թվականին Հայաստանում
էլեկտրաէներգիա էին արտադրում միայն հիդրոէլեկտրակայանները, իսկ
ջերմայինները չէին գործում, ապա 1965 թվականին վերջիններիս բաժինը
էլեկտրաէներգիայի ընդհանուր արտադրության մեջ կկազմի 62, իսկ 1970
թվականին՝ 75 տոկոս։

Ներկայումս քննարկվում է մի շատ կարևոր հարց՝ 1964—1965 թվական-
ներին մոտ մեկ միլիոն 200 հազար կվտ հզորությամբ ջերմաէլեկտրակայան
նախագծել, հետագայում այն Անդրկովկասում կառուցելու համար։ Այն կապա-
հովի ամբողջ տնտեսական շրջանի պահանջարկը։ Այդ շինարարության համար
ամենահարմար վայրերից մեկը Սևանն է։

Միաժամանակ կշարունակվի Հայաստանում նոր հիդրոէլեկտրակայան-
ների՝ Որոտանի վրա Շամբի և Սպանդարյանի, ինչպես նաև Դեբեդ գետի վրա
հիդրոէլեկտրակայանների կասկադի շինարարությունը։ 1964—1965 թվական-
ներին կկատարվեն այդ հիդրոէլեկտրակայանների շինարարության համար
անհրաժեշտ հետախուզական և նախագծման աշխատանքները։

Արդյունաբերության, գյուղատնտեսության և մարդկանց էլեկտրաէներ-
գիայի պահանջները բավարարելու համար մոտակա երկու տարում կկառուցվեն
600 կմ-ից ավելի երկարությամբ էլեկտրահաղորդման բարձրավոլտ գծեր, ինչ-
պես նաև անհրաժեշտ թվով էլեկտրական ենթակայաններ։

Ռեսպուբլիկայի էներգետիկ տնտեսության զարգացման համար նախա-
տեսվող կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը միայն յոթնամյակի
մնացած երկու տարվա համար կկազմի ավելի քան 70 մլն. ռուբլի։

Յոթնամյակի մնացած երկու տարվա պլանում նախատեսված են անհրա-
ժեշտ հատկացումներ Ջերմուկ-Սևան 48 կիլոմետրանոց թունելի անցկացման
համար, որն Արփա գետի ջրերը կտեղափոխի Սևանա լիճը, կիրագործվեն նաև
լճի մակարդակը բարձր նշագծի վրա պահելու այլ միջոցառումներ։

Կընդլայնվեն ժողովրդական տնտեսության մեջ բնական գազի օգտագործ-
ման հետագա աշխատանքները, կգազիֆիկացվեն արդյունաբերական ու կո-
մունալ նոր ձեռնարկություններ, բնակելի տներ. բնական գազ կստանան ռես-
պուբլիկայի այլ քաղաքներ ևս՝ Էջմիածինը, Հոկտեմբերյանը, Ստեփանավանն
ու Ալավերդին։

Առաջվա նման խոշոր կապիտալ միջոցներ կհատկացվեն Հայաստանի
գունավոր մետալուրգիայի զարգացմանը։ 1963 թվականին Քաջարանի պղնձա-
մոլիբդենային կոմբինատում ավարտվեցին շինարարական աշխատանքները,
որոնք հնարավորություն տվին ռեսպուբլիկայի այդ խոշորագույն լեռնահան-
քային ձեռնարկության արտադրական կարողությունն զգալիորեն ավելացնե-
լու։ 1964—1965 թվականներին, ինչպես և հետագայում, կշարունակվեն
կոմբինատի ընդլայնման աշխատանքները։ Այդ ամենն անհրաժեշտ է հանքա-

*վայրի արժեքավոր հանքաքարի հսկայական պաշարներն օգտագործելու, ձեռ-*
*նարկության շահութաբերությունը բարձրացնելու նպատակով: Առաջիկայում*
*ավելի կընդարձակվի անցյալ տարի շահագործման հանձնված Ագարակի*
*պղնձա-մոլիբդենային կոմբինատը: Մեղրու շրջանի պղնձա-մոլիբդենային*
*հանքերի հետազոտված պաշարների բազայի վրա կհզորանա նրա արտադրա-*
*կան կարողությունը:*

*Հումքային բազայի ընդլայնումը, պղնձի և մոլիբդենի կոնցենտրատների*
*արտադրության անշեղ աճը պահանջում են մետալուրգիական ձեռնարկու-*
*թյունների ընդլայնում: Ալավերդում, պղնձա-քիմիական կոմբինատում ո՛չ մի-*
*այն արմատապես վերակառուցվում է ծծմբաթթվի գործարանը, այլև ընդ-*
*լայնվում է պղնձաձուլման արտադրությունը. գալիք երկու տարվա ընթաց-*
*քում պղնձի ձուլման կարողությունները կավելանան խոշոր չափերով: Սակայն*
*մոտ ապագայում այդ էլ չի բավարարի. այդ իսկ պատճառով օրակարգում*
*դրված է Հայաստանում երկրորդ, նոր մետալուրգիական գործարանի նախա-*
*գծման, ապա և կառուցման հարցը:*

*Մինչև յոթնամյակի վերջը կավարտվի գունավոր մետալուրգիայի երկու*
*նոր օբյեկտների՝ Ղափանի և Ախթալայի հարստացուցիչ ֆաբրիկաների շինա-*
*րարությունը. այդ ձեռնարկությունների շահագործմամբ Ղափանում պղնձի*
*հանույթի և Շամլուղում ու Ախթալայում պղնձա-կապարա-ցինկային կարո-*
*ղությունները բուռն կերպով կաճեն:*

*Իսկ Հրազդանում բուռն թափով կշարունակվի լեռնա-քիմիական կոմբինա-*
*տի շինարարությունը: Ինչպես հայտնի է, տեղական նեֆելինային սիենիտ-*
*ների կրաքարերի վերամշակման բազայի վրա կոմբինատը պետք է կավահող*
*արտադրի և այն մատակարարի Քանաքեռի ալյումինի գործարանին. տարե-*
*կան այստեղ կարտադրվի 2,4 անգամ ավելի ցեմենտ, քան այժմ արտադրվում*
*է Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատում: Կոմբինատը երկրին կտա շատ*
*այլ արժեքավոր նյութեր՝ նատրիումի մետասիլիկատ, կալիումի մետասիլի-*
*կատ, պոտաշ, երևանիտ և այլն: Դրանցից յուրաքանչյուրը և՛ պատրաստի*
*նյութ է ժողովրդական տնտեսության շատ բնագավառներում կիրառելու, և՛*
*հումք՝ նոր արտադրությունների կազմակերպման համար: Այսպես, օրինակ,*
*1964 թվականից Արզնիում կսկսվի տեսակավոր ամանեղենի և բյուրեղապակու*
*գործարանի շինարարությունը, որի համար որպես հումք կծառայի երևանիտը՝*
*Հրազդանի լեռնա-քիմիական կոմբինատի արտադրանքը:*

*Յոթնամյակի վերջում ծրագրվում է Հայաստանում շահագործման հանձ-*
*նել այդ խոշորագույն լեռնա-քիմիական կոմբինատի մի մասը:*

*1964—1965 թվականներին կշարունակվի Զոդի ոսկեհանքային ձեռնար-*
*կության շինարարությունը. անհրաժեշտ հետազոտություններ անցկացնելու*
*համար առաջին հերթին կկառուցվի փորձնական հարստացուցիչ ֆաբրիկան:*

*Շահագործման հանձնվող նոր կարողությունների զգալի մասը արտա-*
*դրանք կտա 1965 թ. հետո. գունավոր մետալուրգիայի համախառն արտա-*
*դրանքի ծավալը 1965 թ., 1958 թ. համեմատությամբ, մեծ չափով կավելանա:*

*Հայաստանի արդյունաբերության ամենագլխավոր ճյուղերից աճի տեմ-*
*պերով առաջին տեղն է գրավում մեքենաշինությունը: Ժողովրդական տնտե-*
*սության ընդհանուր զարգացման մեջ հանրահայտ է մեքենաշինության նշանա-*
*կությունը, և այդ տեսակետից էլ յոթնամյակի ընթացքում նրա արտադրանքի*
*3,4 անգամ աճը ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողների, ամ-*



*բողջ աշխատավորության հաղթանակն է: Առաջվա նման, մեքենաշինության*
*մեջ առաջատար տեղը մնում է էլեկտրատեխնիկական արդյունաբերությանը,*
*սարքաշինությանը (յոթնամյակի ընթացքում արտադրանքն ավելանում է հա-*
*մարյա հինգ անգամ) և հաստոցագործիքաշինական արդյունաբերությանը (յոթ*
*տարվա ընթացքում արտադրանքն աճել է ավելի քան 7 անգամ): Դրանց շար-*
*քում պատվավոր տեղ է գրավում ռադիոէլեկտրոնային արդյունաբերությունը,*
*որը յոթնամյակի սկզբում Հայաստանում չկար:*

*Մեքենաշինության բուռն զարգացումը ապահովվում է աշխատանքի*
*արտադրողականության բարձրացմամբ, ձեռնարկությունների ներքին ռեսուրս-*
*ների օգտագործմամբ, ինչպես նաև գործող գործարանների ընդլայնմամբ ու*
*նորերի կառուցմամբ: Կազմվում է 1964—1965 թվականների աշխատանքների*
*ընդլայնված ծրագիր: Շարք կմտնեն Լենինականի «Ստրոմմաշ» գործարանը,*
*Երևանի էլեկտրոնա-հաշվիչ մեքենաների փորձնական գործարանը, Լուսա-*
*վանի գործիքաշինական գործարանը, ինչպես նաև ռադիոէլեկտրոնային*
*արդյունաբերության նոր օբյեկտներ: Կկազմվեն մեքենաշինական մի շարք*
*նոր գործարանների նախագծա-նախահաշվային փաստաթղթերը, որոնց շինա-*
*րարությունը կսկսվի 1965 թվականից հետո:*

*Գործող համարյա բոլոր մեքենաշինական գործարաններում կառուցվում*
*են նոր ցեխեր, լրացուցիչ արտադրական հրապարակներ՝ արտադրանքի*
*թողարկումն ավելացնելու նպատակով: Գալիք երկու տարիների ընթացքում*
*զգալիորեն կընդլայնվեն Երևանի, Լենինականի, Հոկտեմբերյանի և Լուսավանի*
*դազգահաշինական գործարանները, Լենինականի էլեկտրատեխնիկական և*
*սարքաշինական, Կիրովականի «Ավտոմատիկա», Երևանի էլեկտրաճշգրիտ*
*սարքերի գործարանները:*

*Գործող մեքենաշինական շատ ձեռնարկություններում կյուրացվի նոր*
*իրերի, այդ թվում՝ ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը:*
*Այսպես, օրինակ, Հայէլեկտրամեքենաշինական գործարանը կյուրացնի կեն-*
*ցաղային սառնարանների մասսայական արտադրությունը:*

*ՍՄԿԿ Կենտկոմը ու ՍՍՌՄ Մինիստրների սովետը առանձնահատուկ հոգա-*
*տարություն են ցուցաբերում ժողովրդական սպառման ապրանքների արտա-*
*դրության ավելացման նկատմամբ, որը կբավարարի բնակչության աճող պա-*
*հանջարկը, միաժամանակ բարելավելով արտադրանքի որակը: Դրանից ել-*
*նելով յոթնամյակի մնացած երկու տարվա համար նախատեսված են զգալի մի-*
*ջոցներ թեթև, փայտամշակման և սննդի արդյունաբերության նոր ձեռնարկու-*
*թյունների կառուցման ու ընդլայնման և գործող ձեռնարկությունների, ինչ-*
*պես նաև արդյունաբերության մի շարք այլ բնագավառների, ժողովրդական*
*սպառման առարկաներ արտադրող առանձին ձեռնարկությունների վերակա-*
*ռուցման համար: Շարք կմտնի Լենինականի մանվածքային նոր ֆաբրիկան,*
*ընդարձակվելուց և ջուլհակային դազգահներով համալրվելուց հետո Շահումյա-*
*նի մետաքսի կոմբինատը կթողարկի մոտ 60 տոկոսով ավելի արտադրանք: Որոշ*
*չափով իրենց կարողությունները կմեծացնեն նաև Երևանի բրդյա նուրբ գործ-*
*վածքների կոմբինատը, ինչպես նաև Կիրովականի, Կամոյի ու Գորիսի տրիկո-*
*տաժի ֆաբրիկաները: 1965 թվականին կկազմվեն Սևանի մետաքսի հզոր կոմ-*
*բինատի շինարարության նախագծա-նախահաշվային փաստաթղթերը:*

*Կահույքի արտադրությունը մեծացնելու նպատակով կընդլայնվեն փայ-*
*տամշակման արդյունաբերության շատ ձեռնարկություններ:*

1964—1965 թվականների պլանով միջոցներ են նախատեսվում բժշկական արդյունաբերության երկու առաջնեկների՝ քիմիկո-ֆորմացևտիկական և վիտամինային ձեռնարկությունների նախագծման ու շինարարության համար։

Խաղողագործության, պտղաբուծության և բանջարաբուծության, անասնապահության հետագա զարգացման նպատակով ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մասնագիտացմանը համապատասխան, մոտակա երկու տարիներին հատուկ ուշադրություն կնվիրվի սննդի արդյունաբերությանը՝ պահածոների, գինեգործական, կոնյակի, մսի, կաթնա-պանրագործական և ծխախոտի ֆերմենտացիոն գործարանների, հանքային ջրերի լցման, հացամթերքների և այլ նոր գործարանների շինարարությանը և գործող ձեռնարկությունների ընդլայնմանը։ Այդ ամենը կարվի բնակչության աճող պահանջմունքները բավարարելու նպատակով։

Սննդի արդյունաբերության մեջ զգացվում է ապակե տարաների խիստ պակաս։ Այդ լուրջ թերությունը վերացնելու համար նախատեսվում է ապակե տարաների գործարան կառուցել Արզնիում։ Միաժամանակ կկազմվեն Ջերմուկի ապակե տարաների խոշոր գործարանի և Հոկտեմբերյանի պահածոների ապակե տարաների և կիսասպիտակ շշերի գործարանի շինարարության նախագծերը։ Մոտակա երկու տարիների համար ծրագրված կապիտալ շինարարությանը անհրաժեշտ է շինանյութերի ու շինարարական ինդուստրիայի արդյունաբերության համապատասխան զարգացում, նախագծային, շինարարական և մոնտաժային կազմակերպությունների աշխատանքների արմատական բարելավում։ 1964—1965 թվականների պլանում համապատասխան միջոցառումներ են նախատեսվում այդ ուղղությամբ, ներառյալ շինանյութերի ու շինինդուստրիայի արդյունաբերության նոր ձեռնարկությունների ստեղծման, գործող ձեռնարկությունների ու հանքերի վերակառուցման և ընդլայնման համար զգալի գումարներ առանձնացնելը։

Լրիվ կարողությամբ շարք կմտնեն Արթիկում կառուցվող տուֆաբլոկների և Կիրովականում՝ երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարանները։ Երևանում արդյունաբերական շինարարության նպատակով կկառուցվեն երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարան, Ջերմուկում՝ նույնպիսի գործարան, միայն բնակկենցաղային շինարարության համար։ Կարմրաշենի շլաքի հանքերում շինարարական աշխատանքներն ավարտելու, Անի-պեմզայի ընդլայնման հետ մեկտեղ Երևանի, Կիրովականի մոտերքում և այլ շրջաններում կբացվեն նոր, մեքենայացված հանքեր, տեղական շինանյութերի արտադրության համար։

Ռեսպուբլիկայի շինարարական կազմակերպությունները կզինվեն նոր մեքենաներով և հատուկ սարքավորմամբ, կավելանա շինարար բանվորների, ինժեներա-տեխնիկական կադրերի թիվը։

Կապիտալ շինարարության այսպիսի՝ 1964—1965 թվականների պլանով նախատեսված թափը կհանդիսանա Հայաստանի էկոնոմիկայի ու կուլտուրայի հետագա վերելքի, մասնավորապես, արդյունաբերության արագընթաց զարգացման հզոր գործոնը։ Յոթնամյա պլանը կապիտալ աշխատանքների ծավալի տեսակետից զգալի չափով կգերակատարվի. այն կկատարվի համարյա վեց տարում։ Կկատարվի նաև արդյունաբերական արտադրանքի թողարկման պլանը։

Այս հաջողությունները կդառնան Հայաստանի աշխատավորության արժանի ներդրումը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում։

---

# ԱՐԴԻ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ՀԻՄՆԱԿԱՆ ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆԸ

Բ. ՄԵՀՐԱԲՅԱՆ

Արդի դարաշրջանը համաշխարհային պատմության առավել բարդ ժամանակաշրջանն է։ Նրա հիմնական բովանդակությունն անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին։ Նրա հիմնական հակասությունը՝ սոցիալիզմի և իմպերիալիզմի միջև եղած հակասությունն է։ Իսկ որչափով սոցիալիզմը դառնում է համաշխարհային զարգացման գերակշիռ ուժ, այդ չափով էլ աշխարհում հաստատվում են դարաշրջանի հիմնական հակասության լուծման՝ սոցիալիստական սիստեմին բնորոշ ձևերն ու եղանակները։

***

Պատմական բոլոր և, հատկապես, անցման դարաշրջանները բարդ միագումար են հասարակական այն երևույթների, որոնց հիմքը մարդկանց արտադրական գործունեությունն է։ «Մարքսիզմի ծաղրանկարի մասին» հայտնի հոդվածում Վ. Ի. Լենինը գրել է. «Դարաշրջանը հենց այն պատճառով է կոչվում դարաշրջան, որ նա ընդգրկում է ինչպես տիպական, այնպես էլ ոչ տիպական, ինչպես մեծ, այնպես էլ փոքր, ինչպես առաջավոր երկրներին հատուկ, այնպես էլ հետամնացներին հատուկ բազմապիսի երևույթների ու պատերազմների միագումարը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 23, էջ 34—35)։

Պատմությունը հաստատել է, որ հասարակության զարգացման և ոչ մի փուլում սոցիալական միատարրություն չի եղել։ Հասարակական կյանքը միշտ էլ եղել է բազմագույն, խայտաբղետ։ Նրա սոցիալական «գույները», «երանգները» դարաշրջանից դարաշրջան բազմապատկվել են, առավելագույն խայտաբղետության հասնելով հասարակական-տնտեսական մի ֆորմացիայից մյուսին անցնելու էպոխայում։ Եվ դա միանգամայն բնական է, քանի որ անցումային դարաշրջաններում միևնույն տարածության և միևնույն ժամանակի սահմաններում տեղ են գտնում հին ու նոր հասարակական կառուցվածքները։ Այսպես է եղել ամբողջ նախապատմության ընթացքում։

Իրականությունն ավելի բարդ, այլազան դարձավ արդի դարաշրջանում, որի սկիզբը դրվեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայով։ Եվ այդ նույնպես բնական է ու հասկանալի։ Եթե անցման նախորդ դարաշրջաններում գոյակցել են միայն նույն կարգի սիստեմների տարատեսակները, այն իմաստով, որ դրանց հիմքը կազմել են, վերջին հաշվով, մասնավոր սեփականատիրական արտադրահարաբերությունների սոսկ տարբեր ձևերը, ապա արդի

դարաշրջանում գոյակցում են սոցիալական հակադրություններ։ Եվ այս հանգամանքը իրականությունը առավել «մոզայիկ» է դարձնում։

Բայց «մոզայիկ իրականությունը», ինչպես այն անվանել է Լենինը, չի ներկայացնում ոչ հասարակական երևույթների էկլեկտիկ շփոթ, ոչ էլ դրանց քաոս։ Հասարակական կյանքի բազմազան երևույթներն առաջանում և զարգանում են ոչ կամայականորեն։ Նրանք փոխգործողության մեջ են և, պատկերավոր ասած՝ փոխգործողության մեջ են «հիերարխիկ» կերպով, «սուբորդինացված»։ Պատմական յուրաքանչյուր դարաշրջան ունի իր հիմնական բովանդակությունը, գլխավոր առանձնահատկությունները և հիմնական հակասությունը։ Դրանք ներկայացնում են պատմական յուրաքանչյուր կոնկրետ դարաշրջանի սահմաններում տեղի ունեցող պրոցեսների ամբողջ բազմազանությունը։

Արդի դարաշրջանը նույնպես ունի իր հիմնական բովանդակությունը։ Դա անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին։ Բայց մեր էպոխան, որի պերիոդիզացիայի օբյեկտիվ չափանիշը հասարակական կառուցվածքի սոցիալիստական սիստեմի առաջացումն ու կազմավորումն է, ինչպես և ամեն մի այլ պատմական դարաշրջան, բաղկացած է զարգացման տարբեր փուլերից, տարբեր էտապներից։ Դրանցից յուրաքանչյուրում դարաշրջանի հիմնական բովանդակությունը ներազդում և դրսևորվում է տարբեր ուժով։ Այն տարբեր ներգործություն է ունենում համաշխարհային զարգացման, առանձին երկրների պատմական ճակատագրի, ինչպես նաև միջազգային կյանքի առավել նշանակալից իրադարձությունների ծավալման ընթացքի վրա։ Այնուամենայնիվ, արդի դարաշրջանը բնութագրող հիմնական ուղղությունն անցումն է սոցիալիզմին։ Ահա հենց այդ գլխավոր ուղղությանն են ենթարկվում «մոզայիկ» արդիականության մնացած բոլոր ուղղությունները։

Արդի դարաշրջանի հիմնական բովանդակությունը ցույց է տալիս պատմական զարգացման գլխավոր ուղղությունը և այն, թե որ դասակարգն է կանգնած դարաշրջանի կենտրոնում, պայմանավորելով նրա գլխավոր առանձնահատկությունները։ Ահա թե ինչու կոմունիստական ու բանվորական պարտիաները 1957 և 1960 թվականների միջազգային խորհրդակցություններում ընդունած Դեկլարացիայում և Հայտարարության մեջ այնքան մեծ ուշադրություն նվիրեցին այդ հարցին։ Իսկ ՍՄԿՊ-ի ծրագրում կարդում ենք. «Արդի դարաշրջանը, որի հիմնական բովանդակությունը անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին, երկու հակադիր հասարակական սիստեմների պայքարի դարաշրջանն է, սոցիալիստական և ազգային-ազատագրական ռևոլյուցիաների դարաշրջանը, իմպերիալիզմի կործանման, գաղութային սիստեմի վերացման դարաշրջանը, նորանոր ժողովուրդների՝ սոցիալիզմի ուղին անցնելու, համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը։ Արդի դարաշրջանի կենտրոնում կանգնած են միջազգային բանվոր դասակարգը և նրա գլխավոր ծնունդը՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 425)։

Արդի դարաշրջանի հիմնական բովանդակության բնորոշումը սկզբունքային նշանակություն ունի։ Այն կողմնորոշում է միջազգային բանվորական ու կոմունիստական շարժումը նրա ռևոլյուցիոն պայքարում, օգնում է՝ խորապես ըմբռնելու, որ պրոլետարիատի դասակարգային մարտերում, գաղութային ժողովուրդների ազգային-ազատագրական ճակատամարտերում, հակաիմպե-



րիալիստական դեմոկրատական շարժումներում տարբեր մակարդակներով, տարբեր ինտենսիվությամբ է լուծվում սոցիալական անհավասարության վերջին ապաստանի՝ կապիտալի տիրապետության տապալման պատմական մեծ խնդիրը։ Արդի դարաշրջանի հիմնական բովանդակության գիտական ըմբռնումը հնարավորություն է ստեղծում հասկանալու ժողովրդա-դեմոկրատական, ազգային-ազատագրական և սոցիալիստական ռևոլյուցիաների խնդիրները մոտեցնելու և դրանք հակաիմպերիալիստական վիթխարի հոսանքի հետ միահյուսելու անհրաժեշտությունը։

Սովետական Միության կոմունիստական պարտիայի, ինչպես նաև աշխարհի կոմունիստական պարտիաների բացարձակ մեծամասնության ծառայությունը նաև այն է, որ արդի դարաշրջանի հիմնական բովանդակության վերոհիշյալ բնորոշմամբ նրանք լույս սփռեցին մեր օրերի վերաբերյալ այն պատկերացումների խավար թագավորության մեջ, որ տարածում են դատապարտված ուժերի պաստորները։ Իսկ ինչե՞ր ասես չեն քարոզում մոնոպոլիստական կապիտալիզմի հոգևոր հայրերը մեր ժամանակի սոցիալական պրոցեսների բովանդակության մասին։ Այդ պատկերացումների հետ են կապված թե՛ արևմտագերմանական էքզիստենցիալիստների ճանաչված ներկայացուցիչ, հաճախ ԳՖՌ-ի պետական փիլիսոփա ազդարարվող Կարլ Յասպերսի «Որտե՞ղ ենք մենք գտնըվում» հարցը՝ «Անդունդի եզրին, մարդկության անխուսափելի վախճանի եզրին» հուսահատ պատասխանով, թե՛ անգլիական խոշորագույն բուրժուական պատմաբան ու մարգարե հորջորջվող Առնոլդ Թոյնբիի հոռետեսական դատողությունները «կրճատվող աշխարհում» ժողովուրդների համատեղ կյանքի հեռանկարների մասին, թե՛ նույնիսկ արևմտա-գերմանական կենդանահոգեբան Ադոլֆ Պորտմանի «կենսաբանական հեռանկարների» որոնումները, քանի որ նրա կարծիքով, «չկան սոցիալական հեռանկարներ»։ Իմպերիալիզմի այդ, ինչպես և շատ ու շատ այլ գաղափարախոսներ, «առանձնակի ջանքեր են գործադրում, որպեսզի աղավաղեն արդի դարաշրջանի բնույթի ըմբռնումը։ Նման կեղծիքը հետապնդում է միանգամայն որոշակի նպատակ՝ ապակողմնորոշել ժողովրդական լայն մասսաներին, շեղել նրանց ռևոլյուցիոն ուղուց, կապել իմպերիալիզմի կառքին...» (Ն. Ս. Խրուշչով, «Կոմունիզմը ժողովուրդների խաղաղությունն ու երջանկությունն է», էջ 16)։

Արդի դարաշրջանի, նրա հիմնական բովանդակության մարքս-լենինյան բնորոշումը հսկայական ծառայություն է մատուցում ՍՄԿՊ-ին, համաշխարհային կոմունիստական շարժմանը՝ ամեն գույնի օպորտունիզմի դեմ, արդիականության դարակազմիկ իրադարձությունների մեկնաբանության մեջ դոկտրինյորական և ռևիզիոնիստական խեղաթյուրումների դեմ մղվող պայքարում։ Այն օգնում է ծայրահեղ ռևոլյուցիոն ֆրազների ճարճատյունի ետևում տեսնելու կամ արդի դարաշրջանի հիմնական բովանդակության թյուրըմբռնում, կամ արտացոլվող իրականության գնահատման՝ սուբյեկտիվիզմով ներթափանցված «կամային եղանակ», կամ դոգմատիզմի խոհանոցում պատրաստված տեսական ապուրի երկու տեսակների էկլեկտիկ խառնուրդ։

Արդի դարաշրջանի մարքս-լենինյան բնորոշումը ցույց է տալիս, որ պատմական կարևորագույն իրադարձությունները կարող են հասկացվել միայն մի դարաշրջանից մյուսին անցնելու օբյեկտիվ պայմանները վերլուծելու դեպքում։ Եվ, ինչպես ընդգծել է Լենինը, եթե չի կարելի իմանալ, թե ինչպիսի արագությամբ և ինչպիսի հաջողությամբ կզարգանան տվյալ դարաշրջանի առանձին

պատմական շարժումները, ապա կարելի է իմանալ, թե «...որ դասակարգն է կանգնած այս կամ այն էպոխայի կենտրոնում, որոշելով այդ դարաշրջանի գլխավոր բովանդակությունը, նրա զարգացման գլխավոր ուղղությունը, պատմական իրադրության գլխավոր առանձնահատկությունները և այլն: Միայն այս հիման վրա, այսինքն հաշվի առնելով առաջին հերթին զանազան «դարաշրջանների» տարբերությունը (և ոչ թե առանձին երկրների պատմության առանձին միջադեպերի) հիմնական գծերը, մենք կարող ենք ճիշտ կառուցել մեր տակտիկան. և միայն տվյալ դարաշրջանի հիմնական գծերն իմանալը կարող է հիմք ծառայել հաշվի առնելու այս կամ այն երկրի ավելի մանրակրկիտ առանձնահատկությունները» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 21, էջ 172):

Մեր դարաշրջանն անվանելով սոցիալիստական և ազգային-ազատագրական ռևոլյուցիաների, իմպերիալիզմի կործանման և համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի ու կոմունիզմի հաղթանակի դարաշրջան, և, ընդգծելով, որ արդի դարաշրջանի կենտրոնում կանգնած են միջազգային բանվոր դասակարգը և նրա գլխավոր ծնունդը՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, աշխարհի բոլոր կոմունիստները ձգտում են տարբեր երկրներում անընդհատ աճող ու զարգացող հակաիմպերիալիստական ուժերն ու շարժումները միաձուլել համաշխարհային միասնական ռևոլյուցիոն հոսանքի մեջ:



Դարաշրջանի հիմնական բովանդակությունը սերտորեն կապված է նրա հիմնական հակասության հետ: Հասարակական-տնտեսական մի ֆորմացիայից մյուսին անցնելու էպոխայի հիմնական հակասությունը սոցիալական գլխավոր ուժերի միջև եղած հակասությունն է, որի հիմքում ընկած են ինչպես տվյալ արտադրաեղանակի հակասությունները, այնպես էլ պատմականորեն իր դարն ապրած հասարակարգը նոր հասարակարգով փոխարինելու պահանջը:

Անցումային դարաշրջանների հիմնական հակասությունը միշտ էլ ավելի մեծ ներգործություն է ունեցել երկրների պատմական բախտի վրա, քան համեմատաբար կայուն ժամանակաշրջանների հիմնական հակասությունը: Անցման դարաշրջանում ռևոլյուցիոն իրադարձությունների փոթորիկը մոլեգնում է ոչ միայն առանձին երկրների սահմաններում. այն իր ոլորտն է առնում նաև շատ այլ ժողովուրդների և, ամենից առաջ՝ հարևան ժողովուրդների հասարակական կյանքը:

Այսպես, ֆեոդալիզմից կապիտալիզմին անցնելու դարաշրջանի հիմնական հակասությունը լուծվեց ոչ միայն 1789—1794 թթ. ֆրանսիական բուրժուական ռևոլյուցիայի քուրայում: Ծավալված պայքարի հորձանուտը նետվեցին շատ ժողովուրդներ: 1789—1871 թթ. ժամանակաշրջանի Եվրոպայի պատմության բոլոր փոքրիշատե նշանակալի իրադարձությունները ծավալվում էին հակաֆեոդալական դրոշի ներքո, դարաշրջանի հիմնական հակասությունը՝ մեռնող ֆեոդալիզմի և ծնվող կապիտալիզմի հակասությունը լուծելու նշանաբանով: Այն դարաշրջանում, երբ ֆեոդալական-աբսոլյուտիստական ուժերի դեմ բուրժուազիայի շարժումը, Լենինի բնորոշմամբ, պատմական պրոցեսի «գլխավոր զսպանակն» էր, նրա «օբյեկտիվ բովանդակությունը» համենայնդեպս կոնտինենտալ Եվրոպայում, շատ ժողովուրդների հասարակական կյանքը



իր վրա կրում էր «XVIII դարի ֆրանսիական ռևոլյուցիայի վիթխարի ցախավելի...» ազդեցությունը (Մարքս):
Առավել վիթխարի էին Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիա-
յի հետևանքները, ռևոլյուցիա, որը դրեց որակապես նոր դարաշրջանի՝ նախա-
պատմությունից դեպի մարդկության իսկական պատմությունը տանող անցման
դարաշրջանի հիմքը: Եթե 1916 թվականին Լենինը 1789—1871 թթ. ժամանա-
կաշրջանը համարում էր անցման դարաշրջան, որտեղ հիմնական հակասու-
թյունը մեռնող ֆեոդալիզմի և ծնվող կապիտալիզմի միջև եղած հակասու-
թյունն էր, ապա 1920 թվականին նա «համաշխարհային պատմության այժմ
սկսված նոր դարաշրջանի» բովանդակությունը բնութագրեց որպես «կապիտա-
լիզմի և նրա հետքերի ոչնչացում, կոմունիստական կարգերի հիմքերի արմա-
տավորում...»: Իսկ ՍՄԿՊ-ի XXII համագումարում ընդունված ծրագրում ընդ-
գծվեց, որ ժամանակակից աշխարհի հիմնական հակասությունը «սոցիալիզմի
և իմպերիալիզմի միջև եղած հակասությունն է»:
Մեծ Հոկտեմբերով սկսված անցումը կապիտալիզմից դեպի սոցիալիզմ՝
ռևոլյուցիոն իրադարձությունների ուղեծրի մեջ առավ աշխարհի բոլոր ժողո-
վուրդներին: Բովանդակ մարդկության կյանքի բոլոր ոլորտներում սկսվեց ա-
մենախոր վերափոխությունների ժամանակաշրջանը:
Սակայն կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանի առաջին
փուլում համաշխարհային զարգացման մեջ և միջազգային հարաբերություննե-
րում համեմատաբար համեստ դեր էր պատկանում հակադիր սիստեմների
միջև եղած հակասությանը: Հակադրությունների համանշանակ չլինելու պատ-
ճառով (բուրժուազիայի միջազգային դիկտատուրային հակադրված էր պրոլե-
տարիատի ազգային դիկտատուրան, այսինքն՝ պրոլետարիատի դիկտատուրան
մեկ երկրում), սոցիալիզմի և կապիտալիզմի միջև եղած հակասության ազդե-
ցությունը համաշխարհային զարգացման ընթացքի վրա մեծ չէր: Սոցիալիզ-
մի այդ ներգործությունը երկատվում էր նախ և առաջ ուրիշ երկրների պրոլե-
տարների գիտակցության հեղափոխականացման միջոցով: Բացի դրանից,
մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը, իմպերիալիստական տերու-
թյունների կառավարող շրջանները սոցիալիզմը համարում էին ավելի շատ
որպես միջազգային քաղաքականության օբյեկտ, քան սուբյեկտ:
Այդ էին վկայում և՛ Բրիտանիայի արտաքին գործերի մինիստր լորդ Ա.
Բալֆուրի գնահատականները Ռուսաստանի «անզոր դրության» մասին (1918
թվական), և՛ լորդ Քերզոնի վերջնագիրը (1923 թվական), և՛ «Տանակայի հու-
շագիրը»՝ ճապոնական միլիտարիզմի ոտնահռչակ հակասովետական պլանը
(1927 թ.), և՛ Գերմանիայի տնտեսության մինիստր Հուգենբերգի հուշագիրը,
որով նա հանդես էր գալիս Սովետական Միության հաշվին գաղութացման տե-
րիտորիալ պահանջներով (1933 թվական), և՛, ինչպես գրում էր ԱՄՆ-ի պե-
տական քարտուղարի տեղակալ Ս. Ուելլեսը, «արևմտյան դեմոկրատիաների»
ֆինանսական խոշոր խմբերի, ներառյալ ԱՄՆ-ի շատ խմբերի, այն հույսերը,
թե նախապատրաստվող երկրորդ համաշխարհային պատերազմում «Ռուսաս-
տանը անխուսափելիորեն պարտություն կկրի և թե այդ կապակցությամբ կո-
մունիզմը կչախչախվի»:
Այդօրինակ դատողությունները հետևանք էին ո՛չ միայն դասակարգային
ատելության, այլև այն բանի, որ իմպերիալիզմի լիդերներն ընդունակ չէին
ռեալիստորեն գնահատելու համաշխարհային զարգացման օբյեկտիվ ընթացքն

ու տենդենցները։ Թեև իրականության երևակայական արտացոլումը չէր բացառում նաև առանձին ռեալիստական մտքեր նոր հասարակարգի հնարավորությունների ու հեռանկարների վերաբերյալ (Վիլսոն, Լլոյդ-Ջորջ, Քեյնս, Ջաղտոն և ուրիշներ), այնուամենայնիվ, գերակշռող մոտիվը համաշխարհային հասարակական զարգացման և համաշխարհային քաղաքականության մեջ սոցիալիզմի դերի թերագնահատումն էր։

Այլ կերպ ասած, Հոկտեմբերյան ռևոլյուցիայով սկսված հասարակական հակադիր սիստեմների հակասությունը «չնեղացրեց» կապիտալիզմի օրինաչափությունների և հակասությունների ներգործությունը։ Դրանք շարունակում էին որոշել համաշխարհային քաղաքականության բովանդակությունը։

Դրությունը էապես փոխվեց երկրորդ համաշխարհային պատերազմից հետո։

Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում տեղի ունեցած սոցիալիստական ռևոլյուցիաների շնորհիվ կապիտալիստական շղթայի ճակատային ճեղքումը ստեղծեց բանվոր դասակարգի և իմպերիալիստական բուրժուազիայի ուժերի որակական նոր տեղաբաշխում՝ համաշխարհային մասշտաբով։ Ընդհանուր ճգնաժամի երկրորդ էտապն ապրող կապիտալիստական սիստեմին սկսեց հակադրվել համաշխարհային սոցիալիստական սիստեմը՝ պրոլետարիատի ինտերնացիոնալ դիկտատուրան, որը գնալով հզորանում է։

Հենց այդ ժամանակ սոցիալիզմի և կապիտալիզմի (այժմ արդեն համաշխարհային հակադիր սիստեմների) հակասությունը վերջնականապես դարձավ արդի դարաշրջանի հիմնական հակասությունը։ Այդ ուժերի պայքարն սկսեց խոր ներգործություն ունենալ յուրաքանչյուր առանձին երկրի ներքին կյանքի, միջազգային հարաբերությունների զարգացման ընթացքի վրա, հակասությունների լուծման բնույթի ու ձևերի վրա։

Այս հետևության ճշմարտացիության ամենահամոզիչ վկայությունը նրա օբյեկտիվ բովանդակությունն է, առաջին հերթին՝ հետպատերազմյան միջազգային հարաբերությունները։ Դրանց զարգացման առանցքը պայքարն էր ո՛չ միայն և նույնիսկ ոչ այնքան հանուն այս կամ այն պետության մասնավոր շահերի։ Ո՛չ, հետպատերազմյան միջազգային հարաբերությունները նախ և առաջ հակադիր դասակարգերի և նրանց ստեղծած սոցիալական սիստեմների ճակատամարտն է՝ ի պաշտպանություն այդ հակադրությունների տիրապետության հետ կապված շահերի։

Անցյալի դեմ մղված այդ մեծ ճակատամարտում Ներկան և Ապագան ոչ միայն կարողացան հավասարեցնել ուժերը, այլև նրանց հաղթանակների շնորհիվ սոցիալիզմը վերածվեց մարդկային հասարակության զարգացման վճռական գործոնի, դրանով իսկ նշանավորելով մեր ժամանակի գլխավոր տարբերիչ գիծը։

***

Այժմ արդեն անկնառու է սոցիալիզմի՝ որպես համաշխարհային զարգացման վճռական ուժի վիթխարի դերն ու նշանակությունը։ Այդ պրոցեսի կարևորագույն արդյունքն այն է, որ ստեղծվել է սոցիալական ու համաշխարհային հակադիր սիստեմների հակասությունների լուծման որակապես նոր օբյեկտիվ հնարավորություն։



Հասարակական զարգացման օբյեկտիվ ընթացքով և պրոլետարիատի ռևոլյուցիոն ճակատամարտերով արդի դարաշրջանում առաջին անգամ հնարավորություն է ընձեռվում հասարակական կյանքի բոլոր ոլորտներում ընտրելու հակադրությունների պայքարի ձևերը։ Ընդ որում, եթե այդ կարևորագույն պրոցեսն սկսում է կազմավորվել սոցիալիզմի առաջացման ժամանակաշրջանում, ապա նրա հետագա զարգացումը կախման մեջ է եղել սոցիալիզմի հաջողություններից, նրա՝ համաշխարհային սիստեմ դառնալուց։ Երբ դասակարգային բարիկադների երկու կողմերում շարվեցին համաշխարհային հակադիր սիստեմները, միանգամայն ռեալ դարձավ հակադրությունների պայքարի ձևերի ընտրության հնարավորությունը ինչպես միջազգային հարաբերությունների ասպարեզում, այնպես էլ առանձին երկրների ներսում։

Սա միանգամայն նոր երևույթ է։ Նախորդ դարաշրջաններում պետական կազմակերպությունն ուներ իր միայն մեկ կողմը՝ շահագործող կողմը, իսկ մյուս կողմը՝ ստրուկները, ճորտ գյուղացիներն ու պրոլետարիատը, զրկված էին իշխանությունից։ Այսպիսի պայմաններում տիրապետող, շահագործող դասակարգերը կատարում էին ոչ թե պայքարի ձևերի, այլ բռնության ձևերի, այսինքն՝ իրենց տիրապետության միակ հնարավոր եղանակի ընտրություն։

Միայն այն պահից ի վեր, երբ մարդկային հասարակության պատմական զարգացման գլխավոր բովանդակությունը, ուղղությունն ու առանձնահատկություններն սկսեց որոշել համաշխարհային սոցիալիստական սիստեմը, իրական դարձավ հակադրությունների պայքարի ձևերի ընտրության հնարավորությունը։ Բռնի ձևերի հետ մեկտեղ հաստատուն կերպով ռեալ հնարավորության բնույթ ստացավ առանձին երկրների ներսում և միջազգային հարաբերությունների մեջ հակասությունների լուծման խաղաղ ձևը։

Դժվար է գերագնահատել հասարակական կյանքի այդ երևույթի նշանակությունը։ Այդ թերևս, նշանավորում է համաշխարհային պատմության մեջ այն բեկումը, որի սկիզբը դրեց 1917 թվականի Հոկտեմբերը։ Որովհետև, եթե պրոլետարական ռևոլյուցիան գործնականում խորտակեց հակամարտ ֆորմացիաների օրենքների գործողությունը մեկ երկրի սահմաններում և դարձավ հնարավոր վերափոխությունների նախատիպ այլ երկրների համար, ապա սոցիալիզմի՝ համաշխարհային զարգացման վճռական գործոն դառնալը նշանակում է արդեն ռեալ վերափոխություններ ամբողջ աշխարհի հասարակական կյանքի զարգացման գործում։

Այնքանով, որքանով մինչև համաշխարհային մասշտաբով պրոլետարական ռևոլյուցիաների հաղթանակը ստեղծվել է հակասությունների լուծման ձևերի ընտրության ռեալ հնարավորություն, այդ չափով մի շարք դեպքերում դադարում է հակամարտ ֆորմացիաների օրենքների ճակատագրական գործողությունը նույնիսկ այնտեղ, ուր դեռևս շարունակում են տիրապետել մինչսոցիալիստական ֆորմացիաների օրենքները։ Իսկ դա ռեալ հող է ստեղծում ժամանակակից մարդկության կյանքի շատ ոլորտներում խոր վերափոխությունների և անցյալի մի շարք պատկերացումների անէացման համար։

Պատմական պայմանների փոփոխությունները հարուցում են պատկերացումների փոփոխություններ։ Այդ էր ուսուցանում Լենինը։ Հայտնի է, որ Ռուսաստանում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակից հետո պատերազմի և խաղաղության հարցերում Լենինն իրեն չկաշկանդեց նախկինում ստեղծված պատկերացումներով։ Եթե ռևոլյուցիային նախորդած ժամանակաշրջանում,

կապիտալի անբաժան տիրապետության դարաշրջանում, Լենինը բացառում էր
ո՛չ միայն հասարակության կյանքից պատերազմների բացառման, այլև իմպե-
րիալիստական պատերազմը դեմոկրատական հաշտությամբ ավարտելու հնա-
րավորությունը, ապա Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայից
հետո հանճարեղ դիալեկտիկը հարցը նոր ձևով լուծեց։ Ի հակադրություն
դոկտրինյորների, որոնք Մարքսի ուսմունքը դարձնում են «միակողմանի, այ-
լանդակ, անկենդան», «նրանից դուրս մղելով կենդանի ոգին», խզելով նրա
կապը «դարաշրջանի որոշակի գործնական խնդիրների հետ, որոնք կարող են
փոխվել պատմության յուրաքանչյուր նոր շրջադարձի հետ», Լենինը հանգեց
այն հետևության, որ արդեն ստեղծվում են պայմաններ, որոնց հիման վրա
բանվոր դասակարգը կարող է և պետք է պայքարի ելնի հանուն ժողովուրդների
դեմոկրատական խաղաղության։ Իրերի, պատմական պայմանների դիալեկտի-
կան արտացոլող պատկերացումների արդյունք էին հենց սովետական իշխա-
նության արտաքին քաղաքականության առաջին փաստաթուղթը՝ Հաշտության
դեկրետը և սոցիալիստական պետության հետագա արտաքին քաղաքական
կուրսը, որի հիմնական սկզբունքները տեսականորեն մշակեց ու գիտականո-
րեն հիմնավորեց Վ. Ի. Լենինը. միջազգային ասպարեզում դրանք ստուգվե-
ցին քաղաքական պայքարի 46-ամյա պրակտիկայով։
Պատմական նոր պայմաններում, երբ սոցիալիզմը համաշխարհային զար-
գացման վճռական գործոն է դարձել, անհրաժեշտ է արդի համաշխարհային
զարգացման մի ամբողջ շարք սկզբունքային հարցերի վերաբերյալ հայացք-
ների հետագա զարգացում։ Այդ ուղու վրա վճռականորեն կանգնեցին Սովե-
տական Միության կոմունիստական պարտիան, աշխարհի ավելի քան 80 եր-
կրների բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պարտիաները։
Մարդկային երջանկության դարբինների՝ կոմունիստական պարտիաների.
մեծ համաժողովների ծրագրային փաստաթղթերում արտացոլված են ո՛չ մի-
այն ամբողջ մարդկության կյանքում տեղի ունեցած խոր տեղաշարժերը, ոչ
միայն հակադիր համաշխարհային սիստեմների ուժերի ու նրանց ռեզերվների
նոր տեղաբաշխումը, այլև ժողովուրդների երթի հեռանկարները։ Դրանցում
նշված են այն ուղիները, որոնցով պետք է ընթանան բոլոր երկրների պրոլե-
տարները, դեմոկրատական ուժերը։
Կոմունիստական այդ փաստաթղթերի գլխավոր մտքերից մեկն այն է, որ
հասարակական կյանքի արմատական պրոբլեմների լուծումը այլևս միայն
կապիտալիզմի օրենքներից չի կախված, ավելի պարզորոշ է դարձել հակա-
դրությունը պատմական նոր պայմանների և դարաշրջանի հիմնական հակա-
սության լուծման կապիտալիստական եղանակի միջև։ Անսահմանափակ բռնու-
թյան՝ պատմականորեն իրենց դարն ապրած մեթոդների կողքին սկսել է գոր-
ծել սոցիալական հակասությունները սոցիալիզմի, նրա էությունից բխող մե-
թոդներով լուծելու հնարավորությունը։ Իսկ սոցիալիզմը՝ բոլոր երկրների պրո-
լետարների պայքարի և մարդկային հանճարի ծնունդը, ստեղծում և հաստա-
տում է արդի դարաշրջանի սոցիալական հակասությունների լուծման խաղաղ,
առավել հումանիստական ձևեր։ Այդ է սոցիալիզմի մատուցած մեծ ծառայու-
թյունը ժամանակակից մարդկության ու նրա ապագային։



# ԿՈՄՈՒՆԻԶՄԸ ԵՎ ՀՈՒՄԱՆԻԶՄԸ

Ռ. ՆԱՎԱՍԱՐԴՅԱՆ

## ԻՆՉՊԵՍ ԵՆ Կ. ՄԱՐՔՍԻ ԵՎ ՆՐԱ ՎԱՂ ՇՐՋԱՆԻ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՔՆՆԱԴԱՏՆԵՐԸ ԼՈՒՍԱԲԱՆՈՒՄ «ՕՏԱՐՄԱՆ» ՊՐՈԲԼԵՄԸ

Արդի բուրժուական սոցիոլոգիան, փորձելով կասկածի տակ առնել պատ-
մության առաջընթաց զարգացման գաղափարը, կապիտալիզմի անխուսափելի
ճգնաժամը պատկերում է որպես առհասարակ մարդկային քաղաքակրթության
ճգնաժամ։ Առաջադիմության հարցում նրա սկեպտիցիզմը և հասարակության
զարգացման մեջ մարդուն «հոգեզրկող» ուժերի աճ տեսնելու ձգտումը, սակայն,
չի սահմանափակվում հասարակության կորցրած առաքինությունների ողբով։
Սոցիալիզմի պատմական մեծ հաղթանակների հանդեպ, որն ապացուցել է իր
անսպառ ուժը առաջադիմության պայքարում և ստեղծել է մարդկանց նոր,
ազատ համագործակցություն, բուրժուական սոցիոլոգիան առավել ռեակցիոն
ուժերին մոբիլիզացնում է սոցիալիզմի դեմ պայքարելու, գիտական կոմունիզմի
գաղափարները վարկաբեկելու համար։

### ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՍՈՑԻՈԼՈԳԻԱՆ ԵՎ «ՃՇՄԱՐԻՏ» ՄԱՐՔՍԻԶՄԻ ՈՐՈՆՈՒՄՆԵՐԸ

Նախնադարյան հասարակարգի հետազոտողները պատմում են, որ վայրե-
նի ցեղերի քուրմերը սովորություն ունեին զոհեր մատուցել իրենց կուռքերին,
որպեսզի նրանք օգնեն նվաճելու թշնամի ցեղին։ Բայց երբ թշնամի ցեղը
գերակշռություն էր ձեռք բերում, քուրմերը դեն էին նետում իրենց կուռքերին,
պատժելով նրանց՝ թշնամի ուժերի հանդեպ անզոր գտնվելու համար։ Ի տարբե-
րություն նրանց, բուրժուական փիլիսոփաներն ու գաղափարախոսները՝ արդի
կապիտալի այդ քուրմերը, ձեռք չեն տալիս իրենց կուռքերին, այլ ամեն կերպ
փորձում են նենգափոխել և դրանով իսկ արատավորել աշխատավոր մասսա-
ների գաղափարախոսությունը՝ մարքսիզմ-լենինիզմի մեծ ուսմունքը, մարքսիզ-
մը «մեղադրել» հակահումանիզմի մեջ, աղավաղել գիտական կոմունիզմի տե-
սությունն ու պրակտիկան։
Վերջին 10—15 տարում այդպիսի քննադատության օբյեկտ են դարձել
Մարքսի վաղ շրջանի աշխատությունները, հատկապես նրա «1844 թ. տնտեսա-
գիտական-փիլիսոփայական ձեռագրերը», որոնցում Մարքսը մշակել է օտար-
ման պրոբլեմը, փիլիսոփայական մի կատեգորիայի, որը նշանակում է մարդկա-
յին գործունեության հասարակական արդյունքների ազատում բուն մարդուց և
գիտակցության մեջ դրանց ֆետիշացում այն բանի հետևանքով, որ աշխատան-

քի արդյունքը ինքնուրույն ուժ է ստանում և սկսում է հակադրվել մարդուն՝ որպես նրան օտար, թշնամի և ճնշող ուժ։

Ինչո՞վ է բացատրվում բուրժուական հետազոտողների այդպիսի սևեռուն ուշադրությունը «1844 թ. ձեռագրերի» նկատմամբ։ Չէ՞ որ հայտնի է, որ Մարքսը դրանք գրել է այն ժամանակ, երբ նրա փիլիսոփայական հայացքները դեռ վերջնականապես չէին ձևավորվել և կրում էին անտրոպոլոգիզմի ու վերացական հումանիզմի ազդեցության հետքերը, որոնք Մարքսը հաղթահարեց հասուն շրջանի աշխատություններում։

Չարաշահելով երիտասարդ Մարքսի արտահայտած գիտական տեսակետից ոչ հասուն գաղափարները, բուրժուական սոցիոլոգները փորձում են Մարքսին վերագրել փիլիսոփայական անտրոպոլոգիզմ, որը մարդուն դիտում է ընդհանրապես և ոչ թե որպես հասարակության որոշակի դասակարգի ներկայացուցիչ։ Նրանց ասելով, դա է գլխավորը Մարքսի ուսմունքի մեջ, և հասուն շրջանը կարող է հասկացվել 1844 թ. աշխատությունների դիրքերից, և ոչ թե «Կապիտալի» դիրքերից, ռևոլյուցիոն մարքսիզմի դիրքերից։ Դժվար չէ հասկանալ, որ խեղաթյուրումների նպատակն է՝ ջնջել մարքսիզմի ռևոլյուցիոն բովանդակությունը և այն դարձնել էթիկական սոցիալիզմի տարատեսակ։

Այդ քննադատության հիման վրա բուրժուական գրականության մեջ ձևավորվեց Մարքսի «վաղ շրջանի» և «ուշ շրջանի» կոնցեպցիան, Մարքսի փիլիսոփայական հայացքների ձևավորման սկզբնական շրջանն սկսեցին հակադրել հասուն աշխատությունների շրջանին, որոնք վկայում են Մարքսի անցումը դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի դիրքերը։ Այս կոնցեպցիայից հետևում է՝ քանի որ հասուն մարքսիզմը հումանիստական գծերից զուրկ գաղափարախոսություն է, ապա, ուրեմն, ժամանակակից կոմունիստական շարժումը, որն ընդունել է այդ գաղափարախոսությունը, նույնպես զուրկ է հումանիստական բովանդակությունից։ Ի. Ֆեչերը, որն այդ քննադատների առաջին շարքերում է, տալիս է նոր քննադատների համար տիպական մի ձևակերպում։ «Եթե երիտասարդ Մարքսը,—ասում է նա,—մտածում էր մարդու մասին, ապա հասուն քաղաքատնտես Մարքսը հարկադրված էր մտածել զգաստ նյութականության և պրակտիկայի պահանջների մասին» (Y. Fetscher. Von Marx zur Sorujetideologie. F.-a-M.—Bonn, 1961, s. 17)։

Այս ռևիզիոնիստական և հակակոմունիստական քննադատությունը զարգացնում են բուրժուական փիլիսոփայական ու սոցիոլոգիական շատ հոսանքների ներկայացուցիչներ։ Այդ քննադատության տեսակետից, ասում է ֆրանսիացի մարքսիստ-փիլիսոփա Ռ. Գարոդին, Մարքսին խեղաթյուրելու ամենաճարպիկ եղանակը Մարքսին վկայակոչելն է և դրանով իսկ նրան «կուլ տալու» փորձը, ինչպես այդ անում են կաթոլիկ փիլիսոփաները, որպեսզի նրա ուսմունքը դարձնեն կաթոլիցիզմի փիլիսոփայություն (տե՛ս А. Дени, Р. Городи и др., Марксисты отвечают своим католическим критикам. Թարգմ. ֆր., Մ., 1958, էջ 37։)

Մարքսի վաղ շրջանի աշխատությունների քննադատությունն ընթանում է երկու գծով։ Առաջին գիծը Մարքսի աշխատությունների նեոհեգելական-էքզիստենցիալիստական, ռևիզիոնիստական նենգափոխումն է։ Այդ քննադատությունը երիտասարդ Մարքսին մոտեցնում է Հեգելի և Ֆոյերբախի փիլիսոփայությանը, ժխտում է նրանց հայացքների միջև հակասության առկայությունը, ընդ որում Հեգելի և Մարքսի միջև տարբերությունը տեսնում է այն բանում, որ



Մարքսն անցում էր որոնում Հեգելի սիստեմից դեպի էմպիրիկ իրականությունը, իսկ Մարքսի և Ֆոյերբախի տարբերությունն այն էր, որ Մարքսը անտրոպոլոգիզմը դարձրեց էքզիստենցիալիստական սկզբունքների սիստեմ։ Այլ խոսքով, Մարքսը արդի էքզիստենցիալիզմի՝ այժմ մոդայիկ անհատապաշտության էթիկական տեսության, այսպես կոչված՝ «գոյության փիլիսոփայության» նախակարապետն է։

Եթե Մարքսը նույնիսկ «շուռ տվեց» Հեգելի փիլիսոփայությունը, ասում են այս քննադատները, ապա նա այդ արեց ոչ թե մատերիալիստական, այլ էքզիստենցիալիստական հիմքի վրա և օտարման տարբեր ձևերի (կրոնականից մինչև տնտեսական) սոսկ քննադատությունից այն կողմ չանցավ, ընդսմին բուն օտարումը հասկանում էր որպես հեգելյան տիպի դիալեկտիկայի մոմենտ։ Կաթոլիկական փիլիսոփա Պ. Բիգոն, ջնջելով մարքսիզմի ամեն մի որակական առանձնահատկություն, այն ներկայացնում է որպես Հեգելի կողմից «Ոգու ֆենոմենոլոգիան» գրքում առաջ քաշված գաղափարների մոդիֆիկացում, պնդելով, թե իդեալիստ Հեգելի «ոգու ֆենոմենոլոգիան» Մարքսի մոտ դարձել է «աշխատանքի ֆենոմենոլոգիա» և, համապատասխանաբար, մարդու օտարման դիալեկտիկան՝ կապիտալի օտարում, բացարձակ գիտակցության մետաֆիզիկան՝ բացարձակ կոմունիզմի մետաֆիզիկա (տե՛ս նույն տեղ, էջ 22)։

Իսկ ինչո՞վ է բնորոշ Մարքսի քննադատության մյուս գիծը։ Բացահայտ հակակոմունիզմով, որը չի ժխտում էտապների առկայությունը մարքսիզմի զարգացման մեջ, բայց ուսմունքն ամբողջությամբ վերցրած համարում է գիտականորեն սնանկ։ Այդ քննադատությունը ջնջում է մարքսիզմի դիալեկտիկա-մատերիալիստական բովանդակությունը և Մարքսին վերագրում իդեալիստի հայացքներ։ Նա ասում է. կա՛մ դիալեկտիկան հատուկ է պատմությանը, և այդ դեպքում օտարումը օրգանապես հատուկ է մարդկությանը, ուրեմն և մարդուն միշտ պետք է բնորոշ լինեն առասպելաբանությունն ու կրոնը. կա՛մ էլ կոմունիստական իրականությունը «օտարման վախճանն» է, ուրեմն և պատմության մեջ դիալեկտիկան չքանում է, ու այդպիսով մարքսիզմը դառնում է ոչ գիտական տեսություն։ Այլ խոսքով, դուրս է գալիս, որ մարքսիզմը երկու դեպքում էլ ճիշտ չէ։ Իսկ ինչ վերաբերում է օտարմանը, ապա այն զուտ մարդկային բնական հատկություն է, քանի որ մարդը, ըստ Մարքսի, իբր համակված է «տիրանալու ձգտումով»։ Դա նշանակում է, որ եթե մարդն ուզում է դուրս գալ օտարման վիճակից, ապա նա պետք է նախապես իր էությունը փոխի ներքին ինքնավերլուծման ճանապարհով, այլապես մարդը չի կարող փրկվել իր «բնական մոլորությունից», որը հասցնում է օտարման (տե՛ս Г. Гайден и др., Философия преступления։ Թարգմ. գերմաներենից, Մ., 1962, էջ 416)։ Ահա այսպես է Մարքսը վերածվում հետևողական անտրոպոլոգիստ սուբյեկտիվիստի և իդեալիստի, օտարման տեսության՝ որպես հավիտենական և անվերացնելի երևույթի պաշտպանի։

## «ՕՏԱՐՈՒՄԸ» Կ. ՄԱՐՔՍԻ ԸՄԲՌՆՄԱՄԲ ԵՎ ԻԴԵԱԼԻԶՄԻ ՄԻՍՏԻՖԻԿԱՑՈՒՄԸ

«1844 թ. տնտեսագիտական-փիլիսոփայական ձեռագրերի» քննադատությունը և օտարման տեսական պրոբլեմի վրա ուշադրության կենտրոնացումը բուրժուական սոցիոլոգների մոտ պատահական երևույթ չէ։

1844 թվականը բեկումնային տարի է Կ. Մարքսի գաղափարական զար-

գացման մեջ։ Այդ ժամանակ ավարտվում էր Մարքսի անցման պրոցեսը իդեալիզմից դեպի ռևոլյուցիոն դեմոկրատիզմ և ապա՝ դեպի դիալեկտիկական-մատերիալիստական փիլիսոփայություն ու կոմունիզմ։ Այդ մի ժամանակաշրջան էր, երբ Մարքսը, Վ. Ի. Լենինի արտահայտությամբ, «նոր էր միայն Մարքս դառնում, այսինքն սոցիալիզմի՝ որպես գիտության, հիմնադիր, ժամանակակից մատերիալիզմի հիմնադիր»։ Դնելով իրենց ռևոլյուցիոն ուսմունքի փիլիսոփայական առաջին հիմնաքարերը, Մարքսը, ինչպես և Էնգելսը, դեռևս կրում էր Հեգելի իդեալիզմի և Ֆոյերբախի անտրոպոլոգիզմի ազդեցությունը, որի պատճառով էլ բնության և հասարակության վերաբերյալ սկզբունքորեն նոր հայացքը այդ շրջանի աշխատություններում արտահայտված է դասական փիլիսոփայության մեջ ընդունված տերմինաբանությամբ։ Օրինակ՝ «1844 թ. ձեռագրերում» հանրային սեփականությունը (ի տարբերություն մասնավոր սեփականության) անվանված է «ճշմարիտ մարդկային սեփականություն», կոմունիզմը՝ «ավարտուն նատուրալիզմ», իսկ այնպիսի երևույթ, ինչպիսին է արտադրողի զատումը արտադրության միջոցներից, շահագործումը, աշխատանքի հասարակական բաժանման հակամարտ ձևը և այլն՝ «օտարում»։ Հետագա տարիներին Մարքսը և Էնգելսը, մշակելով իրենց տերմինաբանությունը, հրաժարվում են նատուրալիզմ, հումանիզմ և անտրոպոլոգիզմ հնացած հասկացություններից, իսկ մինչ այդ օգտագործում են այն, ինչ մշակված էր հին փիլիսոփայության կողմից, պահպանելով դրանց ռացիոնալ բովանդակությունը և, միաժամանակ, ընդլայնելով այդ հասկացություններն այնպես, որ դրանք որքան կարելի է լրիվ արտացոլեն զարգացող աշխարհի մատերիալիստական ըմբռնումը։ Բանն այդպես էր նաև օտարման՝ Հեգելի ու Ֆոյերբախի փիլիսոփայության այդ գլխավոր հասկացության, հարցում։ Մարքսի այդ շրջանի աշխատություններում փաստորեն նշմարվում էր այն տենդենցը, որը հետո, հասուն մարքսիզմի ձևավորման կապակցությամբ, լայն ջրբաժան գիծ անցկացրեց, սահմանազատելով մինչմարքսյան փիլիսոփայությունը մարքսիստական փիլիսոփայությունից։

Դա պրոբլեմի միայն մեկ, ընդ որում պակաս էական կողմն է։ Գլխավորն այն է, որ քանի որ Մարքսի հայացքների ձևավորման պրոցեսը դառնում է քաղաքական ու տեսական պրոբլեմների բարդ կոմպլեքս, ապա այստեղ հստակորեն արտահայտված մեթոդոլոգիական դրույթները հաճախ միահյուսվում են հիպոթետիկ այնպիսի պնդումների հետ, որոնք դեռ զերծ չեն Հեգելի ու Ֆոյերբախի ազդեցության վերջին մնացորդներից, վերացական հումանիզմից կամ անտրոպոլոգիզմից։ Սակայն Մարքսի դիալեկտիկական-մատերիալիստական հայացքների ձևավորման այդ բարդ պրոցեսի առանձին ասպեկտները հասկանալի են դառնում (և կարող են հասկացվել) միայն արդեն զարգացած ու ձևավորված մարքսիզմի բարձունքներից։ Այդ բնկումնային մոմենտի բաղում նրբերանգների անտեսումը, Մարքսի աշխատությունների թյուրըմբռնված կամ թյուր մեկնաբանված առանձին դրույթներն էլ հենց կազմեցին այն հիմքը, որի վրա աճեց Մարքսի վաղ շրջանի աշխատությունների արդի բուրժուական քննադատությունը։

Օտարման ադավաղված մեկնաբանությունն այստեղ վճռական դեր է խաղում այն բանում, որ Մարքսը նույնացվի կամ մերձեցվի Հեգելի և Ֆոյերբախի, կամ էլ ժամանակակից մոդայական փիլիսոփայական ուղղությունների հետ, որոնց ավելի ու ավելի մեծ չափով է գրավում օտարման պրոբլեմը՝ ապացուցե-



լու համար նորագույն այն թեզը, թե «մարդն այս աշխարհում օտարական է»։

Իսկ ինչպիսի՞ն է օտարման կոնցեպցիայի իսկական բովանդակությունը վաղ շրջանի Մարքսի մոտ։ Այստեղ անհրաժեշտ է դիմել պատմությանը՝ ճշմարտության այդ լավագույն վկային, որը տվյալ դեպքում ամենևին էլ Մարքսի նորահայտ քննադատների օգտին չի խոսում։ Բանն այն է, որ Հեգելը իդեալականից, ոգուց օտարում էր համարում ամեն մի նյութականություն (առարկայականություն), քանի որ հենց ոգին է ամբողջ աշխարհի ստեղծողը, սկզբնապատճառը։ Ցույց տալով, թե ինչպես է այդ ոգին իր գործունեության մեջ փոխարկվում առարկայական աշխարհի, Հեգելը միստիկական ձևով բացահայտեց «ինքնաստեղծման», այլ կերպ ասած՝ հասարակական մարդու կազմավորման պատմական ռեալ պրոցեսը։ Եվ Մարքսը արդեն 1844 թվականին Հեգելի մեծությունը տեսավ հենց այն բանում, որ նա «մարդու ինքնաստեղծումը դիտում է որպես պրոցես..., որպես ինքնօտարում և այդ ինքնօտարման վերացում... որ նա, հետևապես ըմբռնում է աշխատանքի էությունը և առարկայական, ճշմարիտ, ուստի և իրական մարդուն ըմբռնում է որպես նրա սեփական աշխատանքի արդյունք» (К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произведений, Մ., 1956, էջ 627)։ Աշխատանքի դերի ըմբռնման հարցում Հեգելը, հիրավի, գերազանցեց իր բոլոր նախորդներին, բայց, լինելով իդեալիստ, նա պատկերացնում էր միայն վերացական, հոգևոր աշխատանք։ Դրա հետ մեկտեղ նա հանգեց այն մտքին, որ աշխատանքի շնորհիվ և աշխատանքի պրոցեսում մարդը ձեռք է բերում գիտակցություն, գիտակցում է իր մարդկային էությունը։ Դրանով Հեգելը տեսավ աշխատանքի դրական կողմը, բայց չտեսավ այդ նույն աշխատանքի բացասական կողմը, որն առաջին անգամ մատնանշեց միայն Մարքսը, ընդգծելով, որ շահագործման պայմաններում ուրիշի համար կատարված աշխատանքը ոչ թե մարդկային էության «ինքնաստեղծում է», այլ ավելի շուտ դրա «ինքնաբացասում»։

Եթե Հեգելի համար «առարկայացումը» և «օտարումը» հավասարանշանակ հասկացություններ էին, քանի որ ոգու ամեն մի առարկայացում նրան ներկայանում էր որպես օտարում, ապա Մարքսը հստակորեն սահմանազատեց այդ կատեգորիաները, դրանցից առաջինի տակ հասկանալով առարկայի ստեղծումը, որը հակադրված չէ մարդուն որպես նրան խորթ ուժ, իսկ երկրորդ կատեգորիայի տակ հասկանալով նույն առարկայի վերածվելը իր ստեղծողի նկատմամբ ինչ-որ թշնամական, նրան ճնշող երևույթի, որը բնորոշ է մասնավոր սեփականատիրական հարաբերություններին։ Մարքսը մերժեց նաև Հեգելի այն պնդումը, թե բավական է, որ մարդը ճանաչի օտարված կյանքը, որպեսզի այդ կյանքը դադարի մարդու համար օտարում լինելուց. ըստ Մարքսի, այդպիսի տեսակետը, լինելով իդեալիստական, սոցիալական հարցը հանգեցնում է զուտ հոգեբանական ըմբռնման, կոծկելով դասակարգային հասարակության հակասությունները (տե՛ս Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկեր, Մ., հատ. 2, էջ 210)։

Այն, որ օտարումը գուշակվեց որպես իր ժամանակի հասարակական կյանքի ծնած իրական չարիք, Հեգելին չփրկեց մատերիալիստ Ֆոյերբախի կրքոտ քննադատությունից, որը դեռ Մարքսից առաջ մերկացրեց օտարման ըմբռնման իդեալիստական միստիֆիկացիաները։ Մարդը, ասում էր Ֆոյերբախը, նյութական աշխարհի ծնունդ է, նրա աստվածը լոկ գերբնական այն էակն է, որին մարդը վերագրել է իրենից օտարված հատկություններ ու ընդունակություններ, ուստի և իրեն ենթարկել է այդ աստվածային էակի իշխանությանը։

*Օտարումը համարելով զուտ հոգևոր երևույթ, Ֆոյերբախը կարծում էր, թե այն կարելի է հաղթահարել լուսավորությամբ, ինչպես նաև սիրո բարոյականությունը նոր կրոնի մակարդակին բարձրացնելու ճանապարհով։ Ֆոյերբախը չէր հասկանում, որ գործի էությունը ոչ թե բարոյական ու հոգևոր ոլորտն է, այլ հասարակության տնտեսական ու սոցիալական հարաբերությունները, որոնք ընկած են մարդու թե՛ բարոյականության, թե՛ հոգևոր ոլորտի հիմքում։*

*Մարքսը ձևավորվող դիալեկտիկական մատերիալիզմի դիրքերից մերժեց թե՛ հեգելյան միստիֆիկացումը օտարման պրոբլեմի հարցում, թե՛ Ֆոյերբախի մեկնաբանությունների սահմանափակությունը, օտարումը դարձնելով մատերիալիստական բովանդակությամբ հագեցած ավելի լայն, կոնկրետ հասկացություն, այն ընկալելով յուրահատուկ պրոլետարական ձևով՝* աշխատանքի օտարման *ձևով։*

*Իր «1844 թ. ձեռագրերում» Մարքսը դիմում է մարդու կենսագործունեության տնտեսական ոլորտին։ Նա պարզում է, որ «հասարակական մարդու» կյանքում օտարման հիմնական սոցիալական արմատը հենց աշխատանքի, վարձու բանվորի աշխատանքի օտարումն է։*

*Մարքսը ցույց տվեց, որ հենց աշխատանքի շնորհիվ է մարդը զարգացրել իր ունիվերսալ, համակողմանի էությունը, որ միայն աշխատանքում է դրսևորվում մարդու հասարակական էությունը, ստեղծվում միջավայրը։ Մարդու ինքնագիտակցությունն ու ինքնահաստատումը պահանջում են, որ նա չօտարվի իր աշխատանքի արդյունքի մեջ, բայց կապիտալիզմը, հակասելով մարդու բնական պահանջմունքներին, հասցնում է հենց այդ օտարման, որով և աշխատանքի այն արդյունքները, որոնցում մարդը օտարում է իր կենսական ուժերը, դառնում են մարդու համար խորթ առարկաներ։ Մարդկանց վրա տիրապետելով իբրև ապրանք կամ կապիտալ, դրանք սկսում են կարգավորել մարդկանց փոխհարաբերությունները ապրանքափոխանակման ձևով։ Դրա շնորհիվ տեղի է ունենում մարդկային կապերի իրայնացում, մինչդեռ իրականում այդ կապերը պետք է լինեն մարդկանց* անմիջական հասարակական *կապեր։*

*Աշխատանքը մարդու էության արտահայտությունն է, նրա կենսական առաջին պահանջմունքը, բայց շահագործման պայմաններում, որը աշխատանքի օտարման առաջին պայմանն է, աշխատանքը չի կարող պահանջմունք դառնալ. ընդհակառակն, «հենց որ դադարում է աշխատանքի ֆիզիկական կամ այլ կարգի հարկադրանքը, աշխատանքից փախչում են՝ ինչպես ժանտախտից»։*

*Աշխատանքի օտարմանը հետևում է* աշխատանքի արդյունքի օտարումը *և դրա հետևանքով բանվորը «իր աշխատանքում... ազատորեն չի զարգացնում իր ֆիզիկական ու հոգևոր էներգիան, այլ հյուծում է իր ֆիզիկական էությունը և կործանում իր ոգին»։ «Արտաքին աշխատանքը, այն աշխատանքը, որի պրոցեսում մարդն իրեն օտարում է, ինքնազոհաբերություն է, ինքնախոշտանգում»* (К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произведений, *էջ 563)։*

*«1844 թ. ձեռագրերում», հակառակ բուրժուական հետազոտողների պնդումների, Մարքսը բավական որոշակիորեն աշխատանքի օտարումը դիտում է որպես կապիտալիստական հարաբերությունների յուրահատուկ արտահայտություն, բայց ոչ որպես մարդու բնական հատկությունների, նրա՝ տիրանալու ձգտումների հետևանք։ Մարքսը պարզ ընդգծում է, որ բանվորի անձի միակողմանի զարգացումը, որպես օտարման հետևանք, ինչպես նաև պահանջմունքների կոպտացումը աշխատավոր մարդու ճակատագիրը չէ միայն։ Բուրժուաների նրբացած շահամոլությունն ըստ էության արտահայտում է բուրժուաների մեջ մարդկային գծերի աղքատացումը, քանի որ նրանց մշտապես ճնշում է հարստանալու շահը, իսկ այդ «ոչ այլ ինչ է, եթե ոչ մարդկային իսկական զգացմունքների անարգում»։ Մասնավոր սեփականության պայմաններում «որևէ առարկա* Մերն *է համարվում միայն այն դեպքում, երբ մենք նրա տերն ենք... Ուստի* բոլոր *ֆիզիկական ու հոգևոր զգացմունքները դարձել են այդ* բոլոր *զգացմունքների սոսկական օտարումը՝* տիրանալու զգացումը» *(նույն տեղ, էջ 592)։*



*Այսպիսով, օտարման հասկացությունը վերլուծելու շնորհիվ Մարքսը այն հետևությանը հանգեց, որ սոցիալական հակամարտության պայմաններում բանվորը իր աշխատանքի արդյունքին վերաբերվում է որպես օտար առարկայի, քանի որ ինքը՝ աշխատանքը, հանդես է գալիս որպես բանվորի ինքնօտարման (և ոչ թե ինքնահաստատման) միջոց, որի հետևանքով նա օտարվում է թե՛ բնությունից, թե՛ սեփական մարդկային էությունից, թե՛ մարդկային կոլեկտիվից։*

*Պրոբլեմի համակողմանի վերլուծությունը Մարքսին թույլ տվեց «օտարումը» բնութագրել որպես սոցիոլոգիական լայն հասկացություն, որն արտացոլում է իրական կյանքի ինչպես տնտեսական, այնպես էլ հոգեբանական ու մտավոր կողմերը։ Օտարման այդպիսի ըմբռնումը ընդհանուր ոչինչ չուներ գերմանական կլասիկ փիլիսոփայության հետ։ Ոչ թե բացարձակ ոգին, որն ինքնաճանաչման իր ձգտման մեջ օտարում է իրեն, ինչպես Հեգելի մոտ, և ոչ էլ մարդը, որպես պատմական էակ՝ վերցված հասարակական պրակտիկայից դուրս, ինչպես Ֆոյերբախի մոտ, այլ ռեալ, հասարակական մարդը, որը վերափոխում է բնությունը իր պահանջմունքները բավարարելու նպատակով, որը կոնկրետ կապիտալիստական հասարակական սիստեմի պայմաններում կրում է օտարված աշխատանքի այլանդակող ու հաշմող ազդեցությունը՝ այս է օտարման պրոբլեմի մարքսյան ըմբռնման էությունը 1844 թ. աշխատության մեջ, որն այսօր նենգափոխում են Մարքսի քննադատները։*

## *ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՄԱՐՔՍԻԶՄԸ ԵՎ ԿՈՄՈՒՆԻԶՄԸ ՌԵԱԼ ՀՈՒՄԱՆԻԶՄ ԵՆ*

*Սկզբունքորեն նոր մեթոդոլոգիական այն դիրքերը, որոնց վրա կանգնեց Մարքսը, նրան թույլ տվեցին ո՛չ միայն բացահայտելու օտարման իրական հիմքերը, տալու օտարման բովանդակության ու էության վերլուծությունը հումանիստի դիրքերից, այլ օգնեցին նրան՝ ցույց տալու օտարումը հաղթահարելու ուղիները։ Պատահական չէ, որ Մարքսը (ի տարբերություն Հեգելի և Ֆոյերբախի) ընդգծում է, որ օտարման պրոբլեմը ո՛չ միայն տեսական, այլև գործնական կողմ ունի։ Այդ երկրորդ կողմի վերլուծության ընթացքում Մարքսը հանգեց այն հետևության, որ օտարումից ազատվելու ուղին մասնավոր սեփականության վերացումն է։ Նա գրում է.* «Մասնավոր սեփականության, *որպես* մարդկային *կյանքի յուրացման, դրական վերացումը ամեն մի օտարման դրական վերացումն է, այսինքն մարդու վերադարձը... իր* մարդկային, *այսինքն* հասարակական *կեցությանը» (նույն տեղ, էջ 589)։*

*Թեև «1844 թ. ձեռագրերում» Մարքսը կապիտալիզմի բոլոր հակասությունների ելակետ էր համարում առայժմ դեռ ոչ արտադրական հարաբերությունները, այլ իր աշխատանքի նկատմամբ անհատ բանվորի վերաբերմունքը, որը և նա համարում էր «օտարում», այնուամենայնիվ, պրոբլեմի վերլուծությունն այն-*

քան կոնկրետ էր, որ նա կարողացավ մարդու օտարման պատճառը տեսնել աշխատանքի օտարման մեջ։ Կարևոր է, որ Մարքսը այդ ժամանակ արդեն կանգնած էր հենց իր մշակած դասակարգային կայուն դիրքերում։ Մեկ տարի անց գրած աշխատություններից երևում է, որ Մարքսը հետազոտում է արդեն առավել խոր սոցիալական պրոցեսներ. իր աշխատանքի նկատմամբ բանվորի վերաբերմունքի փոխարեն նա հետազոտում է մարդկանց ընդհանուր գործունեությունը հասարակական զարգացման պատմության որոշակի, կոնկրետ ժամանակաշրջանում։ Դրա շնորհիվ առաջին պլանի վրա է դրվում ոչ թե «աշխատանքի օտարում» փիլիսոփայական-տնտեսագիտական հասկացությունը, այլ «աշխատանքի բաժանում» ավելի լայն, կոնկրետ սոցիալ-տնտեսական հասկացությունը։ Դա նշանակում էր Մարքսի վերջնական ազատագրում Հեգելի ու Ֆոյերբախի ազդեցությունից և անցում գիտական սոցիոլոգիայի դիրքերը։ Դրանից հետո Մարքսը աշխատանքի օտարումը դիտում է որպես աշխատանքի բաժանման ասպեկտներից մեկը, իսկ օտարման պրոբլեմի լուծումը կապում է հասարակական արտադրության կառուցվածքի կոնկրետ վերլուծության հետ, որը և հանդիսացավ դիալեկտիկա-մատերիալիստական մտքի տեսական մեծ նվաճումը։ Միայն դրանից հետո «օտարում» հասկացությունը իր տեղը գրավեց մարքսիստական փիլիսոփայական հասկացությունների ընդհանուր սիստեմում։ Այդ պահից Մարքսը այն կիրառում է ամեն մի ռեալ պրոցեսի էության և նրա դրսևորման արտաքին ձևի միջև եղած հարաբերությունների առանձնահատուկ հակամարտ բնույթն ընդգծելու համար, ինչպես մենք այդ տեսնում ենք «Կապիտալում»։ Ուստի հասկանալի է, որ Մարքսը կարիք չուներ իր ուշ շրջանի աշխատություններում ստեղծել հատուկ «օտարման տեսություն»։ Հաշվի չառնելով այդ, ֆրանսիական ռևիզիոնիստ Ա. Լեֆևրը իր «Հանրագումար և այլն» գրքում (La somme et la reste. Paris, 1959, p. 177) Մարքսին կշտամբում է այն բանի համար, որ նա սիստեմավորման չի հասցրել 1844 թվականին մշակած օտարման տեսությունը։

Կարևոր է ընդգծել, որ օտարման պրոբլեմի վերաբերյալ Մարքսի հայացքների զարգացումը ամենևին չի նշանակում, թե Մարքսը հետագայում հեռացել է հումանիզմի պրոբլեմներից, «կորցրել» մարդուն, քանի որ դադարել է մարդու և աշխատանքի օտարումը քննելուց։ Միայն կեղծարարներն ու դոգմատիկները չեն տեսնում, որ հենց Մարքսը դրեց գործուն հումանիզմի հիմքերը, որը վերափոխվեց պրոլետարական հումանիզմի: Մարքսի աշխատություններում հումանիզմի իսկական բովանդակությունն այն է, որ նա շատ շուտով սկսեց մարդու կողմից իր էության փոփոխումը կապել դասակարգային պայքարի հետ և այդ փոխվեց պրոլետարական հումանիզմի: Մարքսի աշխատություններում հումանիզմը պայքար էր պրոլետարիատի ազատագրության և կոմունիզմի կառուցման համար։ Հենց Մարքսը (Էնգելսի հետ միասին) սոցիոլոգիայի մեջ առաջին անգամ անհատի պրոբլեմին մոտեցավ ոչ թե «հավիտենական բանականության» և «բնական իրավունքների» դիրքերից, այլ կոնկրետ սոցիալ-դասակարգային դիրքերից։

Մարքսը երբեք չէր կասկածում, որ մարդու ազատությունը կապված է նրան օտարող այնպիսի ուժերի հաղթահարման հետ, ինչպիսիք են՝ կապիտալը, փողը, ապրանքը, ինչպիսիք են քաղաքական կամ գաղափարական կապանքները։ Եթե անհատի էությունը պայմանավորված է կոնկրետ սոցիալ-տնտեսական գործոններով, հետևաբար այն հավիտենական չէ, ինչպես որ «հավիտենա-



կան» չեն անհատապաշտությունն ու եսասիրությունը. դրանք իրենց տեղը կզիջեն կոլեկտիվիզմին, որը կդառնա գալիք հասարակության բարոյականության բնորոշ գիծը։ Նոր հասարակարգի ստեղծման համար, ասում էր նա, «անհրաժեշտ է մարդկանց մասսայական փոփոխում, որը հնարավոր է միայն գործնական շարժման մեջ, ռևոլյուցիայի մեջ» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկեր, հատ. 3, էջ 70)։ Մարքսի հայացքների զարգացման սիստեմը սերտորեն կապված է հումանիզմի հետ։ Մարդու, նրա ազատության պրոբլեմը, նրա շահերը հասարակության և կոլեկտիվի շահերի հետ ներդաշնակորեն զուգորդելու հիման վրա անհատի բազմակողմանի զարգացումը միշտ կազմել են Մարքսի մեծ ուսմունքի օրգանական մասը, անկախ նրա ստեղծագործական կենսագրության էտապներից, անկախ այն բանից, թե մենք ո՛ր աշխատություններն ենք վերցնում՝ վաղ շրջանի, թե հասուն շրջանի։

Այսպես, «Հեգելի իրավունքի փիլիսոփայության քննադատության շուրջը», «Հրեական հարցի շուրջը» աշխատություններում մենք գտնում ենք պնդումներ, թե քանի որ մարդու համար բարձրագույն էակ կարող է լինել հենց մարդը, ապա մարդու հիմնական պահանջն է՝ տապալել այն հարաբերությունները, որոնցում մարդը նվաստացվում, ստրկացվում, արհամարհված էակ է դառնում։ «Գերմանական իդեոլոգիայի» մեջ նշվում է, որ անհատի ազատության և նրա համակողմանի զարգացման սկզբունքը կարող է իրագործվել միայն իսկական կոլեկտիվիզմի պայմաններում (տե՛ս Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկեր, հատ. 3, էջ 75), իսկ «Մանիֆեստում» ասվում է, որ միմիայն կոմունիզմը կլինի այն հասարակարգը, որտեղ յուրաքանչյուրի ազատ զարգացումը կլինի բոլորի ազատ զարգացման պայմանը (տե՛ս Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկեր, հատ. 4, էջ 447)։

«Մանիֆեստից» գրեթե 30 տարի հետո գրած «Գոթայի ծրագրի քննադատության շուրջը» աշխատության մեջ մենք առաջվա պես տեսնում ենք Մարքսի խոր հետաքրքրությունը մարդու և նրա համակողմանի զարգացման պրոբլեմի նկատմամբ։ Հումանիզմով են տոգորված նույնիսկ Մարքսի տնտեսագիտական հետազոտությունները։ Այդ են հաստատում «Կապիտալի» տասնյակ էջեր, որոնք նվիրված են կապիտալիստական ձեռնարկություններում բանվորների աշխատանքի ու կյանքի պայմաններին, որտեղ մարդու դերը սոսկ մեքենայի կցորդ լինելն է։ Այս բոլոր փաստերը վկայում են, որ Մարքսը շարունակ հավատարիմ է մնացել հումանիզմին, որ 1844 թ. և հետագա տարիների հումանիզմի միջև ոչ մի անդունդ չկա, այլ կա հետևողական, ավելի ու ավելի ընդլայնվող պայքար մարդու սոցիալական ու բնական հատկությունների դրսևորումն ու զարգացումը կաշկանդող ուժերի դեմ։ Մարքսիզմի նկատմամբ թշնամական վերաբերմո՛ւնքը միայն կարող է ստիպել նենգափոխել Մարքսի վաղ շրջանի աշխատությունների անտրոպոլոգիզմը, իսկ ապա այդ նենգափոխումը ներկայացնել որպես Մարքսի ուսմունքի միակ արժեքավոր բաժինը։ Այդ քննադատները փորձում են իրենց ընթերցողներին հավատացնել, թե «հասուն մարքսիզմի աշխատություններում տեղի ունեցավ սոսկալի անկում Մարքսի վաղ սոցիալիզմի և վաղ աշխատությունների սկզբնական հումանիզմից արմատական հակահումանիզմին» (տե՛ս «Marxismusstudien», 1, Folge, Tübingen, 1956, S, 222)։

Աղավաղելով ու խեղաթյուրելով Մարքսի աշխատությունների բովանդակությունը, բուրժուական քննադատներն ու ռևիզիոնիստները նրան կշտամբում են, թե օտարման նրա նշած ուղիները իբր սոցիալիզմի պայմաններում

չհանդեցրին անհատի ազատության, ավելին՝ արդի մարքսիզմի փիլիսոփայությունից բացառեցին մարդու ներքին, հոգևոր կյանքի պրոբլեմը։

Ի միջի այլոց պետք է խոստովանել, որ այս կետում համակարծիք են Մարքսի ամենատարբեր ուղղությունների պատկանող քննադատները։ Նեոթոմիստ Մոլնիեն, օրինակ, գրում է. քանի որ «ռևոլյուցիոն մարքսիզմը չի ճանաչում մարդկային անհատի որևէ արժեք», ապա սովետական հասարակության մեջ մարդուն մնում է «դառնալ միլիոնավոր ու միլիոնավոր կյանքերից կազմված, հեռուն ձգվող ճանապարհի սալաքար» («De Marx au marxisme» Paris, 1948, p. 224)։ Եթե երիտասարդ Մարքսը տեսավ օտարման անցողիկ բնույթը, ասում է էքզիստենցիալիստ Է. Տիրը, ապա լոկ այն պատճառով, որ Մարքսին հատուկ էր ինչ-որ միստիկական հավատ կոմունիզմի նկատմամբ, մինչդեռ իրականում մարդու օտարումը անվերացնելի է, քանի որ այն հատուկ է մարդկային ցեղին։ Մի այլ էքզիստենցիալիստ այդ միտքն արտահայտել է կտրականապես. «Օտարումը մնում է մարդու անխախտ ճակատագիրը, քանի մարդը գոյություն ունի, քանի դեռ շարունակվում է պատմությունը» (H. Vagner. K. Marx und das Totalitare. Die neue geselsehaft 1960, № 2, S. 43)։

Իհարկե, մարքսիզմի այսպիսի «խորտակիչ» քննադատությամբ հանդես են գալիս ոչ բոլոր էքզիստենցիալիստները։ Այդ սուբյեկտիվ իդեալիստական փիլիսոփայության մի քանի ներկայացուցիչներ (Ժ. Պ. Սարտր և ուրիշներ) պատրաստ են օգնել, որ մարքսիզմին վերադարձվի նրա կորցրած հումանիզմը, դրա համար խորհուրդ տալով այն լրացնել... հենց էքզիստենցիալիզմով։ Բայց հարկ կա՞ արդյոք ասելու, որ մարքսիզմի «հումանիզացման» նման նախագիծը կարող է սոսկ խարխլել մարքսիզմի իրոք հումանիստական բովանդակությունը, որն ապացուցել է օտարման անվերացնելիության, մարդկային էության անփոփոխելիության ուսմունքների ամբողջ սնանկությունը, կոմունիզմի արդեն առաջին փուլում հաստատելով կյանքի բարձրագույն արժեքները՝ ազատություն, աշխատանք և անհատի ծաղկում։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան դրեց հասարակության սոցիալիստական վերափոխման սկիզբը, և այդ վերափոխումը իր աճման ամեն մի նոր էտապում մարդուն ավելի ու ավելի է ազատում սոցիալական այն չարիքից, որը երիտասարդ Մարքսը բնորոշում էր որպես օտարում։

Սոցիալիստական արտադրահարաբերությունների ամրապնդումը բացառում է աշխատանքի օտարման հնարավորությունը. այս իրողությունը չի կարելի անտեսել, քանի որ մեր հասարակարգում ամեն մի աշխատավոր բանում է իր համար, ողջ հասարակության համար, հանդիսանում է իր աշխատանքի տերը, իր շահերը ներդաշնակորեն զուգորդում հասարակական շահերի հետ և պետական ու հասարակական կազմակերպությունների միջոցով ակտիվորեն ներգրավվում հասարակական արտադրության կառավարման գործում։

Մեր հասարակարգում չկան նեղ-կաստայական շահեր ունեցող սոցիալական խմբեր և չկա օտարում կոլեկտիվի առանձին անդամների միջև։ Սոցիալիզմի օրոք մարդը մարդուն բարեկամ է, ընկեր ու եղբայր, այստեղ տիրում է միասնության մթնոլորտ կոլեկտիվիզմի բարոյականության հիմնական սկզբունքների ըմբռնման հարցում։ Դրանք ամենամարդասիրական սկզբունքներն են, որոնց առջև խամրում, անցյալի գիրկն են անցնում անհատապաշտությունն ու եսասիրությունը, անզոր են դառնում «արևմտյան» հումանիզմի ամենամոդայիկ տեսությունները։

---

Պատմում են

ՄԵՐ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԸ

# ՄԻԱՍՆԱԿԱՆ ԸՆՏԱՆԻՔՈՒՄ

Պ. Ա. ՊԱՍԿԱՐ

Մոլդավիայի կոմպարտիայի Կենտկոմի քարտուղար, գյուղատնտեսության ղեկավարման բյուրոյի նախագահ

Մոլդավական ՍՍՌ-ն ամենաերիտասարդ միութենական ռեսպուբլիկաներից մեկն է։ Քառորդ դար էլ չի անցել 1940 թվականի այն անմոռանալի օրից, երբ իրականացավ ժողովրդի դարավոր երազանքը, և նա միավորվեց միասնական Մոլդավական սոցիալիստական պետության մեջ։ Բայց արդեն անճանաչելի է այսօրվա չքնաղ Մոլդավիան, որն ամենևին նման չէ թագավորական-բոյարական Ռումինիայի կազմի մեջ իր խղճուկ գոյությունը քարշ տվող նախկին Բեսարաբիային։

Պրիմիտիվ գյուղատնտեսություն, կիսատնայնագործական արդյունաբերություն, աշխատավորության իրավազրկություն ու դաժան շահագործում, բնակչության ութսուն տոկոսի անգրագիտություն — ահա այսպիսին էր ոչ հեռու անցյալում Բեսարաբիան, աղքատության այդ երկիրը։

Արևելքից նոր կյանքի լույս բացվեց մոլդավական հողի վրա։ Ռեսպուբլիկայի աշխատավորները սովետական ժողովուրդների մեծ ընտանիքում հսկայական խանդավառությամբ ձեռնամուխ եղան նոր հասարակության կերտմանը։ Կոմունիստական պարտիայի իմաստուն ազգային քաղաքականության շնորհիվ բոլոր եղբայրական ժողովուրդների և, առաջին հերթին՝ ռուս մեծ ժողովրդի անշահախնդիր ու բարեկամական օգնության վրա հենված, մեր ժողովուրդը պատմական կարճ ժամանակամիջոցում հաղթահարեց դարավոր հետամնացությունը և երկիրը դարձրեց ծաղկուն ինդուստրիալ-կոլտնտեսային ռեսպուբլիկա՝ զարգացած արդյունաբերությամբ, մեքենայացված գյուղատնտեսությամբ և առաջավոր կուլտուրայով։ Մոլդավիայի տնտեսության ու կուլտուրայի բուռն վերելքը ցայտուն կերպով հաստատում է լենինյան ազգային քաղաքականության, սոցիալիստական կարգերի ստեղծագործական մեծ ուժի կենսունակությունը, որն ապահովում է ազգությունների քաղաքական իրավահավասարությունը և հին կարգերից ժառանգած տնտեսական ու կուլտուրական անհավասարության վերացումը։

Արդյունաբերությունը Մոլդավիայում ըստ էության ստեղծվել է սովետական իշխանության տարիներին: Ռեսպուբլիկայի այնպիսի խոշորագույն արդյունաբերական ձեռնարկություններ, ինչպիսիք են՝ Գ. Ի. Կոտովսկու անվան էլեկտրամեխանիկական գործարանը, Սերգեյ Լազոյի անվան կոշիկի ֆաբրիկան, ստեղծվել ու աճել են տնայնագործական այն խղճուկ արհեստանոցների տեղը, որոնք ամենապրիմիտիվ սարքավորում ունեին, իսկ ներկայումս դրանք ժամանակակից հասկացողությամբ հզոր ձեռնարկություններ են: Լազոյի անվան ֆաբրիկայի կոնվեերից ներկայումս օրական տասն անգամ ավելի կոշիկ է դուրս գալիս, քան առաջ արտադրվում էր ամբողջ Բեսարաբիայում: Գ. Ի. Կոտովսկու անվան գործարանի թողարկած դազգահներն ու սարքավորումը ներկայումս հայտնի են ոչ միայն մեր ռեսպուբլիկաների սահմաններում, այլև արտասահմանում: Քիշինևի տրիկոտաժի ֆաբրիկան օրական հարյուր հազար արուրք արտադրանք է տալիս, այսինքն՝ այնքան, որքան տալիս էին նախապատերազմյան Մոլդավիայի բոլոր տրիկոտաժի ձեռնարկությունները մի շաբաթվա ընթացքում: Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը տալիս է բրդյա կտորեղեն, լավորակ կաշի, մետաքսյա գործվածքներ, գորգեր և այլ ապրանքներ:

Ռեսպուբլիկայի արդյունաբերությունն սկսել է առավել բուռն զարգանալ յոթնամյակի ընթացքում: Յոթնամյակի առաջին տարիներին ստեղծվեցին արդյունաբերական արտադրության մի շարք նոր ճյուղեր, ինչպիսիք են՝ էլեկտրատեխնիկական, սարքաշինական և մեքենաշինական արտադրությունը: Սկսվեց ճշգրիտ չափիչ գործիքների, միկրոհաղորդալարերի, էլեկտրապոմպերի արտադրությունը: Ռեսպուբլիկայում ստեղծված է քարհատ մեքենաների, ճնշման ուժով ձուլելու, սրոցա-հղկման դազգահների, պնևմատիկ մուրճերի և այլ սարքավորումների արտադրություն: Աշխարհի 36 երկրներ ներկայումս մոլդավական ձեռնարկությունների մարկայով արդյունաբերական արտադրանք են ստանում:

Բուռն վերելքի են հասել նաև Մոլդավիայի համար տրադիցիոն արդյունաբերական այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ գինեգործությունը, մսի-կաթի, պահածոների, շաքարի և այլ ճյուղեր, որոնց համար հումքի խոշոր բազա է ստեղծվել: Ներկայումս Մոլդավիան խաղողի արտադրության ու մթերման բնագավառում մեր երկրում առաջին տեղն է գրավում: Մերձ-դնեստրյան ձեռնարկությունները տարեկան տալիս են չորս հարյուր վաթսունինը միլիոն տուփ ջեմ, մուրաբա, մրգի ու բանջարեղենի պահածո, պտղահյութ. մինչդեռ ամբողջ ցարական Ռուսաստանում արտադրվում էր ընդամենը 95 միլիոն տուփ պահածո:

Մոլդավիայի արդյունաբերության համախառն արտադրանքը վերջին տարիներս ավելացել է համարյա ութ անգամ: Բայց արդյունաբերությունն ավելի մեծ թափով պիտի զարգանա մոտիկ ապագայում: Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումների ծավալը յոթնամյակի ընթացքում կհասնի մոտ 8,8 միլիարդ ռուբլու: Այդ զգալի չափով մեծ է ամբողջ հետպատերազմյան ժամանակաշրջանում կատարված կապիտալ ներդրումներից: Նախատեսված է մինչև 1965 թ. վերջը գործի գցել 210 արդյունաբերական ձեռնարկություն:

Արդյունաբերության այսպիսի բուռն աճ կարելի էր իրականացնել միայն էներգետիկ հզոր բազայի հիման վրա, որն ստեղծվել է վերջին տասնամյակում: Ներկայումս ռեսպուբլիկայում 43,6 անգամ ավելի էլեկտրաէներգիա է արտադրվում, քան Մոլդավական ռեսպուբլիկայի ստեղծման ժամանակ (1940 թ.): Կուչուրգանի էլեկտրակայանի առաջին հերթի գործարկմամբ (1964 թ.) լիովին կբավարարվի արդյունաբերության, գյուղատնտեսության և բնակչության էլեկտրաէներգիայի պահանջը: Արագաթափ վերելք է ապրում նաև մեր գյուղատնտեսությունը:

Նախահոկտեմբերյան օրերին Մոլդավիայի աշխատավորներն օրինական հպարտության զգացումով զեկուցեցին ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեին, Սովետական կառավարությանը և անձամբ ընկ. Ն. Ս. Խրուշչովին, որ կատարել



են պետությանը հաց վաճառելու 1963 թ. սոցիալիստական պարտավորությունները: Հայրենիքի շտեմարաններն են լցվել ավելի քան 40 միլիոն փութ հացահատիկ, որն 9 միլիոնով ավելի է պլանից: Այս քանակությամբ հաց Մոլդավիան դեռ երբեք չի վաճառել: Պետությունն ստացել է 255 հազար տոննա արևածաղկի սերմ, 153 հազար տոննա պտուղ, 537 հազար տոննա խաղող, 110 հազար տոննա միս: Հավաքված է 240 միլիոն թելամետր ծխախոտի տերև, որը հնարավորություն կտա արտադրել 30 հազար տոննա ծխախոտի հումք, կամ երկու անգամ ավելի, քան անցյալ տարի:

Կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեն և ՍՍՌՄ Մինիստրների սովետը աշխատանքային այս մեծ հաղթանակի առթիվ ջերմորեն շնորհավորեցին Մոլդավական Սովետական Սոցիալիստական ռեսպուբլիկայի կոլտնտեսականներին, սովխոզների բանվորներին ու բանվորուհիներին, գյուղատնտեսության մասնագետներին, պարտիական, սովետական, կոմերիտական, պրոֆմիութենական կազմակերպությունների, արտադրական վարչությունների աշխատողներին ու բոլոր աշխատավորներին և վստահություն հայտնեցին, որ Մոլդավական ՍՍՌ-ի աշխատավորները նորանոր հաջողությունների կհասնեն գյուղատնտեսության բոլոր ճյուղերի զարգացման գործում, այսուհետև ևս Սովետական Միության ժողովուրդների եղբայրական ընտանիքում կլինեն սոցիալիստական մրցության առաջավորների շարքում:

Կոլտնտեսականների և սովխոզների բանվորների, արտադրական վարչությունների ու պարտիական կոմիտեների աշխատողների նվաճումների այս բարձր գնահատականը նրանց մեջ հարուցել է ստեղծագործական նոր եռանդ և ձեռք բերած նվաճումների բազմապատկման ցանկություն:

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատավորների նվաճումներն ամենից առաջ նրանց անձնվեր աշխատանքի արդյունք են: Ամեն մի կոլտնտեսությունում ու սովխոզում աճել են փառապանծ փարոսներ, որոնց աշխատանքով, փորձով և նվաճումներով հպարտանում է ամբողջ մոլդավական ժողովուրդը: Մեզ մոտ լայնորեն հայտնի են պանծալի փարոսների, սոցիալիստական աշխատանքի հերոսների անունները: Այդպիսի փարոսներից են՝ խաղողագործ-այգեգործներ՝ Մ. Տուտունարուն, Ե. Ցլորինան, Վ. Ցուրկանը, կթվորներ, Ն. Ռուսսուն և Դ. Գրոզը, եգիպտացորենի մշակող Ա. Ջեբոտարը, կոլտնտեսությունների նախագահներ Ե. Սորոչանը, Ա. Պապուրովը, Դ. Միչենկոն, բրիգադավարներ Ս. Շտիրբուն, Վ. Ստեպանովը և շատ ուրիշներ: Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության 43 վարպետներ արժանացել են բարձրագույն պարգևի՝ սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման: Հազարավոր կոլտնտեսականներ և սովխոզների բանվորներ պարգևատրվել են շքանշաններով ու մեդալներով: Նրանց փորձն ուսումնասիրում և արտադրության մեջ կիրառում են մեր դաշտերի հազարավոր աշխատավորներ: Եվ զարմանալի չէ, որ առաջավորների բանակը տարեցտարի համալրվում է նորանոր մարդկանցով:

1963 թ. ևս, չնայած բացառիկ անբարենպաստ կլիմայական պայմաններին, շատ հողագործներ ու անասնապահներ բարձրացրին հացահատիկի, պտուղների ու բանջարեղենի բերքատվությունն ու անասնապահության մթերատվությունը: Այսպես՝ Տիրասպոլի արտադրական վարչության «Կոմունիզմի արշալույս» կոլտնտեսության օղակավար Իվան Գարկավենկոն իր օղակի հետ միասին 100 հեկտար տարածության ամեն մի հեկտարից 100 ցենտներ եգիպտացորենի հատիկ է հավաքել. Լազոյի արտադրական վարչության Միչուրինի անվան կոլտնտեսության օղակավար, մեխանիզատոր Վլադիմիր Գոլբանը իր 104 հեկտար հողամասում առանց ձեռքի աշխատանքի կիրառման հեկտարից հավաքել է 45,7 ցենտներ եգիպտացորենի հատիկ: Յուրաքանչյուր հեկտարի մշակության ծախսերը այդ օղակում կազմել են 2,4 մարդ-օր:

Պակաս հաջողությունների չեն հասել նաև խաղողագործները: Կոտովսկու արտադրական վարչության Լենինի անվան կոլտնտեսությունում (Բարդար գյուղ) հեկտարից ավելի քան 80 ցենտներ հատապտուղ են ստացել: Կթվոր-

ներ՝ Ա. Մ. Ջանփոլադյանը, Ս. Հ. Պողոսյանը, գինեգործության մասնագետներ Մ. Սեդրակյանը և ուրիշներ: Մեր գիտական հիմնարկությունների միջև տեղի է ունենում գիտական տեղեկությունների փոխանակում:

Նույնպիսի փոխանակություն սկսվել է նաև կուլտուրայի մյուս ճյուղերում, մասնավորապես գրականության ու արվեստի բնագավառում: Մեր ունկնդիրներն ու հանդիսատեսները գեղարվեստական մեծ բավականություն ստացան ունկնդրելով հայկական արվեստի անվանի վարպետներ Զարա Դոլուխանյանին, Գոհար Գասպարյանին, Արթուր Այդինյանին, Առնո Բաբաջանյանին, և հայկական էստրադայի վարպետներին: Մենք ուրախ ենք, որ հայ հանդիսատեսներն էլ հնարավորություն են ունեցել ծանոթանալու մոլդավական արվեստին՝ ունկնդրելով «Դոյնա» կապելլայի, «Ժոկ» անսամբլի, «Բուկուրիա» նվագախմբի և «Ֆլուերաշ»-ի համերգները: Մեզ մոտ հետաքրքրությամբ են ունկնդրում Մոլդավիայի աշխատավորության համար հայկական ռադիոյի աշխատողների կազմակերպած հաղորդումները: Մոլդավական ռադիոն էլ իր հերթին հայ ռադիո ունկնդիրներին ծանոթացնում է մեր ռեսպուբլիկայի նվաճումներին, նրա արդյունաբերության ու գյուղատնտեսության առաջավոր մարդկանց:

Իրավամբ հպարտանալով այն բոլոր նվաճումներով, որ սովետական իշխանության տարիներին ձեռք են բերվել ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի բնագավառներում՝ մոլդավական ժողովուրդն իր շնորհակալ հայացքն է ուղղում հարազատ կոմունիստական պարտիային՝ մեր բոլոր հաղթանակների ոգեշնչողին ու կազմակերպչին: Սովետական բոլոր ժողովուրդների միասնական ընտանիքում ընթանալով պարտիայի նշած ուղիով՝ մոլդավական ժողովուրդը գիտակցում է, որ յուրաքանչյուր սովետական ռեսպուբլիկա կարող է ավելի բարգավաճել ու ամրապնդվել միայն ՍՍՌՄ եղբայրական սոցիալիստական ազգերի մեծ ընտանիքում:



Տպագրելով Մոլդավիայի կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեի քարտուղար ընկեր Պ. Պասկարի հոդվածը, խմբագրությունս ռեսպուբլիկայի Անիի արտադրական վարչության և պարտիական կոմիտեի ուշադրությունն է հրավիրում այն բանի վրա, որ նրանք հետևողականորեն իրագործեն Չաղիր-լունգցիներին հղած իրենց նամակից բխող պարտավորությունը՝ սոցիալիստական մրցության վերսկսման վերաբերյալ:



## ԽՍՏՈՐԵՆ ԿԻՐԱՌԵԼ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

ՍՄԿՊ Կանոնադրությունը կոմունիստից պահանջում է աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, բարձր գաղափարայնության, թերությունների, շահամոլության և պորտաբուծության հանդեպ անհաշտության օրինակ ծառայել: Նա պետք է օրինակ ցույց տա կոմունիստական բարոյականության սկզբունքների հաստատման պայքարում, և դա հասկանալի է:

Պարտիայի ուժը, նրա հզորությունը կախված են այն բանից, թե ովքեր են նրա անդամները: Լենինյան պարտիան չի կարող անտարբեր լինել իր շարքերի մարտունակության ու ամրության նկատմամբ: Կոմունիստը նախ պետք է հանդիսանա քաղաքացիական պարտականությունների կատարման օրինակ, տիպար: Սակայն դեռ կան այնպիսի մարդիկ, որոնք պարտիայի շարքերում իրենց գտնվելը դիտում են որպես իրենց անձնական կարիերան ավելի լավ ապահովելու հնարավորություն: Չարաշահելով իրենց պարտիականությունը, խախտում են կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի պահանջները, կորցնում են իրենց քաղաքական դեմքը, թույլ տալիս սխալներ, զանցանքներ և մինչև իսկ հանցագործություններ: Պարզ է, որ նման կոմունիստը պետք է հաշիվ տա պարտիայի առաջ ՍՄԿՊ Կանոնադրության պահանջները չկատարելու համար:

ՍՄԿՊ Կանոնադրության մեջ պարզ ու որոշակի ցույց է տրված կոմունիստների անձնական գործերի քննարկման, նրանց պատասխանատվության ենթարկելու կարգը:

Կանոնադրության 9-րդ պարագրաֆում ասված է.

«Կանոնադրական պարտականությունները չկատարելու և այլ զանցանքների համար պարտիայի անդամը կամ անդամության թեկնածուն ենթարկվում է պատասխանատվության, և նրա նկատմամբ կարող են կիրառվել տույժեր՝ ի ցույց դնել, նկատողություն (խիստ նկատողություն), նկատողություն (խիստ նկատողություն գրանցելով հաշվառման քարտում): Պարտիական պատժի առավելագույն չափը պարտիայից վտարելն է»:

Կանոնադրությունը միաժամանակ նախատեսում է, որ հարկ եղած դեպքում, որպես պարտիական տույժի միջոց, պարտիական կազմակերպությունը կարող է պարտիայի անդամին թեկնածու փոխադրել մինչև մեկ տարի ժամկետով:

Երբ պարտիական կազմակերպությունը որոշում է ընդունել կոմունիստին հայտարարել նկատողություն, խիստ նկատողություն՝ գրանցելով հաշվառման քարտում, այն պետք է անպայման քննարկվի վերադաս պարտիական օրգանում՝ շրջկոմում, քաղկոմում, արտադրական պարտիական կոմիտեում.

սկզբնական պարտիական կազմակերպության որոշումը ուժ է ստանում միայն շրջկոմի, քաղկոմի, արտադրական պարտիական կոմիտեի հաստատումից հետո։ Այն տույժերը, որոնք չեն գրանցվում կոմունիստների հաշվառման քարտում, վերադաս պարտիական օրգանը չի քննարկում և սկզբնական պարտկազմակերպության որոշումը չի հաստատում, եթե դրանց առթիվ բողոքներ չեն ստացվել կոմունիստներից։

Շրջկոմի, քաղկոմի, արտադրական պարտիական կոմիտեի հաստատմանն է ներկայացվում նաև պարտիայից վտարելու և թեկնածու փոխադրելու վերաբերյալ պարտիական կազմակերպության որոշումը։ Սահմանված ժամկետը լրանալուց հետո թեկնածու փոխադրվածը պարտիայի անդամ է ընդունվում ընդհանուր հիմունքներով, պահպանելով իր պարտիական նախկին ստաժը։

Կոմունիստին պարտիական տույժի ենթարկելիս պետք է ցուցաբերել առավել ուշադրություն և զգուշություն, հատկապես, երբ խոսքը վերաբերում է պարտիայից վտարելուն. այս դեպքում պարտիական կազմակերպությունը պետք է մանրակրկիտ քննարկի կոմունիստին ներկայացված մեղադրանքների հիմնավորվածությունը։ Եվ դա հասկանալի է, քանի որ պարտիայից վտարելը պատժի առավելագույն չափն է կոմունիստի համար։

Յուրաքանչյուր պարտիական կազմակերպության խնդիրն է՝ կոմունիստին դաստիարակել պարտիական ու պետական կարգապահությունը խստորեն պահպանելու ոգով. աննշան զանցանքներ կատարելու համար պետք է կիրառել դաստիարակության ու ներգործման այնպիսի միջոցներ, ինչպիսիք են՝ ընկերական քննադատությունը, պարտիական հանդիմանությունը, նախազգուշացումը կամ մատնացույց անելը։

Սակայն այդ ամենին էլ չի նշանակում, թե կարելի է ներողամտություն, անսկզբունքայնություն հանդես բերել այն մարդկանց նկատմամբ, ովքեր խախտում են պարտիական ու պետական օրենքները, չարաշահում իրենց դիրքը, պաշտոնը, արատավորում լենինյան պարտիայի անդամի բարձր կոչումը։ Նման կոմունիստների նկատմամբ պետք է լինել անողոք և որքան շուտ պարտիան ազատվի այդպիսի անարժան անդամներից, այնքան բարձր կլինեն պարտիական կազմակերպության հեղինակությունն ու մարտունակությունը։

Ինչպե՞ս վարվել պարտիայի այն անդամի կամ անդամության թեկնածուի հետ, որ կատարել է այնպիսի հանցանք, որը նախատեսում է քրեական պատասխանատվություն։ Նպատակահարմա՞ր է արդյոք այդպիսի կոմունիստների անձնական գործը քննարկել պարտիական կազմակերպությունում, չսպասելով դատական օրգանների որոշմանը, կամ որքանո՞վ ճիշտ են վարվում քննչական օրգանները, երբ կոմունիստի գործը հանձնում են դատական օրգաններին, չսպասելով, թե ի՞նչ վերաբերմունք կցուցաբերի տվյալ կոմունիստի նկատմամբ պարտիական կազմակերպությունը կամ պարտիական օրգանը։

Այդ հարցերի պատասխանը հստակ տրված է ՍՄԿՊ Կանոնադրության 12-րդ պարագրաֆում։

«Եթե պարտիայի անդամը կատարել է այնպիսի զանցանքներ, որոնք պատժվում են քրեական կարգով, նա վտարվում է պարտիայից և ենթարկվում է պատասխանատվության՝ օրենքին համապատասխան»։

Ինչպես կարելի է նկատել, Կանոնադրությունը պահանջում է քրեական կարգով պատժվող կոմունիստին նախ վտարել պարտիայից, ապա ենթարկել պատասխանատվության՝ օրենքին համապատասխան։



Հայտնի է, որ Լենինը վճռականորեն դեմ էր պաշտպանելու այն կոմունիստներին, որոնք խախտել են օրենքը և հանցանք են կատարել։ Կենտկոմի քաղբյուրոյի անդամներին 1922 թվականի մարտի 18-ին հասցեագրված իր նամակում նա գրել է.

«... հավաստել բոլոր նահանգկոմներին, որ կոմունիստների պատասխանատվության «մեղմացման» իմաստով դատարանների վրա «ազդելու» ամենափոքր-իսկ փորձի համար Կենտկոմը կհեռացնի պարտիայից... շրջաբերականով հաղորդել Արդարադատության ժողկոմատին (պատճենը՝ պարտիայի նահանգկոմներին), որ կոմունիստներին դատարանները պարտավոր են պատժել ավելի խստորեն, քան ոչ կոմունիստներին»։ Վերջում Լենինն ավելացնում է՝ «Ամոթանքի և խայտառակության գագաթնակետ է, երբ իշխանության գլուխ կանգնած պարտիան պաշտպանում է «իր» սրիկաներին»։

Միանգամայն անհանդուրժելի է, որ առանձին պարտիական կազմակերպություններում թույլ են տրվում լենինյան ցուցումների և ՍՄԿՊ Կանոնադրության պահանջների կոպիտ խախտումներ, երբեմն հովանավորում ու պաշտպանության տակ են առնում հանցագործություն կատարած պարտիայի անդամներին ու անդամության թեկնածուներին, անհիմն կերպով ձգձգում են նրանց անձնական գործերի քննարկումը։

Լենինականի դարբնոցամամլիչային սարքավորումների գործարանի պարտկազմակերպության անդամ Ա. Գասպարյանը 1960 թվականի սեպտեմբերին խուլիգանության համար դատապարտվել է չորս տարվա ազատազրկման։ Պարտիական կազմակերպությունն, իրազեկ լինելով վերջինիս արարքներին, ինչպես մինչև դատը, հետո էլ երկար ժամանակ քննության չէր առնում նրա հարցը։ Միայն դատապարտելուց հինգ ամիս անց այն դրվեց կոմունիստների քննարկմանը և... հարցի առթիվ ոչ մի որոշում չկայացվեց։ Անցան տարիներ։ Գասպարյանն իր պատիժը կրելուց հետո՝ 1963 թվականի սեպտեմբերին, ներկայացավ գործարան, խնդրելով կազմակերպությանը լուծել իր պարտիականության հարցը։ Ոտնահարելով ՍՄԿՊ Կանոնադրությունը, պարտիական կազմակերպությունը Գասպարյանին հայտարարում է խիստ նկատողություն, գրանցելով հաշվառման քարտում։ Այդ փաստը ամենից առաջ վկայում է տվյալ կազմակերպության ղեկավարների գաղափարազրկության ու անսկզբունքայնության մասին։

Մեծ ուշացումով ՀԿՊ Լենինականի քաղաքային կոմիտեի բյուրոն ուղղեց սկզբնական պարտիական կազմակերպության սխալը՝ Գասպարյանին վտարելով պարտիայի շարքերից։

Լենինականի պարտիական կազմակերպությունում չկա քրեական պատասխանատվության ենթարկված մի կոմունիստ, որի պարտիական հարցը քննարկված լիներ մինչև դատը. ավելին. մի շարք դատված կոմունիստների գործերը երկար ժամանակ իրենց պարտիական լուծումը չեն ստացել, իսկ որոշ դեպքերում էլ հանցանքներ կատարած առանձին մարդկանց նկատմամբ քրեական գործ չի հարուցվել միայն այն նկատառումով, որ նրանք պարտիական են։

Մի այլ օրինակ. Հայաստանի երգչախմբային ընկերության Երևանի արտադրական կոմբինատի նախկին դիրեկտոր Վ. Կարապետյանը հանցավոր անփութություն ցուցաբերելու համար դատապարտվել է հարկադիր ուղղիչ աշխատանքի։ Սակայն պարտիական կազմակերպությունը հարկ է համարել նրա

հարցին անդրադառնալ պատիժը կրելուց հետո միայն։ Հասկանալի է, որ հե-
տին թվով կոմունիստին տրված պարտիական տույժը չէր կարող դաստիարակ-
չական լուրջ ազդեցություն ունենալ։ Նույնանման փաստեր տեղ են գտել Երև-
վանի Լենինյան, Օրջոնիկիձեի շրջանների, Աշտարակի, Մարտունու արտադրա-
կան գոտիների պարտիական կազմակերպություններում։ Որոշ քաղկոմներ,
շրջկոմներ, արտադրական պարտիական կոմիտեներ դատված կոմունիստների
անձնական գործերը քննարկելիս անհրաժեշտ պարտիական գնահատական չեն
տալիս քաշքշուկի հովանավորման փաստերին, ցուցաբերում են լիբերալիզմ ու
անսկզբունքայնություն պարտիական կազմակերպությունների այն քարտու-
ղարների նկատմամբ, որոնք թույլ են տալիս ՍՄԿՊ Կանոնադրության պահանջ-
ների խախտում։

Նման փաստերը հետևանք են այն սխալ ու վնասակար պրակտիկայի,
որ պարտիական որոշ աշխատողներ գտնում են, թե կոմունիստին դատական
պատասխանատվության կարելի է ենթարկել միայն այն դեպքում, երբ նա
հեռացված է պարտիայից։ Ինչի՞ է հանգեցնում նման սխալ մոտեցումը։ Այն
կաշկանդում է դատական ու քննչական օրգաններին՝ քրեական գործ հարու-
ցելու այդպիսի կոմունիստների նկատմամբ։ Մյուս կողմից՝ այդ հանգեցնում
է այն բանին, որ հաճախ նույնանման հանցանքի համար անպարտիականը
դատական պատասխանատվության է ենթարկվում, իսկ կոմունիստը՝ միայն
պարտիական պատասխանատվության։

Այսպիսի պրակտիկան հակասում է լենինյան այն ցուցումներին, որ պար-
տիայի անդամները ոչ մի առավելություն ու արտոնություն չունեն մնացած
աշխատավորների հանդեպ, որ հանցանքի ու զանցանքի համար, եթե այն
ենթակա է դատական պատասխանատվության, կոմունիստը պետք է կրի
կրկնակի պատասխանատվություն՝ պարտիայի և դատարանի առաջ։ Պատա-
հում են դեպքեր, երբ դատական-քննչական օրգանները, ելնելով սովետական
արդարադատության հումանիստական ոգուց, գործող օրենքի սահմաններից,
հանցանք կամ զանցանք թույլ տված կոմունիստի նկատմամբ կիրառում են
պատժի նվազագույն չափերը։ Սակայն այդ ամենևին չի նշանակում, թե
պարտիան կարող է ներել իր անդամին, որը դատվել է գողության, հափըշ-
տակության, կաշառակերության, վատնում-յուրացումների, խուլիգանության
և այլ հանցանք ու զանցանքի համար, անկախ արարքի մեծությունից։

Տեղական պարտիական օրգանների միջամտությունը դատա-քննչական
գործերում հեղինակազրկում է արդարադատության օրգաններին, ապակողմ-
նորոշում նրանց, խախտում դատախազների և դատավորների ինքնուրույնու-
թյան ու անկախության սկզբունքը։ Դատական օրգանները պետք է ղեկավար-
վեն ոչ թե այս կամ այն ղեկավարի ցուցումներով, այլ սովետական օրենք-
ներով, որոնք պարտադիր են բոլորի համար, անկախ նրանց գրաված դիրքից։

Դատաքննչական օրգանները կոմունիստների վերաբերյալ գործ հարու-
ցելիս պարտավոր են այդ մասին ինֆորմացիա տալ համապատասխան պար-
տիական օրգանին, ներկայացնել նրան անհրաժեշտ նյութեր՝ հանցանք կա-
տարած կոմունիստի հարցը լուծելու համար։ Ինչպես ասվեց վերևում, կո-
մունիստի պարտիականության հարցը, որպես կանոն, պետք է լուծվի մինչև
դատարանի որոշումը։ Սակայն չի բացառված, որ առանձին դեպքերում կա-
րելի է լուծել նաև դատարանի վերջնական որոշումից հետո։ Հնարավոր են



նաև դեպքեր, երբ պարտիական օրգանները կարող են վերանայել իրենց
նախկին որոշումը՝ պարտիայից հեռացնելու մասին, եթե դա բխում է քննու-
թյան կամ դատական պրոցեսում պարզված նոր փաստերից։

Այս ամենից բոլորովին չի հետևում, որ պետք է անհոգություն ցուցա-
բերել կոմունիստի բախտի հանդեպ։ Ընդհակառակն։ Պարտիական կազմա-
կերպությունը պարտավոր է և պետք է խորամուխ լինի իր անդամի արարք-
ների մեջ, նարկ եղած դեպքում պաշտպանի կոմունիստներին։ Բայց այդ
պաշտպանությունը պետք է լինի խիստ սկզբունքային և բացառապես սով-
տական օրենքների սահմաններում։

Յուրաքանչյուր կոնկրետ փաստի, գործի նկատմամբ դժվար է սահմանել
միասնական ինչ-որ դեղատոմս։ Բայց պարզ է մի բան՝ կոմունիստների
կողմից թույլ տրված հանցանքներն ու զանցանքները, որոնք պատժվում են
քրեական կարգով, պետք է դառնան պարտիական կազմակերպության
քննարկման առարկա։

Ինչպես հայտնի է, կոմունիստին պարտիայից վտարելու հարցը լուծվում
է սկզբնական պարտիական կազմակերպության ժողովում։ Եվ այդ ճիշտ է։
Նախ՝ պարտիական կազմակերպությունն ավելի մոտիկից ու բազմակողմանի
է ճանաչում իր անդամին և, երկրորդ՝ պարտիական պատժի կիրառումը դաս-
տիարակչական խոշոր նշանակություն կունենա կազմակերպության մյուս
անդամների համար։ Սակայն, ելնելով ՍՄԿՊ Կանոնադրությունում նախա-
տեսված դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքներից, կոմունիստին պար-
տիայից կարող են վտարել և վերադաս պարտիական օրգանները՝ շրջկոմը,
արտադրական պարտիական կոմիտեն, քաղկոմը, կենտկոմը։ Իսկ եթե վերա-
դաս պարտիական օրգանը այս կամ այն հանգամանքից ելնելով բացառիկ
դեպքերում կոմունիստին հեռացնում է պարտիայի շարքերից առանց սկզբ-
նական պարտկազմակերպության կարծիքն իմանալու, ապա պարտիական
կոմիտեի այդ որոշումը պետք է անպայման պարզաբանվի կոմունիստներին,
հաշվի առնվի սկզբնական պարտիական կազմակերպության կարծիքը, որի
անդամի նկատմամբ որոշում է ընդունվել։

Պարտկազմակերպություններում անձնական գործերի քննարկման պրակ-
տիկայում հաճախ որոշում ընդունելու ժամանակ լինում են տարաձայնու-
թյուններ այն պարզ պատճառով, որ ժողովում արվում են տույժի չափերի մի
քանի առաջարկություններ։ Այդպիսի վիճակ ստեղծվում է այն պատճառով,
որ կոմունիստի անձնական գործը վատ է նախապատրաստվում, տվյալ
հարցի մասին զեկուցումը կամ ինֆորմացիան կցկտուր է, կոմունիստներին
չի պարզաբանում գործի իրական վիճակը և այստեղից էլ քննարկումը կրում
է պասսիվ բնույթ, ժողովականները չեն կարողանում ճիշտ կողմնորոշվել,
ունենալով տարբեր առաջարկություններ։

Որպեսզի տարաձայնություն չլինի, անհրաժեշտ է քվեարկություն անց-
կացնել ոչ թե ըստ արված առաջարկությունների հերթականության, այլ ըստ
նրանց խստության աստիճանի։ Այսպես, եթե պարտիական բյուրոն ժողովի
քննարկմանն է ներկայացրել նկատողություն (հաշվառման քարտում գրան-
ցումով կամ առանց գրանցման), իսկ ժողովում առաջարկվել է նաև խիստ
նկատողություն (հաշվառման քարտում գրանցումով կամ առանց գրանցման)
ու պարտիայից հեռացում, քննարկման պետք է դնել նախ՝ պարտիայից հե-
ռացնելու առաջարկը, ապա՝ հաջորդ խիստ տույժի առաջարկը։

Մի քանի խոսք կոմունիստների պարտիական տույժերի վերացման կարգի մասին։

Հայտնի է, որ ՍՄԿՊ Կանոնադրությունը պարտիական տույժերը ուժի մեջ մնալու ժամկետ չի նախատեսում, չի սահմանված, թե որ տույժը ինչքան ժամանակ պետք է կրի կոմունիստը, բացառությամբ, երբ պարտիայի անդամը իջեցվում է անդամության թեկնածու մինչև մեկ տարի ժամկետով։ Այստեղից էլ պարզ է, որ պարտիական տույժի հանելու հարցը յուրաքանչյուր առանձին դեպքում պետք է որոշվի ելնելով այն բանից, թե կոմունիստը որքանով է ուղղվել, արդյոք արե՞լ է համապատասխան հետևություն, վերացրե՞լ է այն թերությունները, որոնց համար նա տույժ է ստացել։ Տույժերի վերացման հարցը կարելի է քննարկել ինչպես կոմունիստի դիմումի հիման վրա, այնպես էլ պարտիական կազմակերպության նախաձեռնությամբ։ Եթե պարտիական կազմակերպությունը տեսնում է, որ տույժի ենթարկված կոմունիստն իր պրակտիկ գործունեությամբ շտկել է այն բացերն ու թերությունները, որոնց համար նա պատժվել է, ապա առանց կոմունիստի դիմումի կարող է ինքն իր նախաձեռնությամբ առաջ քաշել ու լուծել տույժի վերացման հարցը։

Բացառված չեն դեպքերը, երբ պարտիական կազմակերպությունն անհրաժեշտ գտնի միանգամից կոմունիստից հանելու երկու կամ ավելի տույժեր, որոնք ստացել է նա տարբեր տարիներում։ Այս դեպքում պարտկազմակերպությունը պետք է լրիվ համոզված լինի, որ տվյալ տույժերի անցած ժամկետը բավարար է եղել և ունեցել է իր դաստիարակչական ազդեցությունը։

Հասկանալի է, որ պրակտիկ աշխատանքում ծառանում են բազմաթիվ ու բազմապիսի հարցեր՝ կապված կոմունիստների անձնական գործերի կոնկրետ քննարկման կարգի հետ։ Ցույց տալ ամեն մի կոնկրետ գործի լուծման ճիշտ ճանապարհը կարող են միայն պրակտիկան, պարտկազմակերպության հարուստ փորձը և ճիշտ սկզբունքային մոտեցումը՝ ՍՄԿՊ Կանոնադրության պահանջների սահմաններում։

Վ. ՎԱՐԴԱՆՈՎ
ՀԿՊ Կենտկոմի պարտօրգանների բաժնի տեսուչ

## ՎՃՌՈՂԸ ՄԱՐԴԻԿ ԵՆ

Ներկայումս կոլտնտեսությունները դարձել են բազմաճյուղ խոշոր տնտեսություններ, որտեղ անընդհատ աճում է աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը, լայն հնարավորություններ են ստեղծվում արտադրական բոլոր ճյուղերը գյուղատնտեսական առաջավոր գիտության հիմունքներով վարելու համար։ Հասկանալի է, որ նման պայմաններում կոլտնտեսությունների, ինչպես նաև սովխոզների ղեկավարումը դարձել է ավելի բարդ գործ և պահանջվում է, որ հանրային տնտեսությունն ամրապնդվի արտադրության հմուտ կազմակերպիչներով, կազմակերպական ընդունակություններ և ագրոնոմիական ու զոոտեխնիկական գիտելիքներ ունեցող ղեկավար կադրերով։

Ահա թե ինչու ՍՄԿՊ XXII համագումարը և պարտիայի Կենտկոմի պլենումները պահանջում են վճռականորեն բարելավել գյուղատնտեսության ղեկավարումը, բարձրացնել կոլտնտեսային կադրերի հետ տարվող աշխա-



տանքի մակարդակը, ուժեղացնել նրանց կազմը որակյալ, փորձված մարդկանցով, որոնք ընդունակ լինեն հմտորեն ղեկավարելու տնտեսությունը, ապահովելու գյուղատնտեսության առջև ծառացած խնդիրների կատարումը։

Սևանի գյուղական արտադրական պարտիական կոմիտեն, կատարելով ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումները, իր գործունեության ընթացքում առանձին կարևորություն է տալիս կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակման հարցին։ Հաշվի առնելով, որ կադրերը, մարդկանց ճիշտ ու հոգատար ընտրությունն են պայմանավորում գյուղատնտեսական մթերքների արտադրության պլանների հաջող կատարումը, պարտիական կոմիտեն կոլտնտեսային ու սովխոզային արտադրությունն ամրապնդում է փորձված կադրերով, որոնք կկարողանան հաղթահարել դժվարությունները, զարգացնել տնտեսապես ետ մնացող կոլտնտեսությունները։

Հայտնի է, որ հանրային արտադրությունը կազմակերպելու, աշխատանքի առաջավոր մեթոդներն արմատավորելու գործում անչափ մեծ է բրիգադավարի, ֆերմայի վարիչի դերը։ Այդ նկատառումով պարտիական կազմակերպությունները վերջին շրջանում բրիգադներն ու ֆերմաները ամրապնդել են գործիմաց, ազնիվ աշխատողներով։

Առանձին կոլտնտեսություններում ու սովխոզներում պատշաճ ուշադրություն չի նվիրվում արտադրության կազմակերպիչների՝ բրիգադավարների ու ֆերմաների վարիչների ընտրությանը։ Օրինակ, Բջնի գյուղի կոլտնտեսության կաթնաապրանքային ֆերմայի վարիչ Մովսիսյանը ինչպես հարկն է չէր ղեկավարում ֆերմայի աշխատանքները, որի պատճառով կոլտնտեսությունը 1962 թվականին 2.840 ցենտների փոխարեն ստացավ ընդամենը 1926 ցենտներ կաթ։ Ֆերմայի վարիչը թույլ էր տվել նաև չարաշահումներ։ Պարտիական կոմիտեի բյուրոն անդրադառնալով այդ հարցին՝ ֆերմայի վարիչին հեռացրեց աշխատանքից. այժմ ֆերման ղեկավարում է առաջավոր անասնապահ Հ. Բալաբեկյանը. նա հաջող է կազմակերպել աշխատանքը։ 1963 թվականի 10 ամսում այդ ֆերման արտադրել է 2451 ցենտներ կաթ, որը նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ 616 ցենտներով ավելի է։

Նույն կոլտնտեսությունում իրեն չէր արդարացնում այգեգործական բրիգադայի բրիգադավար Բ. Կարապետյանը։ Այժմ նրան փոխարինել է ագրոտեխնիկ, պարտիայի անդամ Ժ. Խաչատրյանը, որը գործնական քայլեր է անում այգիների տարածությունն ընդարձակելու և բերքատվությունը բարձրացնելու ուղղությամբ։

Ալափարսի սովխոզում եղած 2 կաթնաապրանքային բրիգադները ղեկավարում էին Գ. Սարգսյանը և Հ. Բաբայանը. գործի նկատմամբ նրանք սրտացավ վերաբերմունք չունեին։ Նրանց վատ աշխատանքի պատճառով 1962 թվականին սովխոզը 176 ցենտներով թերակատարեց կաթի արտադրության պլանը։ Այդ անհանգստացրեց պարտկազմակերպությանը և սովխոզի դիրեկցիային։ Այդ 2 բրիգադները միացվեցին և բրիգադավար նշանակվեց Ս. Բաբայանը, որն առաջին իսկ օրվանից եռանդուն աշխատանք ծավալեց կովերի խնամքը և կերակրումը զոոանասնաբուժական կանոններով կազմակերպելու, այդ գործում կթվոր-անասնապահների պատասխանատվությունը բարձրացնելու համար։ Այս միջոցառումները տվեցին շոշափելի արդյունք։ Սովխոզը ժամկետից շուտ կատարեց 4580 ցենտներ կաթի արտադրության 1963 թվականի պլանը։

Սակայն որոշ կոլտնտեսություններում դեռևս լուրջ չեն զբաղվում ֆերմաների վարիչների ու բրիգադավարների ընտրությամբ. երբեմն այդ աշխատանքում առաջադրվում են այնպիսի մարդիկ, որոնք զուրկ են կազմակերպական ունակություններից, լուրջ պատասխանատվություն չեն զգում ստանձնած գործի նկատմամբ: Այդպես է դրությունը, օրինակ, Վ. Ախտա գյուղի կոլտնտեսությունում: Այստեղ կաթնաապրանքային ֆերմայի վարիչն է Վ. Պողոսյանը, որն ինչպես հարկն է չի գլխավորում կթվոր-անասնապահների աշխատանքը, անտեսում է զոոտեխնիկական կանոնները: Այս ամենի պատճառով կոլտնտեսությունը շարունակ թերակատարում է կաթի արտադրության պլանը:

Նման վիճակ գոյություն ունի նաև Աղավնաձոր գյուղի կոլտնտեսությունում: Այստեղ պարտկազմակերպությունը և արտելի վարչությունը հոգ չեն տանում երիտասարդ կադրերի աճման մասին, որի հետևանքով աշխատանքում մի քանի անգամ տապալվածները դարձյալ առաջադրվում են բրիգադավար կամ ֆերմայի վարիչ: Յ. Ավետիսյանը մի քանի տարի առաջ եղել է ֆերմայի վարիչ և բրիգադավար. նա աշխատանքում իրեն չի արդարացրել, բայց նորից նշանակվել է ֆերմայի վարիչ: Նրա ղեկավարած ֆերման լավ ցուցանիշներ չունի:

Նույն կոլտնտեսության վարչությունը դաշտավարական բրիգադայի երկու բրիգադավարի ազատել էր իրենց պարտականություններից՝ աշխատանքները չգլխավորելու համար: Նրանց փոխարեն բրիգադավարներ էին նշանակվել երիտասարդ կոլտնտեսականներից: Բայց արտելի վարչությունը և պարտկազմակերպությունը մոռացել էին հիմնականը՝ նրանց հետ տարվող աշխատանքը: Եվ արդյունքը եղավ այն, որ շուտով այդ երիտասարդ բրիգադավարները հեռացվեցին աշխատանքից:

Կադրերի ընտրության ասպարեզում որոշակի գործ կատարվեց Մեղրաձորի կոլտնտեսությունում:

Այստեղ կոլտնտեսության նախագահ ընտրվեց Լ. Գալստյանը, որը կազմակերպական լավ ունակություններ ունենալու հետ մեկտեղ նորի, առաջավորի ջերմ պաշտպան է: Նրա նախաձեռնությամբ մեքենայացվել են անասնապահական ֆերմաների աշխատատար պրոցեսները: Կոլտնտեսության նախագահը հետևողական աշխատանք է կատարում հանրային հոտի մայրական կազմն ավելացնելու, անասունների ստերջությունը վերացնելու և մթերատվությունը բարձրացնելու ուղղությամբ: Այդ նպատակով ֆերմայում լայնորեն կիրառվում է կովերի ու ոչխարների արհեստական սերմնավորումը, արու ոչխարների ամորձատումը՝ պրոֆեսոր Ա. Բայբուրդյանի մեթոդով:

Լ. Գալստյանը միաժամանակ մեծ ուշադրություն է նվիրում կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման գործին: Այդ նպատակով, որպես կանոն, շարահերկ կուլտուրաների մշակությունը կատարվում է անհատական գործավարձով, տնտեսության բոլոր ճյուղերում աշխատողների համար սահմանված է աշխատանքի լրացուցիչ վարձատրություն:

Այստեղ գործը միայն կոլտնտեսության նախագահի ընտրությամբ չվերջացավ: Վերանայվեց և ուժեղացվեց դաշտավարական բրիգադների ու անասնապահական ֆերմաների վարիչների կազմը:

Այժմ ցույց տանք, թե կադրերի ճիշտ ընտրության շնորհիվ ինչպես է ամրապնդվում Մեղրաձոր գյուղի կոլտնտեսության էկոնոմիկան: Անցյալ



տարվա 10 ամսում գյուղատնտեսական արտելը կատարեց կաթի արտադրության տարեկան պլանը. նախատեսված 4926-ի դիմաց ստացավ 5260 ցենտներ կաթ: Նկատելի կերպով ավելացել է մսի, բրդի, ձվի արտադրությունը: Չնայած անբարենպաստ եղանակներին, կոլտնտեսությունն աճեցրեց հացահատիկի, ծխախոտի, կարտոֆիլի, կաղամբի լավ բերք: Գյուղատնտեսական արտելը գերակատարեց նաև խոտի կուտակման պլանը: Այս ամենի շնորհիվ տնտեսության դրամական եկամուտներն ավելացան մոտ 2 անգամ:

Հողակլիմայական նույնպիսի պայմաններում է գտնվում Աղավնաձոր գյուղի կոլտնտեսությունը: Բայց այստեղ պատկերը բոլորովին այլ է: Կոլտնտեսությունը տնտեսապես հետ է մնում: Ցածր է անասնաբուծության մթերատվությունը: Պատճառն այն է, որ կոլտնտեսությունում ամրապնդված չէ աշխատանքային կարգապահությունը:

Հանքավանի կաթնաանասնապահական սովխոզը արտադրական վարչության խոշոր տնտեսություններից մեկն է: Սակայն այդ տնտեսությունը ոչ միայն շահութաբեր չէր, այլև 1962 թվականին ունեցավ 100 հազար ռուբլու վնաս: Դրա հիմնական պատճառներից մեկն այն է, որ թույլ էր տնտեսության ղեկավարությունը, ընկած էր աշխատանքային կարգապահությունը: Սովխոզում փաստորեն ծանր վիճակ էր ստեղծվել:

Պարտիական կոմիտեն արտադրական վարչության հետ միասին սովխոզն ամրապնդեց գործունյա կադրերով: Դիրեկտոր նշանակվեց արտադրական վարչության գլխավոր անասնաբույժ Ռ. Գրիգորյանը, որն իր գործունեությունն սկսեց կադրերի ընտրությունից ու տեղաբաշխումից: Նա դասավորեց արտադրական տեղամասերի ու ճյուղերի ղեկավար աշխատողների կազմը, ֆերմաների ու բրիգադների ղեկավարներ նշանակեց որակյալ, գործիմաց մարդկանց: Այդ և մյուս միջոցառումների շնորհիվ Հանքավանի սովխոզն սկսել է հասնել առաջավորների մակարդակին:

Ամեն ինչ կախված է մարդկանցից, կադրերից, տնտեսությունը վարելու նրանց կարողությունից, աշխատանքի նկատմամբ ազնիվ, բարեխիղճ վերաբերմունքից: «Տնտեսապես թույլ կոլտնտեսություններին,— ասել է Ն. Ս. Խրուշչովը,— հարկավոր է նախ և առաջ կազմակերպական օգնություն ցույց տալ, գլխավորել կադրերի ընտրությունը: Չէ որ այս կամ այն տնտեսության հետ մնալը որպես կանոն ղեկավարման ցածր մակարդակի հետևանք է: Կոլտնտեսությունն ամրապնդել կադրերով՝ ահա այն ճիշտ ուղին, որով պետք է ընթանան երկրի բոլոր կոլտնտեսությունները առաջավորների մակարդակին հասնելու համար»:

Կատարելով ընկեր Խրուշչովի ցուցումը, մեզ հաջողվեց բարելավել կոլտնտեսությունների նախագահների, դաշտավարական բրիգադների բրիգադավարների ու ֆերմաների վարիչների կազմը: Վերջին 10 ամսում 35 փորձված կոլտնտեսականներ առաջ են քաշվել որպես բրիգադավարներ ու ֆերմաների վարիչներ: Բացի այդ, կոլտնտեսային ղեկավար կադրերին օգնելու, նրանց տնտեսագիտական գիտելիքները հարստացնելու նպատակով սիստեմատիկաբար կազմակերպվում են պարապմունքներ, որտեղ քննարկվում են կոլտնտեսությունների էկոնոմիկայի, արտադրության մեջ գիտության ու առաջավոր փորձի արմատավորման, աշխատանքի կազմակերպման ու վարձատրության հարցերը:

Մեր պարտկազմակերպությունն իր գործունեության մեջ կարևոր նշանա-

կություն է տալիս գաղափարական բոլոր լծակներին և դրանք ի սպաս դնում տնտեսական խնդիրների լուծմանը։ Վերջին շրջանում առանձնահատուկ ուշադրություն է դարձվում կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավար աշխատողների տնտեսական ուսուցմանը։ Պարտլուսցանցի նոր ուսումնական տարում Աճարբեկյանի, Ջրառատի, Հրազդանի սովխոզներում և Մեղրաձորի կոլտնտեսությունում գործելու են գյուղատնտեսական համալսարան՝ ագրոտեխնիկական, զոոտեխնիկական և մեքենայացման ֆակուլտետներով, որտեղ սովորելու են ղեկավար կադրերը, արտադրության կազմակերպիչներն ու առաջավորները։

*Բերված փաստերը ցույց են տալիս, թե ինչպես կադրերի ճիշտ ընտրության ու դաստիարակության գործի լավագույն կազմակերպման շնորհիվ առավել արդյունավետ են օգտագործվում եղած հնարավորությունները, բարձրանում է տնտեսությունների էկոնոմիկան, ետ մնացողները հավասարվում են առաջավորներին։*

Սակայն չի կարելի ասել, որ մեր վարչության բոլոր կոլտնտեսությունները և արտադրական բոլոր ճյուղերը ամրապնդված են գործիմաց ու փորձված կադրերով, արտադրության հմուտ կազմակերպիչներով։ Վերջերս ՀԿՊ Կենտկոմի նախագահությունը քննարկեց Սևանի արտադրական վարչության կոլտնտեսություններում ու սովխոզներում ղեկավար կադրերի ընտրության, տեղաբաշխման ու նրանց հետ տարվող աշխատանքի հարցերը։ Կենտկոմի նախագահությունը միանգամայն տեղին նշեց, որ չնայած գյուղատնտեսության ղեկավար կադրերի ընտրության ու տեղաբաշխման գործում ձեռք բերված հաջողություններին, դեռևս կան լուրջ թերություններ։

Կանենք ինչ հարկավոր է՝ առաջիկայում վերացնելու գյուղատնտեսության զարգացմանը խանգարող պատճառները և ետ մնացողներին հասցնելու առաջավորներին։

Ռ. ՋԱՔՈՅԱՆ
ՀԿՊ Սևանի գյուղական արտադրական
պարտիական կոմիտեի քարտուղար

## ԱՇԽԱՏԵԼ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԲԱՐ

Արդեն մեկ տարի է, ինչ տեսուչ-պարտկազմակերպիչ եմ ՀԿՊ Աշտարակի գյուղական արտադրական կոմիտեում. ստեղծագործական որոնումների ու բազմապիսի մտորումների ժամանակաշրջան էր այդ, որի ընթացքում ձգտել եմ ապահովել իմ սպասարկած կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի բարձրացումը, գյուղատնտեսական մթերքների արտադրության հետևողական աճը։ Ինձ միշտ մտահոգել է մի հարց՝ ինչպես գործել, ինչ մեթոդներով ու ձևերով լուծել այդ խնդիրները։ Ահա այդ մասին է, որ ուզում եմ պատմել, արտահայտել իմ կարծիքը։

Տեսուչ-պարտկազմակերպիչներս հիմնականում ազատված ենք ապարատի ընթացիկ գործերից. այդ մեզ հնարավորություն է ընձեռում ավելի շատ ու երկար ժամանակով լինելու սկզբնական պարտիական կազմակերպություններում, խորանալու արտադրության հարցերում, ավելի հաճախ լինելու կոմունիստների, աշխատավորների մոտ։



Մոտիկից ծանոթանալով, օրինակ, Կարբիի կոլտնտեսության էկոնոմիկային, պարզվեց, որ այստեղ բրիգադներում ու ֆերմաներում վատ է կազմակերպված աշխատանքը, ճիշտ չեն ընտրված ու տեղաբաշխված ղեկավար կադրերը։ Վիճակը հատկապես անմխիթարական էր անասնաբուծության բնագավառում. օրինակ, ոչխարաբուծական ֆերմայում ցածր էր մթերատվությունը, մեծ՝ անասունների անկումները, նկատվում էին չարաշահումներ։

Տեղի ընկերների հետ խորհրդակցելուց հետո վերոհիշյալ հարցը հանգամանորեն քննության առնվեց պարտիական կազմակերպության ընդհանուր ժողովում և իրականացվեցին մի շարք կոնկրետ միջոցառումներ՝ միացվեցին անասնապահական երկու ֆերմաները և խոշորացված ֆերմայի վարիչ նշանակվեց բազմամյա փորձ ունեցող կոմունիստ Ս. Ավետիսյանը։ Աշխատանքից ազատվեցին նաև 1-ին և 2-րդ բրիգադների բրիգադավարները, նրանց փոխարեն առաջադրվեցին կոլտնտեսականների համակրանքը վայելող լավագույն օղակավարներ։ Վերանայվեց աշխատանքի վարձատրության մինչ այդ գործող կարգը, նախատեսվեցին նոր արտադրական նորմաներ, որոնք բարձրացնում են անձնական շահագրգռվածությունը։ Կոմունիստներից աշխատանքի ուղարկվեցին կոլտնտեսության ֆերման։ Անասնապահության բնագավառում եղած չարաշահումները կանխելու նպատակով վերանայվեց պարտիական-պետական վերահսկողության խմբի կազմը, ընտրվեց խմբի նոր նախագահ։ Կոլտնտեսությունում ձեռնարկվեցին միջոցառումներ գյուղատնտեսական տեխնիկայի պահպանման ու օգտագործման վիճակը բարելավելու նպատակով։

Կազմակերպական միջոցառումների հետ մեկտեղ ուժեղացվեց քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, ավելի ներգործուն դարձավ ագիտացիան ու պրոպագանդան։ Այդ ամենի շնորհիվ հանրային աշխատանքին սկսեցին մասնակցել բոլոր կոլտնտեսականները, ֆերմայում վերջնականապես կանխվեցին անկումները և, որ գլխավորն է, զգալիորեն ավելացավ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Եթե 1962 թվականին մեկ հեկտարից ստացվել էր 9,8 ցենտներ հացահատիկ և 10,1 ցենտներ ծխախոտ, ապա անցյալ տարի հավաքվեց 16,9 ցենտներ հացահատիկ և 19 ցենտներ ծխախոտ. մոտ մեկ ու կես անգամ ավելացավ մեկ կովի կաթնատվությունը, 2,5 անգամ՝ ձվի համախառն արտադրանքը, իսկ 1961 թվականի արդյունքները արտադրության բոլոր ճյուղերում գերազանցվեցին 2—3 անգամ։

Թող այնպիսի տպավորություն չստեղծվի, որ այդ ամենը ձեռք է բերվել առանց դժվարությունների ու բախումների, հեշտ, միանգամից։ Տնտեսության ղեկավարներն ու արտելի կոմունիստները մեծ ջանքեր գործադրեցին, մինչև կարողացան համոզել մարդկանց, նրանց տրամադրել աշխատելու նոր ձևով, կազմակերպեցին կոլտնտեսության աշխատողներին՝ շտկելու գործերի ընթացքը։

Ամիսներ շարունակ իմ ուշադրության կենտրոնում է եղել Կարբիի կոլտնտեսությունը։ Այս կոլտնտեսությունը գյուղի հյուսիսային մասում ուներ 40—50 հեկտար հողատարածություն՝ բավականին արգավանդ, բայց մեքենայական մշակման համար ոչ հարմար։ Երբ պարտկազմակերպությունը քննարկում էր մշակվող հողատարածությունների ընդարձակման հարցը, որոշվեց այդ հողակտորը մաքրել քարերից և օգտագործել։ Գործի կպան բոլոր կոմունիստները, և շուտով Կարբիում պլանով նախատեսված 15-ի դիմաց քարերից

մաքրվեց 25 հեկտարը. 3 հեկտարի վրա էլ վերացվեցին միջնակները։ Երբ գործը լավ է կազմակերպվում, աշխատանքի են դուրս գալիս հեղինակավոր մարդիկ, կոմունիստները, միշտ էլ նրանց հետևում են նորանոր ուժեր, բարձրանում է աշխատողների պատասխանատվությունը, աշխատանքի որակն ու արտադրողականությունը, շահում է տնտեսությունն ամբողջությամբ։

Ահա մի այլ օրինակ։ Մի քանի տարի է, ինչ Ուջան գյուղի կոլտնտեսությունում ծխախոտի մշակությունը կատարվում է անհատական գործավարձով, որը լավ արդյունք է տալիս։ Այս հարցի շուրջը Զորափի կոլտնտեսության նախագահի և պարտկազմակերպության քարտուղարի հետ խորհրդակցելով, նպատակահարմար գտանք հարցը քննարկել պարտկազմակերպությունում և կոլտնտեսության վարչությունում։ Չնայած որոշ ընկերների թերահավատությանը, որոշվեց արմատավորել ուջանցիների փորձը։ Այդ փորձը կիրառելիս աշխատող ձեռքերի խիստ պակաս զգացվեց։ Արտադրական վարչության տեսուչ-կազմակերպիչ Գ. Խաչատրյանի հետ միասին ուսումնասիրեցինք ստեղծված վիճակը. գտնվեցին աշխատող ձեռքեր առանձին կոմունիստների, մասնավորապես տնտեսության ղեկավարների ընտանիքների անդամներից, որոնք ներգրավվեցին աշխատանքի. դրանով աշխատող ձեռքերի պակասը վերացվեց։

Ծխախոտագործության բնագավառում կիրառվող անհատական գործավարձը ո՛չ միայն հեշտացրեց գործը, այլև բարձրացրեց աշխատողների նյութական շահագրգռվածությունը։ Արդյունքը եղավ այն, որ 1962 թ. յուրաքանչյուր հեկտարից ստացված 8 ցենտների դիմաց անցյալ տարի ստացվեց մոտ 21 ցենտներ ծխախոտի բերք։

1963 թվականի օգոստոսին մեր պարտիական կոմիտեի պլենումը քննարկեց մեքենահարմար հողատարածությունների ընդարձակման հարցը։ Այդ ուղղությամբ մեծ դժվարություններ կային Բյուրականում և Օշականում։

Բյուրականը լեռնային գյուղ է. նրա ամբողջ հողատարածությունը մեքենահարմար չէր։ Կոլտնտեսությունը պլանավորեց 1963 թվականին 150 հեկտար հողատարածություն մաքրել և դարձնել մեքենահարմար։ Տնտեսության ղեկավարների հետ միասին ամենից առաջ ձեռք բերեցինք քար մաքրող մեքենաներ, ապա յուրաքանչյուր բրիգադայի ամրացվեցին 3 կոմունիստներ, որոնք բրիգադավարների հետ միասին քարհավաքին մասնակից դարձրին ողջ աշխատավորությանը։ Անցյալ տարի աշնանը կոլտնտեսությունը կարողացավ 150 հեկտարի վրա ցանք կատարել տրակտորով։ Այս տարի առաջին անգամ Բյուրականի դաշտերում երևաց կոմբայնը։ Այս տարի կոլտնտեսությունը կշարունակի մեքենահարմար հողատարածությունների ընդարձակումը։

Կոմիտեի պլենումի որոշումը լավ կատարվեց նաև Օշականի կոլտնտեսությունում։ Այստեղ բոլորովին չօգտագործված 20 հեկտար հողատարածություն մաքրվեց քարերից ու նախապատրաստվեց խաղողի այգու համար, իսկ հացահատիկի ցանքի համար իրացվեցին 25 հեկտար նոր հողեր։

Տեսուչ-պարտկազմակերպիչը առաջին հերթին դաստիարակ է. նա կոչված է գաղափարական ներգործման միջոցներով ու կազմակերպական կոնկրետ աշխատանքով ապահովելու յուրաքանչյուր կոլտնտեսության, սովխոզի տնտեսական վերելքը, աշխատավորների մեջ պատվաստելու սեր և պատասխանատվության զգացում դեպի հանրային աշխատանքը։ Այդ առումով խիստ կարևոր է, որ պարտիական աշխատողը մշտապես շփվի նյութական բարիքներ ստեղծողների հետ։ Լինելով կոլտնտեսությունում կամ սովխոզում, հանդիպելով մարդկանց ու զրուցելով նրանց հետ, նա կարողանում է ավելի լավ ճանաչել աշխատավորին, իրազեկ լինել նրա հոգսերին, հետևաբար և՝ ազդել տնտեսության գործերի վրա։



Մասսաների շրջանում աշխատելիս անհրաժեշտ է անհատական մոտեցում ունենալ յուրաքանչյուրի նկատմամբ։ Այսպես, օրինակ, Կարբիի կոլտնտեսության զոոտեխնիկն է ընկ. Ա. Օհանյանը, որն ավարտելով ինստիտուտը, գործի անցավ հայրենի գյուղում, բայց առաջին տարվա աշխատանքը գոհացուցիչ չէր։ Ինչպես նշվեց վերևում, Կարբիում ֆերմաների վիճակը վատ էր։ Երիտասարդ մասնագետը դժվարություններից վհատվելով, ցանկանում էր հեռանալ կոլտնտեսությունից։ Համոզվելով, որ Օհանյանը անփորձ երիտասարդ է և օգնության կարիք ունի, մի քանի անգամ զրուցեցի նրա հետ, նշեցի մարդկանց հետ աշխատելու նրա սխալ մեթոդները, միաժամանակ նշեցի նաև նրա լավ կողմերը, խրախուսեցի դրականը։ Զրուցեցի նաև Օհանյանի կնոջ հետ, խնդրեցի նրան օգնել ամուսնուն աշխատանքում։ Կոլտնտեսության վարչության հետ միասին աշխատեցինք բավարարել անասնապահական գործի բարելավման նպատակով նրա առաջադրած պահանջները։ Այդ ամենի շնորհիվ երիտասարդ մասնագետը փոխեց իր վերաբերմունքը գործի հանդեպ, դարձավ սրտացավ աշխատող և հասավ լավ արդյունքի։ Գնահատելով նրա բարեխիղճ աշխատանքը՝ պարտիական կազմակերպությունը Օհանյանին ընդունեց ՍՄԿՊ շարքերը որպես անդամության թեկնածու։

Խոտհնձի եռուն օրերն էին։ Զորափի կոլտնտեսության 2-րդ բրիգադայի դաշտում հանգստի ժամին կոլտնտեսականների հետ զրույցի բռնվեցի։ Խոսում էինք հողագործի պատվի մասին։ Հուզող հարց էր։ Զրույցը հետզհետե բորբոքվեց. արգահատանքով խոսելով կոլտնտեսության հաշվին ապրողների մասին, նրանք պահանջեցին կարգի հրավիրել և խիստ պատժել այն մարդկանց, որոնք չեն մասնակցում դաշտային աշխատանքներին։ Ես հասել էի իմ նպատակին։ Կոլտնտեսության ղեկավարների հետ միասին զբաղվեցինք այդ հարցով։ Հորդորանքով և համոզումով բոլոր աշխատունակ երիտասարդները շուտով դուրս եկան խոտհնձի։ Նրանց տրվեց այնպիսի տեղամաս, որ հնձում էին տարեց կոլտնտեսականները։ Մեծահասակների օրինակով նրանք սկսեցին լավ աշխատել. այդ եռուն օրերին գյուղում ստեղծվեց մոբիլիզացիոն վիճակ, հունձը ժամանակին արվեց։

Հաշվի առնելով մեր կյանքում տեղի ունեցած մեծ տեղաշարժերն ու մարդկանց աճող պահանջները, դաստիարակչական աշխատանքն անհրաժեշտ է կազմակերպել ավելի հետաքրքրական ու արդյունավետ ձևերով։

Այդ առումով գովելի են աշխատանքի մարդկանց մեծարման երեկոները։ Այսպես՝ Եղվարդում կազմակերպվեց երեկո՝ նվիրված սովխոզի բազմավաստակ բանվոր Գրիգոր Ղազարյանի ծննդյան 70-ամյակին։ Այդ կատարյալ տոնախմբություն էր, ազնիվ աշխատանքի գովք։ Նորակառույց կուլտուրայի տան դահլիճը լեփ-լեցուն էր, նախագահությունում էր հոբելյարը՝ շրջապատված իր աշխատանքային ընկերներով, սովխոզի պարտիական կազմակերպության, Աշտարակի պարտիական կոմիտեի ներկայացուցիչներով։ Ընկ. Ղազարյանի անբասիր աշխատանքի մասին խոսեցին շատ բանվորներ ու բանվորուհիներ, ուրախանալով, որ այսպես փառաբանվում ու մեծարվում է շարքային հողագործը։

Աշխատավորության հետ տարվող մասսայական-բացատրական աշխա-

տանքի ընթացքում հանդես են գալիս դաստիարակչական աշխատանքի նոր, ավելի հետաքրքրական ձևեր։ Անցյալ տարվա ամռանը, հաճախ լինելով Լուսակերտի սովխոզի բանվորների մոտ, զգացի, որ նրանցից շատերը ծանոթ չեն այգեգործությանը։ Նրանց ագրոնոմիական որոշ գիտելիքներ տալու նպատակով լավ կլիներ աշնան և ձմռան ամիսներին սովխոզում ստեղծել այգեգործական դասընթաց։ Պարտիական կոմիտեում կազմեցինք դասընթացի պլանը և այն սկսեց իր գործունեությունը։ Պարտիական կոմիտեի գաղափարական բաժինը, հաշվի առնելով, որ այդպիսի ուսուցման կարիք զգացվում է նաև մեր վարչության մյուս նորաստեղծ սովխոզներում, այդպիսի դասընթացներ կազմակերպեց նաև վարչության վեց այլ սովխոզներում։

Պարտիան սովորեցնում է, որ մշտական հոգատարություն պետք է ցուցաբերել երիտասարդության դաստիարակության նկատմամբ։ Կյանքը ցույց է տալիս, որ այս կարևոր գործը չի կարելի թողնել միայն կոմերիտական կազմակերպության տնօրինությանը։ Օշականում կային մեծ թվով երիտասարդներ, որոնց մի մասի հետ բոլորովին աշխատանք չէր տարվում։ Սկզբնական պարտկազմակերպության քարտուղարի հետ եկանք այն եզրակացության, որ Օշականում պետք է ստեղծել երիտասարդական լեկտորիում։ Սակայն սկզբում դժվար էր երիտասարդությանը հավաքել։ Դասախոսությունները հրապուրիչ դարձնելու նպատակով որոշեցինք հրավիրել ռեսպուբլիկայի լավագույն դասախոսներին, նրանց հետ միասին ընտրեցինք երիտասարդությանը հուզող թեմաներ, աշխատեցինք դասախոսությունից հետո տալ գեղարվեստական մաս։ Բացի տեղի խմբից, գեղարվեստական ինքնագործ խումբ հրավիրվեց նաև Երևանից։ Հաճախ ցուցադրվում էր թեմային վերաբերող գեղարվեստական կինոնկար։ Հաջողվեց հասնել այն բանին, որ դասախոսություններին սկսեցին հաճախել 200—300 մարդ։

Օշականի օրինակով երիտասարդական լեկտորիումներ կազմակերպվեցին նաև Աշտարակում, Ոսկեվազում, Եղվարդում և այլ գյուղերում։

Մի քանի խոսք մեր թերությունների մասին։ Մենք դեռևս քիչ գործ ենք կատարում առաջավոր փորձի ուսումնասիրման ու տարածման ուղղությամբ։ Դա խիստ կարևոր գործ է և ունի դաստիարակչական մեծ նշանակություն։ Դրական օրինակով մարդկանց դաստիարակելը մեր առաջնահերթ խնդիրն է։

Մարդկանց հրամայելը հեշտ է, համոզելը՝ դժվար։ Պարտիական աշխատողը պետք է կատարելապես տիրապետի համոզման՝ ներգործման մեթոդին, շաղկապելով այն պահանջկոտության հետ։ Որպեսզի նրա պահանջը կատարվի, կատարողը պետք է համոզված լինի գործի արդարացիության մեջ։ Բայց քիչ է միայն համոզելը։ Կան մարդիկ, հատկապես գյուղական ղեկավար աշխատողներից, որոնք համառում են իրենց սխալի վրա. այդպիսիներին նույնպես պետք է դաստիարակել, համոզել, իսկ համառողներին՝ պատժել։

Չնայած ստեղծված բարենպաստ պայմաններին, պարտիական կոմիտեում տեսուչ-պարտկազմակերպիչը երբեմն շատ ժամանակ է կորցնում զանազան տեղեկություններ հավաքելու, տեղեկանքներ ու ինֆորմացիաներ գրելու վրա, ժամերով նստում է հեռախոսների մոտ։ Մեզ թվում է, մինիմումի պետք է հասցնել այդ ամենը, օգնել տեսուչ-պարտկազմակերպիչներին՝ զբաղվելու կենդանի, պրակտիկ գործով։

Անցած մեկ տարում տեսուչ-պարտկազմակերպիչները բազմաթիվ հարցեր են բարձրացրել, որոնք ստացել են իրենց լուծումը։ Այսպես, օրինակ՝ Օշա-



կանում, տեղի ընկերների հետ կոլտնտեսության զարգացման հեռանկարային հնարավորություններն ուսումնասիրելիս, եկանք այն եզրակացության, որ այստեղ պետք է զարկ տալ հատկապես այգեգործությանը։ Դրան խոչընդոտում էր ոչխարաբուծությունը։ Աշտարակի պարտկոմիտեն և արտադրական վարչությունը քննարկեցին այդ հարցը և որոշում կայացրին Օշականի ոչխարաբուծական ֆերման լիկվիդացնելու մասին։ Դրա փոխարեն Օշականի կոլտնտեսությունում ավելացրին կովերի գլխաքանակը։

Սակայն դրանով դեռևս հարցը չէր լուծվում։ Կոլտնտեսությունը վերացրեց ոչխարաբուծությունը, սակայն կոլտնտեսականները դեռևս ունեին ոչխարներ, որոնց համար որպես արոտավայրեր մնում էին կոլտնտեսության այգիները։ Դրա համար անհրաժեշտ եղավ այդ ուղղությամբ բացատրական աշխատանք կատարել նաև կոլտնտեսականների շրջանում, որոնք նույնպես համոզվեցին, որ Օշականում ոչխարաբուծությունն անհամատեղելի է այգեգործության հետ։ Կոլտնտեսության ընդհանուր ժողովում միաձայն որոշեցին այլևս ոչխար չպահել։

Մենք գործում ենք արտադրական վարչության տեսուչ-կազմակերպիչների հետ։ Այդ դեպքում աշխատանքներն ավելի լավ են ընթանում։ Լինելով գյուղատնտեսության մասնագետներ, նրանք մեզ օգնում են մասնագիտական հարցերում։ Միացյալ ուժերով օգնում ենք տնտեսության ղեկավարությանը և ներքին օղակների աշխատողներին՝ չօգտագործված ռեզերվները հայտնաբերելու և գործադրելու, աշխատանքի կազմակերպումը բարելավելու, առաջադիմական ձևերն ու մեթոդները արմատավորելու, պարտիայի ու կառավարության առաջադրանքներն անթերի կատարելու։

Անհրաժեշտ է հոգ տանել նաև տեսուչ-պարտկազմակերպիչների ուսուցման մասին, տեսական ու մեթոդական օգնություն ցույց տալ նրանց, ընդհանրացնել դրական փորձը։

Առաջին հերթին պետք է մտածել, հոգ տանել նրանց գիտելիքների հարստացման մասին։ Չնայած ինքս երկու տարի ղեկավարել եմ գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող տեսական սեմինարը և միշտ աշխատել եմ գյուղում, բայց ամեն քայլափոխում զգում եմ ագրոնոմիական գիտելիքների պակաս։ Որպեսզի օգնեմ մարդկանց լավ աշխատելու և ճիշտ վարելու տնտեսությունը, նախ պետք է ինքս սովորեմ։ Բայց քիչ է միայն գրքից սովորելը, պրակտիկան լավագույն դպրոցն է։ Այդ իմաստով ինձ մեծ չափով օգնեց Լուսակերտի № 36 սովխոզի, Զորափի կոլտնտեսության և այլ տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների, ինչպես նաև արտադրության առաջավորների հետ ունեցած մշտական շփումը։

Լավ կլիներ, որ պարտիական կոմիտեները մտածեին նաև պարտիական աշխատողների կուլտուրական մակարդակի բարձրացման մասին, հաճախ նրանց համար կազմակերպեին գեղարվեստական ստեղծագործությունների, ներկայացումների, կինոների կոլեկտիվ դիտումներ ու քննարկումներ։ Թերևս հարկ լինի տեսուչ-պարտկազմակերպիչների, հրահանգիչների համար կազմակերպել եռամսյա կամ միամսյա դասընթացներ, նրանց աշխատանքի փորձի փոխանակում և այլն։

Տեսուչ-պարտկազմակերպիչը պարտիական ապարատում նոր միավոր է, նրա աշխատանքը գրեթե նույնացված է հրահանգչի գործունեության հետ, ինչպես նրանց իրավունքները, այնպես էլ պարտականությունները հավասար են.

տարբերությունը միայն այն է, որ հրահանգչի աշխատանքի ոլորտն ընդգրկում է երկու-երեք անգամ շատ պարտիական կազմակերպություններ, իսկ տեսուչ-պարտկազմակերպիչը սպասարկում է չորս-հինգ արտադրական խոշոր կազմակերպությունների։

Լավ կլիներ որոշ տարբերություն դրվեր նրանց պարտականությունների միջև։ Ինձ թվում է, հարկ չկա, որ տեսուչները մշտապես սպասարկեն որոշակի թվով կազմակերպությունների. նրանք պետք է մեկ կամ երկու ամսով բազմակողմանի օգնեն, սպասարկեն այնպիսի կազմակերպության, որտեղ գործերը լավ չեն։

Անհրաժեշտ է օգնել պարտիական կոմիտեի տեսուչ-կազմակերպչին, խրախուսել, առաջավոր տեսուչների փորձով սովորեցնել նրան։

Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
ՀԿՊ Աշտարակի պարտիական կոմիտեի
տեսուչ-պարտկազմակերպիչ

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԻՆՖՈՐՄԱՑԻԱՆ

Մեր պարտիան հազարավոր թելերով կապված է ժողովրդական լայն մասսաների հետ։ Այդ սերտ կապը հնարավորություն է տալիս ներգործելու հասարակության բոլոր անդամների վրա, միշտ հաշվի առնելու կոնկրետ պայմաններն ու առանձնահատկությունները, ժամանակին արձագանքելու կյանքի հրատապ երևույթներին։

Առանց հանգամանորեն իմանալու, թե ինչ է կատարվում տեղերում, առանց ինֆորմացիայի լավ դրվածքի՝ ինչպես ներքևից վերև, այնպես էլ վերևից ներքև, պարտիական կազմակերպությունների ղեկավարներն ի վիճակի չեն լինի օպերատիվ ներազդելու գործերի ընթացքի վրա, ժամանակին օգնելու կազմակերպություններին՝ թերությունները վերացնելու։ Համեմատելով պարտիական կազմակերպությունների գործունեությունը օրկեստրի հետ, Վ. Ի. Լենինն ընդգծել է, որ պարտիական կենտրոնը կարող է հաջողությամբ ղեկավարել այդ օրկեստրը միայն այն դեպքում, երբ «ճշտապես հայտնի լինի թե ով, որտեղ և որ ջութակն է վարում, որտեղ և ինչպես որ գործիքով է սովորել նվագել և սովորում է, ով, որտեղ և ինչու է սխալ նվագում (երբ երաժշտությունն սկսում է ականջ ծակել) և դիսոնանսը շտկելու համար ում, ինչպես և ուր պետք է տեղափոխել և այլն»։

Հստակ ու պատշաճ ինֆորմացիան հնարավորություն է ընձեռում պարտիական օրգաններին՝ ընդլայնելու իրենց տեսադաշտը և ավելի հաջող մոբիլիզացնելու մասսաներին։

Գոյություն ունեն պարտիական ինֆորմացիայի բազմապիսի ձևեր ու աղբյուրներ։ Նրանցից կարևորն ու առավել արդյունավետը պարտիական աշխատողների մշտական շփումն ու կապն է մասսաների հետ։ Ինֆորմացիայի ոչ մի աղբյուր չի կարող տեղերում գործերի վիճակի մասին այնպիսի ճշմարտացի ու բազմակողմանի պատկերացում տալ, ինչպիսին պարտիական ղեկավար աշխատողի անձնական կապը, նրա ամենօրյա շփումը կոմունիստների ու անպարտիականների, աշխատավորության լայն խավերի հետ։ Գործարանային ցեխում, կոլտնտեսային դաշտում, շինարարական հրապարակում, ժողովներում և մարդկանց հետ ունեցած անձնական զրույցների ժամանակ պարտիական աշխատողը հնարավորություն է ունենում ավելի լավ պատկերացում կազմելու աշխատավորների տրամադրությունների, նրանց հուզող հարցերի, պարտիական, պետական ու հասարակական կազմակերպությունների գործունեության մասին։

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների պրակտիկայում կարևոր տեղ են գրավում պարտիական ինֆորմացիայի այնպիսի ձևեր ու աղբյուրներ, ինչպիսիք են՝ աշխատավորների նամակներն ու բողոքները, առաջարկություններն ու դիտողությունները, պարտիական այնպիսի փաստաթղթեր, ինչպիսիք են՝ տեղեկանքներն ու ամփոփագրերը, որոշումներն ու արձանագրությունները, մամուլի ելույթները, ռադիոհաղորդումները և այլն։

Անկախ այն բանից, թե ինֆորմացիայի համար ի՛նչ ձևեր ու աղբյուրներ են օգտագործված կամ ի՛նչ հարցի է այն նվիրված, պարտիական ինֆորմացիայի հիմքում պետք է դրվեն իրական փաստերն ու երևույթները։ Միաժամանակ չպետք է մոռանալ, որ վերադաս պարտիական օրգանի համար սոսկ փաստերի ու առաջարկությունների հաղորդումը լիարժեք ինֆորմացիա լինել չի կարող։

Բերենք մեր միտքը հաստատող հետևյալ փաստը։ Հաշվետու-ընտրական ժողովների ընթացքի մասին Կիրովականից ստացված ինֆորմացիայում ասված է. «16 սկզբնական պարտիական կազմակերպություններում հաշվառման մեջ եղած 340 կոմունիստներից ժողովներին մասնակցել են 278 հոգի, բացակայել են՝ հարգելի պատճառով՝ 61, անհարգելի՝ 1 կոմունիստ»։

Վերոհիշյալ ինֆորմացիան լրիվ պատկերացում չի տալիս պարտիական կազմակերպությունների կյանքի այդ կարևոր իրադարձության ընթացքի մասին։ Ինֆորմացիայում ասված է. «Ժողովներից բացակայել են 62 մարդ, կամ հաշվառման մեջ եղած կոմունիստների 18,2 տոկոսը»։ Այս թիվը, ինչպես կարելի է տեսնել, այնքան էլ փոքր չէ, նկատի ունենալով նաև այն, որ առանձին կազմակերպություններում բացակայող կոմունիստների թիվը, անշուշտ, միջինից բարձր է։ Որո՞նք են այդ կազմակերպությունները, ի՞նչն է դրա պատճառը։ Հարցեր, որոնք մնում են անպատասխան։

Այնուհետև կարդում ենք. «ըստ էության արտահայտվելու համար ցուցակագրվել էին 103 կոմունիստներ, բոլորն էլ ելույթ են ունեցել»։ Այս ամենից չենք իմանում, թե ինչպիսի՞ն է եղել կոմունիստների ակտիվությունը, արդյոք ելույթ ունեցողները նույն մարդիկ, այսպես կոչված՝ «հաստիքային հռետորները» չե՞ն, ինչպիսի՞ միջոցառումներ են իրականացվել հաշվետու զեկուցումների քննարկմանը բոլոր կոմունիստների ակտիվ մասնակցությունն ապահովելու համար։ Եվ, որ գլխավորն է, տվյալ ինֆորմացիայից չի երևում, թե հաշվետու ժամանակաշրջանում ինչպիսի կարևոր տեղաշարժեր են եղել քաղաքի սկզբնական պարտիական կազմակերպությունների կյանքում, նրանք ինչպե՞ս են կենսագործում պարտիայի դիրեկտիվները, ինչի՛ համար են կոմունիստները քննադատել իրենց պարտբյուրոյին, քաղկոմին և կոնկրետ ի՛նչ քայլեր են կատարում նշված թերությունները վերացնելու համար և այլն։

Վերոհիշյալ ինֆորմացիայում չկա գլխավորը՝ փաստերի, երևույթների և իրադարձությունների բանիմաց ու բազմակողմանի վերլուծությունը, առանց որի հնարավոր չէ հանգել ճիշտ եզրակացության և, հետևապես, ունենալ

հատակ ու օբյեկտիվ պատկերացում տվյալ պարտիական կազմակերպության գործունեության մասին։

Աշտարակի գյուղական արտադրական պարտկոմից ստացված ծավալուն ինֆորմացիայում բազմաթիվ թվերի ու փաստերի շարադրումից հետո կարդում ենք. «Հաշվետու-ընտրական ժողովներ անցկացրած 24 պարտիական կազմակերպություններից 23-ի աշխատանքին տրվել է բավարար գնահատական, մեկ պարտիական կազմակերպության (Օշականի կոլտնտեսային պարտկազմակերպության) բյուրոյի աշխատանքին տրվել է անբավարար գնահատական»։

Հայտնի չէ, թե ինչու պարտկոմիտեի աշխատողները վերադաս պարտիական օրգանին հարկ չեն համարել հակիրճ նկարագրել նշված կազմակերպությունում գոյություն ունեցող վիճակը, ցույց տալ այն պատճառները, թե ինչու վարչության այս խոշոր տնտեսության պարտիական կազմակերպությունը և նրա բյուրոն վատ են աշխատել, մանավանդ որ Օշականի սկզբնական պարտիական կազմակերպության բյուրոյի աշխատանքը երկրորդ տարին է, որ գնահատվում է անբավարար։

Պարտիական ինֆորմացիայում բերվող փաստերն ու օրինակները բացարձակ ստույգ պետք է լինեն։ Մինչև վերջ չստուգված, թեկուզ շատ չնչին չափով հավատ չներշնչող փաստերը, ինչքան էլ հրապուրիչ լինեն դրանք, չպետք է օգտագործվեն ինֆորմացիայում, քանի որ կարող են թյուրիմացության մեջ գցել վերադաս պարտիական օրգաններին, տեղիք տալ լուրջ սխալների։ Մինչդեռ պրակտիկայում ինֆորմացիային ներկայացվող այս կարևորագույն պահանջը երբեմն անտեսվում է՝ փաստերի նկատմամբ ցուցաբերվող ոչ լուրջ, մակերեսային վերաբերմունքի, տեղերում իրերի դրությանը ոչ քաջատեղյակ լինելու պատճառով։

Այդ մասին է վկայում հետևյալ փաստը։ Մարտունուց նախորդ հաշվետու-ընտրական ժողովների արդյունքների մասին ստացված մեծածավալ ինֆորմացիայում կարդում ենք. «Խստորեն պահպանվել են պարտիական օրգանների և նրանց քարտուղարների կազմը նորացնելու մասին պարտիայի նոր Կանոնադրության պահանջները։ Ժողովների անցկացման ժամանակ թույլ չի տրվել կանոնադրության ոչ մի խախտում»։ Եվ ահա այդ ինֆորմացիան գրելուց մոտ յոթ ամիս անց, կոմունիստների ահազանգումից պարտիական կոմիտեին հայտնի է դառնում, որ Զոլաքարի կոլտնտեսային սկզբնական պարտկազմակերպությունում հաշվետու-ընտրական ժողովն անցկացնելիս թույլ է տրվել ՍՄԿՊ Կանոնադրության կոպիտ խախտում, որի պատճառով պարտկոմը, հարկադրված, բեկանեց վերոհիշյալ պարտկազմակերպության ընտրությունների արդյունքները. տեղի ունեցան նոր ընտրություններ։

Նման բան տեղի չէր ունենա, եթե պարտիական կոմիտեն ճշգրիտ ինֆորմացիա ունենար տվյալ պարտիական կազմակերպության գործերի մասին։ Բանն այն է, որ այստեղ կազմակերպության ժողովը նախապատրաստվել և անց էր կացվել ցածր մակարդակով, պարտիական կոմիտեն էլ ճիշտ չէր վարվել, նշված փաստի մասին անմիջապես չհայտնելով վերադաս պարտիական օրգանին։

Պարտիական ինֆորմացիան պետք է լինի ներգործուն. ո՛չ միայն հաղորդի գործերի իրական վիճակի մասին, այլև օգնի շտկելու և բարելավելու դրությունը։ Իսկ դրան հնարավոր է հասնել այն դեպքում, երբ պարտիական աշխատողները լրիվ պատկերացում ունենան առաջ քաշված հարցերի մասին և համոզված լինեն, որ տվյալ մոմենտում հասունացել է դրանց լուծումը։



Որոշ պարտիական աշխատողներ այսպես են դատում. Ի՞նչ հարկ կա վերադաս պարտիական օրգանին ինֆորմացիա ուղարկել, երբ նրանք քաղկոմներից, շրջկոմներից ու պարտկոմներից սիստեմատիկաբար ստանում են բյուրոների, պլենումների, ակտիվի ժողովների արձանագրությունները կամ անցկացվող միջոցառմանը անմիջականորեն մասնակցում են ղեկավար պարտիական օրգանի ներկայացուցիչները։

Արձանագրությունները, թերևս, որոշ պատկերացում տալիս են տեղերում գործերի վիճակի մասին։ Բայց ոչ մի արձանագրություն չի կարող բազմակողմանի ընդգրկել այս կամ այն կոնկրետ հարցը։ Արձանագրությունում փաստերը շարադրվում են առանց վերլուծման ու ամփոփման։ Իսկ վերադաս պարտիական օրգանի ներկայացուցիչը ներկա լինելով, ասենք, պարտիական կոմիտեի պլենումին, ակտիվի ժողովին կամ այլ միջոցառման, ի վիճակի չէ խորանալ որևէ հարցի մեջ այնպես, ինչպես դա կարող է անել տվյալ պարտիական կոմիտեն։ Վերջապես, ինֆորմացիան արտահայտում է տվյալ քաղկոմի, շրջկոմի, պարտկոմի կարծիքը, նրա վերաբերմունքը և այն, թե որքանով է նա ճիշտ հասկանում առաջ քաշված հարցը, հնարավորություն ունի՞ արդյոք այն կենսագործելու։

Այսպես, Երևանի պարտիական կազմակերպության Օրջոնիկիձեի շրջանի պարտիական ակտիվի ժողովը քննարկեց շրջանի առևտրի սիստեմում կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության գործը բարելավելու միջոցառումների հարցը։ Ժողովի արձանագրության մեջ շարադրված են կոմունիստների համառոտ ելույթները, բերված են քննարկված հարցին վերաբերող բազմաթիվ թվեր ու փաստեր։ Բայց այդ ամենի մեջ այնքան էլ հեշտ չէ գտնել գլխավորը, որը հնարավորություն կտար լրիվ պատկերացում կազմելու տվյալ հարցի մասին։ Ահա այստեղ է, որ օգնության է գալիս ինֆորմացիան. շրջկոմը բազմաթիվ փաստերից ու օրինակներից ընտրում է ամենահիմնականն ու ամենակարևորը, միաժամանակ համառոտակի հայտնում իրականացվող միջոցառումների մասին։

Մինչև այժմ խոսքը վերաբերում էր ներքևից եկող ինֆորմացիային։ Իսկ վերևից ներքև գնացող ինֆորմացիայի նպատակն է՝ պարտկազմակերպություններին սիստեմատիկաբար իրազեկ պահել վերադաս պարտիական օրգանների գործունեությանը։ Այն օգնում է ստորին օղակի պարտիական աշխատողներին՝ ճիշտ կողմնորոշվելու հերթական խնդիրներում և դրանով իսկ նպաստում դրանց հաջող կենսագործմանը, ամրապնդում է ղեկավար պարտիական օրգանների կապը տեղական կազմակերպությունների հետ։ Վերևից եկող ինֆորմացիայի դրվածքի լավ օրինակ է ցույց տալիս ՍՄԿՊ Կենտկոմը, որը պարտիային ու ժողովրդին միշտ իրազեկ է պահում քաղաքական ու տնտեսական բոլոր նշանակալի երևույթների մասին։

Մեր ռեսպուբլիկայի մամուլում սիստեմատիկաբար հրապարակվում են ՀԿՊ Կենտկոմի, պետական և տնտեսական օրգանների կարևոր որոշումները, միաժամանակ տեղական պարտիական կազմակերպություններն են ուղարկվում արձանագրություններ և առանձին որոշումներ, նամակներ և այլն։ Ինֆորմացիայի փորձված ու լավագույն ձև են քաղկոմների, շրջկոմների ու արտադրական պարտկոմների հաշվետվությունները պարտիական կազմակերպու-

թյուններում, ղեկավար պարտիական աշխատողների ելույթները աշխատավորության առջև։

Մի քանի խոսք ինֆորմացիայի նախապատրաստման «տեխնոլոգիայի» մասին։ Ինֆորմացիոն աշխատանքի որակը և բովանդակությունը, նրա ներգործունեությունը և նպատակասլացությունը մեծ չափով կախված են այն բանից, թե կոնկրետ ո՛վ է զբաղվում դրանով։ Գաղտնիք չէ, որ առանձին պարտիական օրգաններ, թերագնահատելով այդ գործը, հաճախ այն վստահում են ոչ ձեռնհաս մարդկանց։ Զպետք է մոռանալ, որ ինֆորմացիան ոչ թե ինչ-որ ձևական, գրասենյակային աշխատանք է, այլ չափազանց կարևոր, քաղաքական գործ և հանդիսանում է ամեն մի պարտիական օրգանի առաջնակարգ պարտականություններից մեկը։

Լ. ԽԱՉԻԿՕՂԼՅԱՆ

## ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅԱՆ ԿՈՄԻՏԵՆ ԳՈՐԾՈՒՄ Է

Հոկտեմբերյանի արտադրական վարչության պարտիական-պետական վերահսկողության կոմիտեին կից ստեղծվել են արտահաստիքային չորս բաժիններ, առաջարկությունների ու բողոքների բյուրո, աջակցող 89 խմբեր։

Մեր կոմիտեն ու նրան աջակցող խմբերը որոշակի աշխատանք են կատարում առանձին կոլտնտեսություններում ու սովխոզներում թերությունները բացահայտելու, սխալներն ու չարաշահումները կանխելու, մեր հասարակության խորթ երևույթները դատապարտելու և վերացնելու, նորն ու առաջավորը արմատավորելու ուղղությամբ։

Իր նիստերից մեկում կոմիտեն քննարկեց այն հարցը, թե արտադրական
վարչության կոլտնտեսություններն ու սովխոզներն ինչպես են կատարում խա-
ղողագործության ու պտղաբուծության զարգացման մասին ՀԿՊ Կենտկոմի և
Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի 1959 թվականի փետրվարի 27-ի որո-
շումը։ Մանրազնին ստուգումները ցույց տվին, որ այդ գործում նկատվում են
լուրջ թերություններ, կան աչքակապության փաստեր։ Այսպես, Փշատավանի
կոլտնտեսությունը 1959—1960 թվականներին պետք է հիմներ 63 հեկտար խա-
ղողի այգի։ Կոլտնտեսության ղեկավարները ոչինչ չանելով, հաշվետվություն-
ներում ցույց էին տվել, որ այն կատարված է։ Այժմ, երբ իրենց ներկայացրած
հաշվետվությունների հիման վրա պլանավորվել են խաղողի արտադրությունն
ու վաճառքը, պարզվում է, որ 47 հեկտար այգի գոյություն ունի միայն հաշվե-
տվություններում։ Ներկայումս Գետաշենում պակասում է 46 հեկտար խաղողի
և 20 հեկտար պտղի, իսկ Բերքաշատում՝ 10 հեկտար խաղողի այգի։ Խստորեն
դատապարտելով աչքակապության նման խայտառակ երևույթները, կոմիտեն
այդ տնտեսությունների ղեկավարներին պարտավորեցրեց առաջիկա աշնանն ու
գալիք գարնանը կատարել այգիների տնկման նախատեսված պլանը։
Կոմիտեի արտահաստիքային գյուղբաժնի տեսուչ Մ. Ստեփանյանը, ստու-
գելով բրդի ընդունման վիճակը Հոկտեմբերյանի մթերման գրասենյակի պահես-
տում, պարզել է, որ այստեղ ճիշտ չեն տեսակավորում բուրդը, ժամանակին չեն
կազմում բրդի ընդունման փաստաթղթերը և թույլ են տալիս թերաչափումներ։
Ձեռնարկված միջոցներն օգնեցին այդ դրությունից դուրս գալու։
Կոմիտեն քննարկել է նաև աշխատանքի հաշվառման և աշխօրերի գրանց-



ման վիճակը Նոր Արթիկի, Մարգարայի, Երասխահունի և Հայկավանի կոլտնտեսություններում և կանխել թերությունները։ Բավարար արդյունք են տվել բերքահավաքի օրերին մսուր-մանկապարտեզների նորմալ աշխատանքն ապահովելու ուղղությամբ իրականացրած միջոցառումները։

Ուսումնասիրությունից պարզվել է, որ «Հայգյուղտնտտեխնիկայի» Հոկտեմբերյանի և Թալինի բաժանմունքները կոլտնտեսությունների և սովխոզների գյուղատնտեսական մեքենաներն ու գործիքները վերանորոգելիս հաշվի չէին առել ՍՍՌՄ Մինիստրների սովետի 1963 թվականի հունիսի 15-ի որոշումը և սահմանվածից ավելի գումար էին գանձել. այժմ պատշաճ կարգ ու կանոն է սահմանվել այդ գործում։ Վերահսկողության կոմիտեի և նրան աջակցող խմբերի ակտիվ միջամտությամբ բացահայտվել ու վերացվել են խախտումներն առևտրի ցանցի մի շարք օբյեկտներում, կանխվել են չարաշահումները, բարելավվել է արտադրանքի որակը Հոկտեմբերյանի հացի գործարանում։

Սակայն մեր գործունեության մեջ կան որոշ թերություններ։ Կոմիտեին աջակցող բոլոր խմբերը չեն, որ լավ են աշխատում. առանձին խմբեր հաշտվում են թերությունների, չարաշահումների և այլ երևույթների հետ, անտարբեր են դրանց նկատմամբ։ Այդպես են վարվում, օրինակ, Վերին Թալինի ոչխարաբուծական սովխոզի, Շղարշիկի, Ագարակի, Կարմրաշենի, Բերքաշատի, Մարգարայի և այլ կոլտնտեսությունների ու սովխոզների աջակցող խմբերը։

Ս. ԴԱՎԹՅԱՆ
Պարտիական-պետական վերահսկողության
Հոկտեմբերյանի կոմիտեի անդամ

## ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԲԱՆՎՈՐԱԳՅՈՒՂԹՂԹԱԿԻՑՆԵՐԻՆ

Մեր երկիրը հաղթական քայլերով գնում է դեպի կոմունիզմ։ Սովետական ժողովուրդը օր օրին բազմապատկում է իր ջանքերը, գրավում նոր բնագծեր՝ կոմունիստական շինարարության բոլոր ճակատներում։ Համաժողովրդական այդ պայքարում իր պատվավոր ու մեծ դերն է կատարում սովետական մամուլը։

Սովետական երկրի մամուլը ամենադեմոկրատական ու ամենաճշմարտացի մամուլն է ամբողջ աշխարհում։ Հազարավոր թելերով այն կապված է ժողովրդի հետ և իր աշխատանքը կառուցում է նրա ամենօրյա ակտիվ մասնակցությամբ։ Անմահ Լենինը հսկայական նշանակություն էր տալիս աշխատավորների, հատկապես բանվորների մասնակցությանը կոմունիստական մամուլին, ընդգծելով, որ առանց դրա լրագիրը չի կարող կենդանի և կենսունակ լինել, չի կարող իր խնդիրները կատարել։ Դեռևս 1904 թվականի նոյեմբերին, պարտիական մեծամասնության օրգանի լույս տեսնելու առթիվ ընկերներին գրած նամակում Լենինը նշում էր. «Թյուրիմացություն է, թե հենց գրականագետները և միայն գրականագետներն (այս բառի պրոֆեսիոնալ իմաստով) են ընդունակ հաջողությամբ մասնակցելու օրգանում. ընդհակառակը, օրգանը կենդանի կլինի ու կենսունակ այն ժամանակ, երբ մի հինգ ղեկավար և շարունակ գրող գրականագետների դիմաց կան հինգ հարյուր և հինգ հազար ոչ գրականագետ աշխատողներ... Մենք խնդրում ենք բոլորին և

հատկապես բանվորներին թղթակցել: Ավելի լայն հնարավորություն տվեք բանվորներին գրելու մեր լրագրում, գրելու բացարձակապես ամեն բանի մասին, որքան կարելի է ավելի շատ գրելու իրենց առօրյա կյանքի մասին, շահերի ու աշխատանքի մասին— առանց այդ նյութի սոցիալ-դեմոկրատական լրագիրը մի գրոշ չի արժենա և նա արժանի չի լինի սոցիալ-դեմոկրատական կոչման» (Երկեր, հ. 7, էջ 681, 682):

Առաջնորդի այդ իմաստուն ցուցումներն այժմ էլ հսկայական նշանակություն ունեն մեր մամուլի հաջող աշխատանքի համար: Որքան շատ աշխատավորներ թղթակցեն մեր մամուլին, այնքան այն կդառնա մասսայական, այնքան ավելի լավ ու բազմակողմանի կլուսաբանվի կոմունիստական շինարարության ընթացքը:

Վերջին տարիներին բանգյուղթղթակիցների շարժումը նոր վերելք է ապրում: Ստալինի անձի պաշտամունքի հետևանքների վերացման շնորհիվ վերածնվեցին այդ շարժման փառավոր տրադիցիաները: Այժմ տեղի են ունենում բանգյուղթղթակիցների համագումարներ, խորհրդակցություններ, հավաքներ, կազմակերպվում են մասսայական ռեյդեր, լրագրերի ցուցահանդեսներ և այլն: Նրանց շարքերը համալրել են արդյունաբերության ու տրանսպորտի, շինարարության ու գյուղատնտեսության հազարավոր առաջավորներ, կոմունիստական աշխատանքի հարվածայիններ: Դա աշխուժություն է սանեղծել բանգյուղթղթակիցների շարժման մեջ, բարերար է նրա ազդեցությունը մամուլի գործունեության վրա: Մեր լավագույն բանգյուղթղթակիցները մամուլում հաջողությամբ են լուսաբանում կոմունիստական շինարարության փարոսների աշխատանքի փորձը, ցույց տալիս ժողովրդական տնտեսության վերելքի ռեզերվները, նոր մարդու ձևավորման պրոցեսը: Ահա մի քանի օրինակ: Լենինականի Բանվոր, Աշտարակի Արագած, Անիի Շիրակ և միջշրջանային ու քաղաքային այլ թերթերի էջերում հաճախ կարելի է տեսնել բանգյուղթղթակիցների, հսկիչ պոստերի և ռեյդային բրիգադաների բովանդակալից հոդվածներն ու նյութերը: Երևանի ալյումինի գործարանի առաջավոր բանվոր Ա. Ավետիսյանը, Կիրովի անվան գործարանի առաջավոր բրիգադավար Պապյանը, Գորիսի շրջանի Այգեձոր գյուղի կոլտնտեսական Լ. Խաչյանը թղթակցական աշխատանքում այնքան են առաջադիմել, որ այժմ ՍՍՌՄ ժուռնալիստների միության անդամ են:

Ընթացիկ տարվա մարտ-ապրիլ ամիսներին բանգյուղթղթակիցների բրիգադաները ռեյդեր կազմակերպեցին և բացահայտեցին արդյունաբերության ու գյուղատնտեսության առանձին ճյուղերում եղած թերությունները: Ահա Արտաշատի Արարատ թերթի համարներից մեկը: Այն իր ամբողջ երկրորդ էջը նվիրվել է թղթակիցների ռեյդին: Ինչպես երևում է հրապարակված նյութից, ռեյդը բացահայտել է մի շարք կոլտնտեսություններում խաղողի այգիների մշակման աշխատանքներում եղած լուրջ թերությունները— վատ է կատարվել էտը, դանդաղ է ընթանում այգեփորը, չկա աշխատանքի գրաֆիկ-պլան և այլն:

Բանգյուղթղթակիցների շարժման վրա բարերար ազդեցություն գործեց ժուռնալիստների միության ստեղծումը, որի կարևոր խնդիրներից մեկը բանգյուղթղթակիցների դաստիարակությունն է, նրանց վարպետության բարձրացումը: Մեզ մոտ՝ Հայաստանում, այդ ուղղությամբ որոշ փորձ ենք ձեռք բերել: Լավ արդյունք են տալիս ժուռնալիստների և բանգյուղթղթակիցների ստեղծագործական հանդիպումները գործարաններում և կոլտնտեսություններում:



Վերջերս, ռեսպուբլիկայի ժուռնալիստների միության նախաձեռնությամբ, մի խումբ առավել փորձված ժուռնալիստներ հանդիպում ունեցան Երևանի էլեկտրալամպերի գործարանի բանթղթակիցների հետ: Հավաքվել էին գործարանում հրապարակվող բազմատիրաժ թերթի, քանից ավելի ցեխային պատի թերթերի, ինչպես նաև ռեսպուբլիկական թերթերի թղթակիցները: Ժուռնալիստները բանթղթակիցներին ծանոթացրին ռեսպուբլիկական մամուլի աշխատանքներին, պատմեցին առաջավոր թղթակիցների և հսկիչ պոստերի փորձի մասին, խորհուրդներ տվեցին ինչպիսի թեմաներ ընտրել, ինչ ձևով գրել ավելի հետաքրքրական լինելու համար, պատասխանեցին թղթակիցներին հետաքրքրող բազմաթիվ հարցերի: Ժուռնալիստները նայեցին գործարանի բազմատիրաժ թերթի հերթական համարի պլանը, մի շարք ճշտումներ մտցրին դրա մեջ:

Շատ հետաքրքիր անցավ բանթղթակիցների հանդիպումը Սովետական Հայաստան թերթի խմբագրի և մյուս ղեկավար աշխատողների հետ: Խոսվեց կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների գործունեությունը և նոր մարդու ձևավորման պրոցեսը լուսաբանելու մասին: Բանթղթակիցները ցանկություն հայտնեցին՝ մի հավաք կազմակերպել բանթղթակիցների մասնակցությամբ՝ քննելու համար, թե թերթն ինչպես է լուսաբանում վերոհիշյալ հարցերը:

Բանգյուղթղթակիցների դաստիարակությունը չի կարելի պատահականության բախտին թողնել: Այդ գործը պետք է լինի ծրագրային ու սիստեմատիկ: Հենց այդ նպատակով է կազմակերպվել գյուղթղթակիցների դպրոցը Աշտարակում, որին մասնակցում են նաև Ապարանի ու Կոտայքի գյուղթղթակիցները:

Դպրոցի պարապմունքները վարում են առավել փորձված ժուռնալիստներ, որոնք լավ տիրապետում են տվյալ թեմային և քաջատեղյակ են մեր մամուլի տրադիցիաներին ու սկզբունքներին:

Առաջին պարապմունքը, որի թեման էր՝ Վ. Ի. Լենինը մամուլի պարտիականության և մասսայականության մասին, անցավ շատ հաջող: Պարապմունքի ընթացքում ակտիվ ու աշխույժ զրույցի միջոցով ունկնդիրներին պարզաբանվեցին մեր մամուլի այդ երկու կարևոր հատկությունները: Հաջող անցավ նաև դպրոցի հաջորդ պարապմունքը. պատմական գիտությունների թեկնածու, ժուռնալիստ Խ. Բարսեղյանը ունկնդիրներին ծանոթացրեց լրագրային ժանրերի հետ:

Զնայած այս ամենին, այնուհանդերձ բանգյուղթղթակիցների մեջ կատարվող աշխատանքը դեռևս բավարար համարել չի կարելի: Այդ ուղղությամբ քիչ գործ են կատարում, հատկապես, ռեսպուբլիկական թերթերը: Վերջիններս սիստեմատիկաբար չեն կազմակերպում բանգյուղթղթակիցների սեմինար պարապմունքներ, նրանց հաճախ չեն ծանոթացնում իրենց աշխատանքների ծրագրերին, չեն զբաղվում թղթակիցների համար մատչելի բրոշյուրներ հրատարակելով և այլն:

Երկու տարի առաջ Սովետական Հայաստան թերթում հաճախ հայտարարություն էր լինում բանգյուղթղթակցի կաբինետում տեղի ունենալիք կոնսուլտացիաների, սեմինար պարապմունքների և բանգյուղթղթակիցների համար այլ միջոցառումների մասին: Այդ լավ գործը վաղուց դադարել է. կաբինետն այլևս չի գործում:

Կան տեղեր, որ տարիներով բանգյուղթղթակիցների հավաքներ չեն գումարվում, կապը խմբագրությունների և թղթակիցների միջև թույլ է։ Թղթակիցների, ինչպես նաև հեղինակների հետ կատարվող անբավարար աշխատանքով պետք է բացատրել այն, որ մեզ մոտ դեռևս շոշափելի արդյունքի չենք հասել մամուլի շուրջը հասարակական հիմունքներով ակտիվ համախմբելու ուղղությամբ։ Հաճախ թերթերի աշխատողներից կարելի է լսել այսպիսի խոսքեր. «Թղթակիցները լավ չեն գրում, չեն հասկանում, նյութը լավ չէ, փաստերը քիչ են» և նման բաներ։ Բայց ո՞վ է մեղավոր։ Իհարկե, թղթակիցը պետք է ձգտի վարպետանալ իր գործունեության մեջ։ Սակայն թղթակցին ուղղություն տալը, նրա որակավորումը բարձրացնելը թերթերի աշխատողների պարտքն է։ Գովելի է, որ Անիի Շիրակ թերթը ամիսը մեկ անգամ իր չորս էջն էլ տրամադրում է բանգյուղթղթակիցների նյութերին։ Թերթի այդ համարից ընթերցողը կարող է պարզ պատկերացում կազմել տեղի բազմաբովանդակ կյանքի մասին, իմանալ, թե ինչ է կատարվում արտադրական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում, կուլտուրայի, առևտրի և այլ հիմնարկներում։

Ինչի՞ արդյունք է բանգյուղթղթակիցների այդ ակտիվությունը։ Խմբագրության կողմից բանգյուղթղթակիցների մեջ կատարվող լավ աշխատանքի։ Խմբագրության աշխատողները սիստեմատիկաբար լինում են տեղերում. թղթակիցներին օգնում թեման ու փաստերն ընտրելու, դրանք լավ շարադրելու, ճիշտ հետևությունների հանգելու և այլն։

Մեր երկիրը թևակոխել է կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։ «Նոր մարդու ձևավորումը,— ասված է պարտիայի կանոնադրության մեջ,— տեղի է ունենում կոմունիզմի կառուցմանը ակտիվորեն մասնակցելու, տնտեսական և հասարակական կյանքում կոմունիստական սկզբունքները զարգացնելու պրոցեսում, պարտիայի, պետության և հասարակական կազմակերպությունների դաստիարակչական աշխատանքի ամբողջ սիստեմի ներգործությամբ, սիստեմ, որի մեջ կարևոր դեր է պատկանում մամուլին, ռադիոյին, կինոյին և հեռուստատեսությանը»։

Այս առումով բանգյուղթղթակիցները հանդիսանում են մեր գաղափարական աշխատանքի ակտիվ մասնակիցներ, կոմունիստականի պրոպագանդիստներ, հնի, մարդկանց գիտակցությունից կապիտալիզմի մնացուկների, մեր հասարակությանը խորթ ամեն տեսակ երևույթների դեմ ակտիվ մաքառողներ։

Լենինը մեծ նշանակություն էր տալիս լավ օրինակի պրոպագանդմանը, համարելով այն մարդկանց վերափոխելու կարևորագույն միջոց։ Ամեն օր մեր թերթերի էջերում կարելի է կարդալ կարճ ու պարզ, հստակ լեզվով գրված թղթակցություններ ու ինֆորմացիաներ, որոնք հարյուր հազարավոր մարդկանց պատմում են մեր գործարաններում, հանքերում, կոլտնտեսություններում և այլուր ծնվող նորի, դրականի, կոմունիստականի մասին։ Հենց վերջերս Դնեպրոձերժինսկի ազոտային պարարտանյութերի գործարանի մի խումբ բանթղթակիցներ մամուլում հանդես եկան և պատմեցին իրենց ձեռնարկության կոլեկտիվի լավ նախաձեռնության մասին։ Այդ կոլեկտիվը պարտավորվել է հայրենիքին տալ 40 հազար տոննա արտապլանային պարարտանյութ և հաջողությամբ կատարում է իր խոստումը։ Դնեպրոձերժինսկցիների այդ նախաձեռնությունը լայն արձագանք է գտել երկրում, ինչպես նաև մեր ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության աշխատողների շրջանում։ Այդ նախաձեռնությունը խրախուսում են նաև բանթղթակիցները, որոնք ռեյդերի ու հսկիչ պոստերի միջոցով բացահայտում են եղած ռեզերվները, պրոպագանդում դրական օրինակը։



Պրավդայի փորձը ցույց է տալիս, որ բանթղթակիցների աշխատանքներն ավելի արդյունավետ, թերթերում հրապարակվող նրանց հոդվածներն ու նյութերն ավելի ներգործուն ու բովանդակալից են լինում, երբ նրանք համախմբվում են հսկիչ պոստերի ու ռեյդային բրիգադաների մեջ։ Անհրաժեշտ է բոլոր գործարաններում, հանքերում, շինարարական տեղամասերում, երկաթուղային հանգույցներում, սովխոզներում ու կոլտնտեսություններում ունենալ թղթակիցների հսկիչ պոստեր, որոնց ակտիվ գործունեությունը մեծ օգուտ կբերի։

Բանգյուղթղթակիցների աշխատանքի հաջողությունը պարտիական ղեկավարության մեջ է։ Սակայն պարտիայի քաղկոմները, արդյունաբերական և գյուղական արտադրական կոմիտեները պատշաճ ուշադրություն չեն նվիրում բանգյուղթղթակիցների ուսուցմանը, նրանց չեն պարզաբանում պարտիայի կարևորագույն խնդիրները, ուղղություն չեն տալիս հսկիչ պոստերին և ռեյդերին։ Կասկածից վեր է, որ եթե գործարանային բոլոր ցեխերում կամ կոլտնտեսային արտադրության բոլոր ճյուղերում ստեղծվեն և լավ գործեն թղթակիցների հսկիչ պոստերը, ապա այդ մեծ չափով կօգնի պարտկազմակերպությանը՝ թերությունները ժամանակին նկատելու և վերացնելու։

Պարտիական կազմակերպությունները պետք է օգնեն բանգյուղթղթակիցներին, ժամանակին ընթացք տան նրանց բարձրացրած հարցերին, հոգ տանեն, որ ձեռնարկության ու կոլտնտեսության մեջ հսկիչ պոստերը գործեն կանոնավոր և ոչ մի խոչընդոտ չարգելակի նրանց։

Ա. ՊԵՏՐՈՍՅԱՆ
Հայաստանի ժուռնալիստների միության վարչության բանգյուղթղթակիցների շրջանում աշխատանք կատարող հանձնաժողովի նախագահ



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԼՈՒԾՄԱՆ ԿԱՐՈՏ ԽՆԴԻՐՆԵՐ

Սովետական Միության տերիտորիայում, հատկապես Անդրկովկասում, այգեգործությունն ու գինեգործությունը հայտնի են եղել մեր թվարկությունից շատ առաջ։ Հետագայում դրանք զարգանում են Մոլդավիայում, Ուկրաինայում, Կրասնոդարի և Ստավրոպոլի երկրամասերում։ Սակայն ցարական Ռուսաստանում այգեգործությունն ու գինեգործությունը չափազանց ետ էին մնում։ Բավական է նշել, որ գինու համաշխարհային արտադրության մեջ Ռուսաստանի բաժինը կազմում էր ընդամենը երկու տոկոս։ Առաջին համաշխարհային պատերազմի և քաղաքացիական կռիվների հետևանքով առանց այն էլ ծայրահեղ հետամնաց ժողովրդական տնտեսության այդ ճյուղը ավելի քայքայվեց։ Այգեգործությունը կրճատվեց մեկ երրորդով, իսկ գինու արտադրությունը՝ երեք քառորդով։

Երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման շրջանում՝ 1926 թվականին, խաղողի այգիների տարածությունը հասավ նախապատերազմյան մակարդակին, դրա շնորհիվ վերելքի ուղին բռնեց նաև գինեգործությունը։ Հետագայում, այգեգործության և գինեգործության զարգացման վերաբերյալ պարտիայի ու Սովետական կառավարության ընդունած որոշումները մեծ չափով նպաստեցին գինու, մասնավորապես սովետական շամպայնի, թունդ և սեղանի գինիների ու կոնյակի արտադրության զարգացմանը։ Արդեն 1940 թվականին, 1936 թվականի համեմատությամբ, ՍՍՌՄ-ում գինու արտադրությունն ավելացավ ավելի քան երկու անգամ, իսկ մարկային հնացրած գինիներինն ու սովետական շամպայնինը՝ մի քանի անգամ։

Հայրենական մեծ պատերազմի տարիներին ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի հետ միասին մեծ վնասներ կրեցին նաև խաղողագործությունն ու գինեգործությունը։ Պատերազմի հաղթական ավարտից հետո այգեգործության ու գինեգործության բնագավառի աշխատողների գործադրած ջանքերի շնորհիվ արագ զարգանում են այգեգործությունն ու գինեգործությունը։ Եթե 1940 թվականին Սովետական Միությունում արտադրվել էր 19,7 միլիոն դեկալիտր գինի, ապա 1956 թվականին՝ 50,9 միլիոն դեկալիտր։ Նույն ժամանակաշրջանում շամպայնի արտադրությունը 9 միլիոն շշից հասավ 27,3 միլիոնի։ Այժմ, երբ մեր երկրի աշխատավորները հաջողությամբ իրագործում են յոթնամյակի առաջադրանքները, իրենց պարտքը հայրենիքի հանդեպ անթերի են կատարում նաև գինեգործության բնագավառի աշխատողները։ 1962 թվականին ՍՍՌՄ-ում թողարկվել է 84,6 միլիոն դեկալիտր գինի, 44 միլիոն շիշ շամպայն, 2,020 հազար դեկալիտր կոնյակ։

Մեր երկրի այգեգործության ու գինեգործության մեջ իր ուրույն տեղն ունի Սովետական Հայաստանի գինու և կոնյակի արտադրությունը։ Հայաստանի ցածրադիր վայրերի և նախալեռնային շրջանների հողակլիմայական պայմանները շատ նպաստավոր են խաղողի մշակության ու խաղողից զանազան սննդամթերքներ ստանալու համար։

Մեզ հասած բազմաթիվ պատմական տվյալները, գրավոր վկայությունները, հուշարձանները վկայում են, որ Հայաստանի տերիտորիայում այգեգործությամբ ու գինեգործությամբ զբաղվել են շատ հին ժամանակներից։



Բայց գինեգործությունն իբրև տնտեսության կարևորագույն ճյուղ սկսեց զարգանալ սովետական իշխանության տարիներին։

Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո երկրում ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի հետ վերելքի ուղին բռնեցին նաև այգեգործությունն ու գինեգործությունը։ Պարտիայի ու կառավարության միջոցառումների շնորհիվ տարեցտարի ընդարձակվում են խաղողի այգիների տարածությունն ու գինեգործական ձեռնարկությունների ցանցը։ Կազմակերպվում են աշխատավոր այգեգործների կոոպերատիվ ընկերություններ, որոնք մեծ օգնություն են ցույց տալիս այգեգործ գյուղացիներին այգիների մշակման, խաղողի վերամշակման ու արտադրանքի սպառման գործում։ Վերականգնման շրջանում գինեգործական կոոպերացիայի կողմից կառուցվում են խաղողի վերամշակման ու գինու նախնական մշակման կետեր Օշականում, Աշտարակում, Ոսկեվազում, Վերին Արտաշատում, Էջմիածնում, Բուրաստանում, Յուվայում, Դավալուում։ Հայաստանի ժողտնտխորհի ցանցում կազմակերպվում է գինեկոնյակագործական «Արարատ» տրեստը, որը միավորում է գինու և կոնյակի ազգայնացրած գործարանները։ Վերակառուցվում և ընդարձակվում են Երևանի և Արտաշատի գործարանները։ Աշտարակում, Էջմիածնում կառուցվում են մառաններ, ձեռք են բերվում և տեղադրվում խաղող վերամշակող ու գինեգործական մեքենաներ ու այլ սարքավորումներ, որոնք մեծ չափով նպաստում են արտադրության մեքենայացմանը. պատրաստվում են մեծ քանակությամբ տակառներ ու կաղնու տախտակից խոշոր բուտեր, որը հնարավորություն է տալիս պահեստավորելու ավելի շատ գինի և կոնյակի սպիրտ։ Կազմակերպվում են այգեգործական սովխոզներ, ուր տնկվում են լարային սիստեմի այգիներ՝ բարձրորակ խաղողի սորտերով։

Աշխատավորության եկամտի աճը, նրանց նյութական բարեկեցության բարելավումը նոր պահանջներ են դնում գինեգործության առջև։ Գնորդները պահանջում են բարձրորակ, ավելի կատարյալ տեխնոլոգիական ձևերով վերամշակված սեղանի գինիներ ու կոնյակներ։ Այդ բնական է, որովհետև գինին պարունակում է մի շարք նյութեր, որոնք օգտակար են մարդու օրգանիզմին, իհարկե, չափավոր օգտագործելու դեպքում։ Պատահական չէ, որ բժիշկները հիվանդներին խորհուրդ են տալիս օգտագործել սպիտակ (?) — 

Հաշվի առնելով բնակչության պահանջը, պարտիան ու կառավարությունը հանձնարարեցին գինեգործության բնագավառի աշխատողներին՝ ավելի ընդարձակել սեղանի գինիների ու շամպայնի արտադրությունը։ Ղեկավար օրգանների կողմից ընդունվեցին սկզբունքային նշանակություն ունեցող կազմակերպչական ու տեխնոլոգիական բնույթի մի շարք ընդհանուր կանոններ ու հրահանգներ, որոնց նպատակն էր արտադրությունը հագեցնել ժամանակակից սարքավորումներով, բարձրացնել արտադրանքի որակը, գինեգործական արտադրությունը տնայնագործական վիճակից հասցնել գիտության և տեխնիկայի նվաճումների հիման վրա կառուցված խոշոր արդյունաբերական ճյուղի։

Այդ ժամանակաշրջանում մշակվում և հաստատվում են գինեգործական արտադրության տեխնիկա-արտադրական նորմանները, գինիների, կոնյակի ու կոնյակի սպիրտների պատրաստման և պահպանման հիմնական կանոնները, տեսակավոր գինիների կանոնադրությունը։

Հատկապես հետպատերազմյան տարիներին Հայաստանի գինեգործությունն ապրեց իր բուռն զարգացման շրջանը, ստեղծվեց մեքենայացված, ռացիոնալ հիմքերի վրա դրված խոշոր գինեգործական արդյունաբերություն։ Կառուցվեցին գինեգործական գործարաններ՝ Օշականում, Փարաքարում, Հոկտեմբերյանում, Արտաշատավանում, Վեդիում, Վերին Արտաշատում, Դալառում, Մեղրիում, սեղանի գինիների ու շամպայնի գործարաններ՝ Աբովյանում, Շամշադինում, Նոյեմբերյանում, Եղեգնաձորում, կոնյակի գործարան՝ Երևանում։ Զգալիորեն վերակառուցվել ու ընդարձակվել է Երևանի գինու կոմբինատը։ Նրա մառանների տարողությունը 180 հազար դեկալիտրից հասել է 960 հազար դեկալիտրի։ Ընդարձակվել են Արտաշատավանի, Էջմիածնի,

Կավալուի և այլ գործարանները։ Կառուցված են նաև խաղողի վերամշակման
ու գինու սկզբնական մշակման 26 կետեր ու գործարաններ։
Գինու գործարանները և սկզբնական մշակման կետերը հագեցված են
խաղող վերամշակող գինեգործական այլ մեքենաներով, նոր տեխնիկայով։
Խաղողի վերամշակման ամենադժվար պրոցեսներից մեկը՝ խաղողի ճզմումը,
որն անցյալում կատարում էին միայն մարդիկ, այժմ լրիվին մեքենայացված
է։ Այժմ գինու արդյունաբերության մեջ դրված են այնպիսի սարքավորումներ,
որոնք միաժամանակ ներծծում են խաղողը, նրա հատիկներն անջատում են
չանչից, ճզմում և փլուշը արտամղում չաների մեջ։ Եթե 20—25 տարի առաջ
գինեգործական արդյունաբերության մեջ պոմպերը գործում էին մարդկային
էներգիայի միջոցով, ապա այժմ դրանք աշխատում են էլեկտրաէներգիայով։
Էջմիածնի և Փարաքարի գործարանների սպիրտի և օղու թորման ցեխերը սար-
քավորված են տեխնիկայի վերջին խոսքով, բոլոր գործերը վարում է մեկ
մասնագետ։ Ավտոմատացումը մուտք է գործում գինեգործության մեջ։ Երև-
վանի գինու կոմբինատում, շամպայն գինու գործարանում, Օշականի, Դալա-
րի, Վեդու, Մեղրու գործարաններում տեղադրված են սառնարանային սար-
քավորումներ՝ գինիները ջերմային վերամշակման ենթարկելու համար։
Նախասովետական շրջանում Հայաստանի գինեգործության մեջ ընդհան-
րապես գոյություն չուներ լաբորատորիա, իսկ այժմ գինու ու կոնյակի գրեթե
բոլոր գործարաններն ունեն իրենց սարքավորված լաբորատորիաները, որոն-
ցում աշխատում են ավելի քան 100 մարդ։
Երևանի գինու կոմբինատում, կոնյակի և շամպայնի գինիների գործա-
րաններում գործում են տասը ավտոմատ լցման գծեր, որոնց միջոցով այդ
երեք գործարանները շշերի մեջ են լցնում տարեկան ավելի քան 2 միլիոն
դեկալիտր գինի, 150 հազար դեկալիտր կոնյակ և 300 հազար դեկալիտր օղի։
Տրեստի գինեգործական ձեռնարկություններն անցյալ տարվա տասն ամսվա
արտադրանքի պետական առաջադրանքը գերակատարեցին և ստացան մի քա-
նի հարյուր հազար ռուբլու արտապլանային շահույթ։
Մեր ռեսպուբլիկայի գինեգործության բուռն վերելքը ցույց տալու հա-
մար բավական է նշել, որ եթե 1937 թ. թողարկվել է 768.000 դեկալիտր գինի
և 77000 դեկալիտր կոնյակ, ապա 1962 թվականին թողարկվել է գինի
4017000, կոնյակ՝ 349000 դեկալիտր և 252000 շիշ շամպայն։
Մեծ աշխատանք է կատարված գինեգործության ուղղության որոշման
ու գործարանների մասնագիտացման ասպարեզում։ Ելնելով տվյալ շրջանի
ու ենթաշրջանի հողակլիմայական պայմաններից ու մշակվող խաղողի սորտի
առանձնահատկություններից, ստեղծվել են գինու տարբեր տեսակներ։ Հա-
մապատասխան գործարաններ են մասնագիտացվել այդ տեսակների արտա-
դրության մեջ։
Այժմ «Արարատ» տրեստն արտադրում է 42 տեսակի գինիներ, որոնցից
25-ը սեղանի, այդ թվում՝ մարկային (տեսակավոր) Ոսկեվազ, Էջմիածին, Ա-
րենի, Բյուրական և 17 թունդ դեսերտային, որից տեսակավոր՝ Այգեշատ,
Արևշատ, Արևիկ, Գետաշեն, Օշական, մուսկաթներ։ Կոնյակներից մարկային
(տեսակավոր)՝ Դվին, Երևան, Հոբելյանական, տոնական և այլն և 4 տեսակի
շամպայն։ Ստեղծվել է գինեգործության նոր ճյուղ, շամպայն գինիների
արտադրություն։ Հայկական շամպայնը իր որակով ետ չի մնում Միության
մյուս ռեսպուբլիկաներում արտադրվող շամպայն գինիներից։
Հայաստանում գինեգործության զարգացման, գինեգործության մեջ տեխ-
նոլոգիական նոր ձևեր ներդնելու ուղղությամբ մեծ ծառայություններ են մա-
տուցել ակադեմիկ Ն. Սիսակյանը, Միութենական գյուղատնտեսական ակա-
դեմիայի թղթակից անդամ պրոֆեսոր Ն. Պրոստոսերդովը, գիտության թեկ-
նածուներ Լ. Ջանփոլադյանը և ուրիշներ, անմիջականորեն արտադրության
մեջ աշխատող փորձառու և հնագույն գինեգործներ՝ Կ. Սիլիչենկոն, Վ. և Ն.
Պուչինյանները, Ռ. Հախնազարյանը, Հ. Պոպովը, Ս. Սարգսյանը, Հ. Մանա-
յանը։ Նրանք մեծ ջանքեր են գործադրել գինեգործության մեջ գիտության
նվաճումները և արտադրության առաջավոր մեթոդները ներդնելու գործում,



որի շնորհիվ այժմ մեզ մոտ արտադրվում են գինիների լավագույն տեսակ-
ներ։ Կոնյակի մասնագետ Մ. Սեդրակյանի ջանքերով ստեղծվել են կոնյակի
նորագույն տեսակներ։
Խաղողի նոր տեսակներ ստեղծելու, այգիների բերքատվությունը բարձ-
րացնելու, այգեգործության մեքենայացման գործում մեծ աշխատանք են կա-
տարել Գ. Գրձելյանը, Ս. Պողոսյանը, Ա. Հարությունյանը, մեխանիզատոր Ա.
Թրդոյանը, հնագույն ու վաստակավոր այգեգործներ՝ Հ. Ազիզյանը, Լ. Բիշար-
յանը և ուրիշներ։ Որքան շատ լինեն խաղողի տեսակները, լավ մշակ-
վեն այգիները, այնքան բազմազան ու բարձրորակ գինիներ կտա արտադրու-
թյունը։
Մեր գինեգործական արտադրանքը լայն ճանաչում է գտել և իր բարձր
որակով հայտնի է ողջ Սովետական Միությունում։
Հայաստանի գինիներն ու կոնյակները բարձր են գնահատվում նաև ար-
տասահմանյան շուկաներում ու ցուցահանդեսներում։ Միայն վերջին մի քանի
տարում մեր մարկային (տեսակավոր) գինիները միջազգային ու սովետական
ցուցահանդեսներում արժանացել են 15 ոսկյա և 10 արծաթյա մեդալի, կոն-
յակները՝ 8 ոսկյա և 1 արծաթյա մեդալի։
Գինեգործական արտադրության ստեղծման ու զարգացման պրոցեսում
գինեգործության բնագավառում ստեղծվել են բազմաթիվ բարձրորակ բանվո-
րական ու մասնագիտական կադրեր։ Դրանցից շատերն ունեն երկար տարի-
ների փորձ ու լավ տիրապետում են իրենց մասնագիտությանը։ Բանվորական
կադրերը հիմնականում ունեն միջին տեխնիկական և ընդհանուր միջնակարգ
կրթություն։ Մեր գինեգործության մեջ աշխատում են շատ անվանի բանվոր-
բանվորուհիներ, որոնք կոմունիստաբար գործում են յոթնամյակի առաջա-
դրանքները պատվով կատարելու համար։
Ռեսպուբլիկայի գինեգործության զարգացման բնագավառում մեծ դեր է
խաղում այգեգինեգործական ինստիտուտը, որը հիմնվել է 1927 թվականին,
որպես այգեգործական գիտահետազոտական փորձնական զոնալ կայան։ Այդ
ինստիտուտը մեծ աշխատանք է կատարել խաղողի սելեկցիայի, նոր լավորակ
սորտեր ստանալու, այգիների պարարտացման և ագրոտեխնիկայի բնագա-
վառում։ Ինստիտուտի տեխնոլոգիայի և մեքենայացման բաժնի կատարած մի
շարք կարևոր աշխատանքներ՝ գինու ու կոնյակի տեխնոլոգիական պրոցեսների
բարելավման, կորուստների կրճատման, նոր ռացիոնալ տեխնոլոգիական մե-
թոդների մշակման, նոր տեսակների գինու մարկաների ստեղծման, գինու և
կոնյակի հասունացման պրոցեսի արագացման, կոնյակի սպիրտի թորման
պրոցեսի ռացիոնալացման ու ավտոմատացման ուղղությամբ, տվել են դրա-
կան արդյունք։

✻✻✻

Սովետական իշխանության տարիներին ստեղծված գինեգործական ար-
դյունաբերությունը որոշակի դեր է խաղում Հայաստանի էկոնոմիկայում։ Սա-
կայն անհրաժեշտ է նշել, որ գինեգործական արդյունաբերությունն իր զար-
գացման տեմպով ետ է մնացել և այսօր էլ շատ ետ է մնում գյուղատնտեսա-
կան արտադրության հումքի ծավալից։
Այգիների տարածությունների ընդարձակման, բերքատվության բարձ-
րացման շնորհիվ ռեսպուբլիկայի այգեգործները գինեգործությանը կարող են
ավելի շատ խաղող տալ, քան հնարավորություն ունի վերամշակելու գինե-
գործական արդյունաբերությունը։ Ներկայումս ռեսպուբլիկայի գինեգործական
արտադրությունը հաճախ չի կարողանում ընդունել և պատշաճ ձևով վերամշա-
կել այգեգործների աճեցրած բերքը. խաղողն ընդունվում է միշտ ձգձգումնե-
րով, երբեմն գինին լցնում են այնպիսի ամանների մեջ, որոնք իջեցնում են
նրա որակը։ Դրա հիմնական պատճառը տարողությունների պակասն է և խա-
ղող վերամշակող գինեգործական արտադրության դեռևս ոչ լրիվ մեքենայա-
ցումը։ 1962 թվականին ռեսպուբլիկայի գինու գործարանները հնարավորու-

թյուն ունեցան մթերելու և վերամշակելու ընդամենը 116 հազար տոննա խաղող, մինչդեռ ստացված բերքն ավելի շատ էր։ Մթերված խաղողի վերամշակումից ստացվեց մոտ 8,7 միլիոն դեկալիտր գինի։

Առաջիկա տարիներին անընդհատ ընդարձակվելու է խաղողի այգիների տարածությունը։ Մոտավոր հաշիվներով 1970 թվականին բերքատու այգիների տարածությունները կհասնեն 37 հազար հեկտարի, մթերվող խաղողի քանակը՝ 350 հազար տոննայի, որից կստացվի 25—27 միլիոն դեկալիտր գինի։

Այգեգործության այդպիսի արագ զարգացումը հրամայական խնդիր է դնում գինեգործության առջև՝ կառուցել նոր գործարաններ, ավելացնել տարողությունները, լրիվ մեքենայացնել ու ավտոմատացնել գինեգործությունը, որովհետև առկա վիճակով անհնար է այգեգործների աճեցրած բերքը ժամանակին, որակով, լրիվ և անկորուստ մշակել։

Գինեգործական արդյունաբերության հրատապ խնդիրն է՝ կարճ ժամանակում կառուցել նոր, գինեգործական տեխնիկայի ու գիտության արդի մակարդակին համապատասխանող մեքենայացված խոշոր գործարաններ, մեծացնել գինեգործական արդյունաբերության կարողությունները և համապատասխանեցնել գյուղատնտեսական արտադրության մակարդակին։ Քանի որ, մի կողմից՝ խաղողի պլանտացիաների բերքատվության բարձրացման, մյուս կողմից՝ նորատունկ այգիները բերքատու դառնալու շնորհիվ զգալիորեն աճելու է վերամշակման ենթակա խաղողի քանակը, անհրաժեշտ է հենց 1964 թվականից սկսել և առաջիկա տարիներին ավարտել ու շահագործման հանձնել Արթենի-Արագած գինու գործարանը՝ 15 հազար տոննա խաղող վերամշակելու կարողությամբ։ Այդ գործարանը կվերամշակի Արթենի, Արագած և դրանց մոտակա սովխոզների աճեցրած խաղողի հարուստ բերքը։ Անհրաժեշտ է կառուցել նաև Արազդայանի գինու գործարանը, որը կվերամշակի Վեդու շրջանի Արազդայանի ենթաշրջանի 2 խոշոր սովխոզների բերքը. Եղվարդի գինու գործարանը, 2 գինու գործարան Երևանից Աշտարակ տանող խճուղու երկու կողմերում կազմակերպված սովխոզների և Եղվարդի սովխոզի բերքը մշակելու համար, ինչպես նաև մի շարք այլ գործարաններ։ Այդ ձեռնարկությունները պետք է կառուցվեն մոտակա տարիներին և, մեր կարծիքով, ռեսպուբլիկայի Մինիստրների սովետի պետպլանն ու Հայկական ՍՍՌ ժողտնտխորհը դրանք պետք է համարեն մեր ռեսպուբլիկայի համար կարևոր կառույցներ։

Նոր գործարանների կառուցմանը զուգահեռ անհրաժեշտ է մոդեռնացնել գոյություն ունեցող գործարանների սարքավորումն ու կահավորումը, դրանով իսկ բարելավել ու մեծացնել դրանց արտադրական կարողությունները։ Այգիների տարածությունների ընդարձակումը, նոր գործարանների կառուցումը և գոյություն ունեցող գործարանների սարքավորման մոդեռնացումը լայն հնարավորություն կստեղծի արտադրվող գինիների որակի շեշտակի բարձրացման ու նոր տեսակի բարձրորակ գինիներ արտադրելու համար։ Առանձնապես մեծ չափով կզարգանա կիսաքաղցր գինիների արտադրությունը։

Առանձին տեղ պետք է տալ նաև թողարկվող գինիների շշերի արտաքին ձևավորմանը. այս գործում մենք շատ ետ ենք մի շարք երկրներից։ Անհրաժեշտ է լուծել շշերի ձևավորման խնդիրը, այդ նպատակին ծառայեցնելով մեր ռեսպուբլիկայում գործող շիշ արտադրող գործարանները, անհրաժեշտության դեպքում մեծացնելով դրանց արտադրական կարողությունները։ Յուրաքանչյուր տեսակի, խմբի գինու համար մեծ ճաշակով պետք է ընտրել հատուկ ձևի շշեր, առաջին հերթին՝ տեսակավոր (մարկային) գինիների և կոնյակների, իսկ հետագայում մյուս տեսակների համար։

Այգիների տարածությունները մեզ մոտ ավելանում են գլխավորապես ի հաշիվ նոր իրացվող հողերի։ Գինու և գինենյութերի որակն ու ուղղությունը հիմնականում կախված են խաղողի որակից, իսկ խաղողի որակը՝ հողակլիմայական պայմաններից ու կիրառվող ագրոտեխնիկական միջոցառումներից։

Բարձրորակ արտադրանք կարելի է ստանալ, երբ ճիշտ է որոշված արտադրության ուղղությունը, երբ այն համապատասխանում է տվյալ վայրի հողակլիմայական ու սորտային պայմաններին։ Պետք է կարողանալ նոր ոռոգվող և այգեգործությանը հատկացված տարածություններում խաղողը մշակել ինչպես հարկն է, տվյալ հողակլիմայական պայմաններին համապատասխան ընտրել խաղողի սորտեր ու կիրառել անհրաժեշտ ագրոտեխնիկա։ Այդ ուղղությամբ մեծ անելիքներ ունի այգե-գինեգործական ինստիտուտը, որը պետք է ճիշտ կողմնորոշի, պատշաճ ուղղություն տա թե՛ այգեգործական տնտեսություններին և թե գինու արտադրությանը։

Հայտնի է, որ հաճելի, բուրավետ գինու արտադրությունը հիմնականում կախված է խաղողի որակից, իսկ խաղողը բարձրորակ է լինում, երբ այն լավ է մշակված և լրիվ հասունանում է։ Շաքարի, արոմատիկ ու բուրավետ նյութերի կուտակում, թթուների օպտիմալ խտություն լինում են այն ժամանակ, երբ խաղողը հասնում է տեխնիկական լրիվ հասունության։

Խաղողի ամենաարժեքավոր բաղադրիչ հիմնական նյութերից մեկը խաղողի մեջ կուտակված շաքարն է։ Մեր կարծիքով այգու բերքի քանակը պետք է պայմանավորված լինի ո՛չ միայն նրա ընդհանուր կշռային քանակով, այլև նրա շաքարայնությամբ։ Մինչդեռ փորձերը ցույց են տալիս, որ խաղողի որակը վերջին տարիներս ընկել է։ Այսպես, 1947 և 1948 թթ. «Արարատ» տրեստի մթերած խաղողի մեկ լիտր քաղցուն պարունակում էր 260—270 գրամ շաքար, իսկ 1960 և 1961 թթ. մթերածը՝ 215—220 գրամ։

Գյուղատնտեսական արտադրության, ինչպես և արդյունաբերության աշխատողների խնդիրը պետք է լինի առաջիկա տարիներում այգիների բերքի քանակային աճին զուգընթաց բարձրացնել նաև խաղողի որակը, շաքարայնությունը։

Գինեգործության առջև կանգնած մյուս կարևոր խնդիրը՝ հնացման ժամկետների կրճատումն է, իհարկե, ոչ ի հաշիվ որակի։ Հայտնի է, որ գինեգործական արդյունաբերության մեջ գինու որակի լավացման ու հասունացման նպատակով մեծ քանակությամբ գինի և կոնյակի սպիրտ ենթարկվում են երկարամյա հնացման, հիմնականում տակառների մեջ։ Այս տեխնոլոգիական միջոցը կապված է արտադրական մեծ ծախսերի հետ։ Պահպանման ընթացքում տարեկան գոլորշիանում և կորչում է հնացման մեջ գտնվող գինիների ու կոնյակների 3—5 տոկոսը։ Ժամանակն է, որ մեր մասնագետները մտահոգվեն այս ուղղությամբ։

Անհրաժեշտ է մեծ ուշադրություն հատկացնել գիտահետազոտական կազմակերպությունների ու արտադրության աշխատողների մշակած՝ գինիների ու կոնյակի սպիրտների հասունացման արդյունավետ մեթոդներին, ներդնել դրանք գինեգործության բնագավառում։ Այդ միջոցառումները հնարավորություն կտան կրճատելու հնացման տևողությունը, որը կտա մեծ տնտեսական օգուտ։ Շատ անելիքներ կան գինեգործության արտադրության պրոցեսների ընթացքում տեղի ունեցող կորուստների կրճատման, մնացորդների ու այլ ռեզերվների հայտնաբերման ու օգտագործման ուղղությամբ։ Արտադրական կորուստները դեռևս շատ մեծ են և հասնում են 4—5 և ավելի տոկոսի։ Դեռ ռացիոնալ չեն օգտագործվում դուրտը (գինու տականքը), չանչը, խաղողի կորիզը, կոնյակի թորումից հետո առաջացած տկուցքը (բարդան), որոնք պարունակում են բազմատեսակ օգտավետ նյութեր։

Գինեգործությունը մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության կարևոր ճյուղերից մեկն է, որի զարգացմանն անհրաժեշտ է մեծ ուշադրություն նվիրել։

Խ. ԴԱՎԹՅԱՆ
«Արարատ» տրեստի կառավարիչ

# ՍԿՍՎԵՑ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ

«Ո՞վ է ղեկավարում Երանոսի կոլտնտեսությունը»։

«Ո՞ւր է գնում Երանոսի կոլտնտեսությունը»։

Ահա այսպիսի հոդվածներ լույս տեսան «Սովետական Հայաստան» թերթի 1961 թվականի մայիսի 23-ի և 1962 թվականի ապրիլի 26-ի համարներում, որտեղ նկարագրված էին կոլտնտեսության տնտեսապես ետ մնալու պատճառները։ Այո՛, չափազանց վատ էր գործերի դրվածքը Երանոսի կոլտնտեսությունում։ Այստեղ վարչության և պարտիական կազմակերպության ղեկավարները ինչպես հարկն է չէին խորանում կոլտնտեսության արտադրության բարելավման հարցերում, արտադրության առանձին օբյեկտներում կադրերն ընտրված և տեղաբաշխված էին բարեկամական սկզբունքով, ծայր աստիճան ընկած էր աշխատանքային կարգապահությունը, մեծ թվով կոլտնտեսականներ չէին մասնակցում հանրային տնտեսության աշխատանքներին, իսկ 74 կոմունիստներից արտադրության մեջ աշխատում էին միայն 30-ը, 6 կոմունիստ չէին մասնակցում կոլտնտեսային աշխատանքներին։

Այդ հետևանք էր այն բանի, որ Երանոսի կոլտնտեսության գլուխ էին կանգնած անկարող, ոչ գործունյա մարդիկ, որոնք արտելի հարուստ ռեզերվներն ու հնարավորություններն օգտագործելու փոխարեն բռնել էին պետությանը խաբելու, աչքակապության ու հավելագրումների արատավոր ուղին։ Դրա պատճառով գնալով նվազում էին գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունն ու անասունների մթերատվությունը։ Տարիներ շարունակ բրիգադավարներ, ֆերմայի վարիչներ էին նշանակվում այնպիսի մարդիկ, որոնք գործը ձախողելուց հետո էլ մնում էին իրենց տեղում, համարվում անփոխարինելի, երբեմն էլ մի տեղից հանվում և տեղափոխվում էին մի այլ, ոչ պակաս պատասխանատու տեղ։

Աշխատանքային ցածր կարգապահության պատճառներից մեկն էլ այն էր, որ կոլտնտեսության առանձին ղեկավարներ ավելի շատ մտահոգված էին իրենց անձնական տնտեսությունների բարելավմամբ։ Այս հարցերը մի քանի անգամ քննարկվել են կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպության ընդհանուր ժողովներում, բայց դրությունը մնում էր նույնը։

Գործերի նման դրվածքը հասցրել էր այն բանին, որ կոլտնտեսությունը, ունենալով լայն հնարավորություններ, տարեցտարի իջեցնում էր գյուղատնտեսական մթերքների արտադրությունը. այստեղ կրճատվում էր հանրային անասունների գլխաքանակը։ Բավական է ասել, որ 1959—1961 թվականներին հացահատիկի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացվել է միջին հաշվով 3—6, ճակնդեղի՝ 10—15 ցենտներ բերք։ Չափազանց ցածր էր հանրային տնտեսության եկամուտը, որի հետևանքով էլ յուրաքանչյուր աշխօրին բաշխվել էր 60—70 կոպեկ։

ՍՄԿԿ Կենտկոմի 1962 թվականի մարտյան պլենումից հետո ստեղծվեցին կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչություններ։ Մեր արտադրական վարչությունը ուսումնասիրեց բոլոր տնտեսությունների, ինչպես և Երանոսի կոլտնտեսության վիճակն ու զարգացման հեռանկարները։ Պարզվեց, որ Երանոսի կոլտնտեսությունն ունի լայն հնարավորություններ, ապահովված է անհրաժեշտ քանակությամբ աշխատող ձեռքով. ուրեմն ինչո՞ւ պետք է ետ մնա։ Ահա այս հարցը հուզեց արտադրական վարչությանը և պարտիական կոմիտեին։



Մանրամասն ուսումնասիրությունները ցույց տվին, որ գործը պետք է սկսել ղեկավար կադրերի ճիշտ ընտրությունից։ Արտադրական վարչության և պարտիական կոմիտեի խորհրդով երանոսցիներն ազատվեցին իրենց նախկին ղեկավարներից։ Վարչության նախագահ ընտրվեց երիտասարդ, աշխատասեր, միջնակարգ զոոտեխնիկական կրթություն ունեցող Ջ. Մանուկյանը, կոմունիստները պարտիական կազմակերպության քարտուղար ընտրեցին Վ. Մելոյանին, որն ուներ բարձրագույն կրթություն, գյուղսովետի գործկոմի նախագահ ընտրվեց Գ. Փաշոյանը։

Կոլտնտեսության վարչությունն ու պարտիական կազմակերպությունը ձեռնամուխ եղան կադրերի ճիշտ վերադասավորմանը։ Գործից հանվեցին այն բրիգադավարները, ֆերմաների վարիչներն ու այլ ղեկավարներ, որոնք տարիներ շարունակ չէին կարողանում լուծել իրենց առջև դրված խնդիրները. նրանց փոխարեն առաջ քաշվեցին արտադրության մեջ աշխատող երիտասարդ, իրենց գործը սիրող մարդիկ։

Կոլտնտեսությունում կային թռչնաբուծական, ձիաբուծական և խոզաբուծական ֆերմաների վարիչներ ու ղեկավար այլ աշխատողներ. մինչդեռ տվյալ ֆերմաներում անասունների գլխաքանակն այնքան փոքր էր, որ այդպիսի ղեկավար անձնակազմի անհրաժեշտություն չկար։ Նկատի ունենալով այդ, նշված երեք ֆերմաների փոխարեն ստեղծվեց մեկ ֆերմա։ Մեծ էր նաև կոլտնտեսության պահակների և մնացած օժանդակ աշխատողների թիվը. նրանց հաստիքներն զգալի չափով կրճատվեցին։ Դրա շնորհիվ 72 մարդ ուղարկվեց աշխատելու արտադրության մեջ։

Սկզբնական շրջանում, երբ կոլտնտեսության վարչության նախագահն ու պարտիական կազմակերպության քարտուղարը կոմունիստների հետ զրույցներ էին անցկացնում, պարտիական ժողովներում խոսում կոմունիստների պատասխանատվության բարձրացման, արտադրության մեջ նրանց տեղաբաշխման ու ավանգարդային դերի բարձրացման մասին, որոշ ընկերների համար տարօրինակ էր այդ ամենը։ Ավելին, առանձին կոմունիստներ դարձյալ խուսափում էին կոլտնտեսային աշխատանքներից և զբաղվում էին մասնավոր գործերով, որը խիստ բացասաբար էր անդրադառնում աշխատանքային կարգապահության վրա։ Պարտիական կազմակերպությունն ամենայն խստությամբ քննեց նմանների հարցը։ Հ. Ներսիսյանը, Թ. Խանսամանյանը հեռացվեցին պարտիայի շարքերից։

Այժմ սկզբնական պարտկազմակերպության 76 անդամներից 55-ը աշխատում են անմիջապես արտադրության մեջ։ Նրանց անձնական օրինակով ամրապնդվեց աշխատանքային կարգապահությունը։ Կոլտնտեսային աշխատանքներին ակտիվ մասնակցում են համարյա բոլոր կոմունիստների ընտանիքների անդամները։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով կոլտնտեսության վարչությունը, ելնելով կոլտնտեսության սպեցիֆիկ պայմաններից, արտադրական վարչության հետ միասին մշակեց հավելյալ վարձատրության նորմաները՝ ըստ առանձին ճյուղերի։ Մշակված միջոցառումների կիրառման շնորհիվ, միայն 1962 թվականին հավելյալ վարձատրության կարգով կոլտնտեսականներին տրվեց 6100 ռուբլի, 313 ցենտներ հացահատիկ, կարտոֆիլ և այլ մթերքներ։ Նման միջոցառումներն ամրապնդեցին կարգապահությունը, սկսեցին աշխատանքի դուրս գալ համարյա բոլոր կոլտնտեսականները։

Կոլտնտեսության էկոնոմիկայի զարգացման գործում վճռական դեր է խաղում ցանքերի ճիշտ ստրուկտուրան։ Այդ նկատառումով էլ արտելի ղեկավարությունն առանց ժամանակ կորցնելու վերանայեց ցանքերի ստրուկտուրան։ Նկատի ունենալով հանրային անասնաբուծության կերի խիստ պակասը, մեծ չափով ընդարձակվեցին կերային կուլտուրաների ցանքատարածությունները։ Կոլտնտեսության հողերից մոտ 250 հեկտարը երկար տարիներ չօգտագործվելով, խոպան էր դարձել և միայն 1962 թվականին դրանցից 150 հեկ-

*Անասունների խնամքը բարելավելու շնորհիվ 1963 թվականին, անցյալ տարիների համեմատությամբ, մի քանի անգամ պակասեց դրանց անկումը։ Միայն մեկ տարվա ընթացքում բարելավելով կովերի խնամքը, մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը 730-ից հասավ 1150 կիլոգրամի, որն, իհարկե, դեռևս քիչ է։ Այստեղ կովերի ցածր կաթնատվությունը հետևանք է նաև նրանց վատ ցեղայնության։ Կոլտնտեսությունը կովերի ցեղայնության բարելավման ուղղությամբ արդեն որոշակի գործ է կատարում. մեկ տարի է, ինչ բարձրակիթ կովերից առանձնացվել են 30 հորթ և տոհմային տնտեսություններից ձեռք է բերվել 25 երինջ։ Այլ խոսքով՝ ստեղծված է տոհմային կորիզ։ Կարգավորվել է նաև անասունների մայրական կազմի արհեստական սերմնավորման գործը, որը ստերջության վերացման լավագույն միջոց է։ Ստերջ կովերի և երինջների նկատմամբ տարվեց հատուկ խնամք, ՀԶՇ պրեպարատի շնորհիվ մինիմումի հասցվեց կովերի ստերջությունը։ Հատուկ խնամք կազմակերպվեց ստերջ և վիժած մաքիների նկատմամբ։ Դրանք արհեստական սերմնավորման ենթարկվեցին ամռանը, իսկ դեկտեմբերին ծնեցին։*

*Կազմակերպված ու լավագույն աշխատանքի շնորհիվ կոլտնտեսությունը 1960 թվականի 2789 ցենտների դիմաց 1963 թվականին ստացավ 7000 ցենտներ հացահատիկ։ Այդ նույն ժամանակամիջոցում կաթի արտադրությունը 1966-ից հասել է 2700, մսինը՝ 558-ից 810 ցենտների, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը 693 գլխից 740-ի, իսկ մանր եղջերավորներինը՝ 2381-ից 3150-ի։*

*Հանրային տնտեսության վերելքի շնորհիվ զգալիորեն աճեց կոլտնտեսության եկամուտը, որի շնորհիվ յուրաքանչյուր աշխօրին տրվեց 1,2 ռուբլի։*

*Այս տարի կոլտնտեսությունն ունի 300 հեկտարից ավելի լիարժեք աշնանացան։ Աշնանացանից և մյուս կուլտուրաներից բարձր բերք ստանալու նպատակով կոլտնտեսությունն արդեն սկսել է տեղափոխել հանքային պարարտանյութեր, պատրաստել կոմպոստներ և վերանորոգել գյուղատնտեսական տեխնիկան։ Գարնանացանի համար առանձնացված են բոլոր սերմացուները։*

*Երանոսի կոլտնտեսությունում սկսվել է առաջընթացը. հուսանք, որ այն մոտ ապագայում կլինի ռեսպուբլիկայի առաջավորներից մեկը։ Եվ դրա համար նա ունի թե՛ կայուն տնտեսական բազա և թե լավ ղեկավարներ։*

Հ. ԹԱՐՋՈՒՄԱՆՅԱՆ
Մարտունու արտադրական վարչության պետ



# Արվեստագետի ԱՄԲԻՈՆ

Ռ. ՊԱՐՍԱՄՅԱՆ

## ՄԵԾԱՏԱՂԱՆԴ ԱՐՎԵՍՏԱԳԵՏԸ

*(ՆԿԱՐԻՉ ՍՏԵՓԱՆ ԱՂԱՋԱՆՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)*

Ստեփան Աղաջանյանի մանկության ու պատանեկության տարիներն անցել են իր ծննդավայրում՝ Շուշիում: Նկարչական ունակությունները դրսևորվել են շատ վաղ: Սակայն միայն հասուն տարիքում նա հնարավորություն է ունենում իրականացնելու իր վաղեմի իղձը:

Քսանհինգ տարեկան հասակում նա առաջին անգամ սկսում է ծանոթանալ պրոֆեսիոնալ նկարչության կանոններին: Այնուհետև մոտ տասնչորս տարի խորանում է իր ընտրած մասնագիտության մեջ, ուսանելով սկզբում Մարսելի նկարչական դպրոցում, իսկ այնուհետև՝ Ժյուլիենի ակադեմիայում՝ Փարիզում. Ժյուլիենի ակադեմիայի արվեստանոցները մշտական վեճերի, ստեղծագործական որոնումների և արվեստի տրադիցիոն ու ժամանակակից սկզբունքների բախման հրապարակներ էին:

Ակադեմիայի արվեստանոցներում, մանավոր սալոններում և Մոնմարտրի բարձունքի սրճարաններում ծավալվող վեճերը շատ կողմերով անընդունելի էին Աղաջանյանի համար: Նա հավատում էր իր մեծ ուսուցչին՝ Ռեմբրանդտին. կյանքից բխած հույզերի ու կզացմունքների ճշմարտացի, պատկերավոր վերարտադրումն է արվեստի խնդիրը: Մինչև ասելը արվեստագետը պետք է գիտենա, թե ինչ և ինչի համար է ասելու: Իսկ իր շրջապատի մարդիկ ավելի վիճում էին ոչ թե ինչ, այլ ինչպես ասելու մասին:

Ժյուլիենի ակադեմիայում աշխատած տարիներին Աղաջանյանին առավել հուզում էր մեկ այլ հարց՝ ինչպիսին է լինելու իր տեղը հայրենի արվեստում: Հայկական արվեստի մասին նրա գիտելիքները մեծ չէին: Չկային հայկական արվեստի ոչ միայն թանգարաններ, այլև քիչ թե շատ ամբողջական հավաքածուներ: Եղել էին ու կային հայ նկարիչներ, որոնք, չնայած մեկուսացված աշխատանքին ու իրենց սփռվածությանը,



դարերի ընթացքում կարողացել են ստեղծել ուրույն, ազգային ոճ: Նրանք պատմության ամեն մի նոր շրջանում զարգացրել, հարստացրել ու կատարելագործել են այդ ոճը: XIX դարի հայ նկարիչներից Աղաջանյանն ամենից լավ գիտեր Ստեփանոս Ներսիսյանին՝ Հակոբ Հովնաթանյանի արվեստի անմիջական հետևորդին ու շարունակողին: Ներսիսյանի դիմանկարներն ու թեմատիկ աշխատանքները նա տեսել էր պատանեկության տարիներին Շուշիում, ուր որոշ շրջան (XIX դարի 60-ական թվականների կեսերին) ապրել ու ստեղծագործել էր Ս. Ներսիսյանը՝ XIX դարի հայկական գեղանկարչության ամենաուշագրավ դեմքերից մեկը:

Հետագա տարիներին նա տեսավ համաշխարհային արվեստի շատ գլուխգործոցներ, սովորեց

այդ գործերն ստեղծող տիտաններից, ասկետի կյանք վարելով տիրապետեց դժվարագույն արվեստի բոլոր օրենքներին, բայց երբեք չմոռացավ այն, ինչ տեսել էր մանկության տարիներին: Շուշեցիների տներում ակնածանքով պահպանվող միջնադարյան ծաղկողների մագաղաթյա էջերը, XVII—XVIII դարերի նկարիչների ու քանդակագործների անկեղծ խոստովանանքները, որ դրոշմված էին եկեղեցիներում և տապանաքարերի վրա, Ներսիսյանի համամարդկային ու միաժամանակ ազգային ռեալիստական արվեստը Աղաջանյանի հոգում արթնացրել էին անզուսպ մի ստեղծագործողի, որը չէր կարող կտրված լինել իր ակունքներից:



1900 թվականին Աղաջանյանը վերադառնում է հայրենիք: Շուշիում մեկ տարվա ընթացքում կերտում է իր լավագույն աշխատանքներից երկուսը, որոնք ծրագրային նշանակություն ունեն Աղաջանյանի հետագա ստեղծագործության համար: Այդ կտավները փաստորեն հանդիսացան նոր դարագլխի սկիզբը հայկական դիմանկարչական արվեստի պատմության մեջ:

Շուշի քաղաքի հին ու ավանդական օջախներից մեկն էր ուստա Մելիքսեթի տունը: Սիրված ու ճանաչված մարդ էր Մելիքսեթը: Սակայն, չնայած դրան, նա վիրավորված ու դժգոհ էր կյանքից: Առևտրական նոր հարաբերությունները, կապիտալի զարգացումը գավառում անգամ կործանում էին այն ամենը, ինչ սուրբ ու նվիրական էր: Ատելի է այդ նորը Մելիքսեթին: Դառնությամբ է զգում նրա ուժը և ինքնապաշտպանության բնազդով աշխատում է իր որդիների ճակատագիրը դասավորել այդ նորին համապատասխան: Իսկ ի՞նքը, իր նման շատե՞րը Շուշիում, Գանձակում, Գորիսում... ի՞նչ են անելու նրանք, երբ գնալով երերուն է դառնում հայրենի հողը: Մելիքսեթն ու նրա բարեկամները ներքին տագնապով սպասում էին Ստեփանի վերադարձին:

Շատ բան էր ակնկալում որդուց Մելիքսեթը, իսկ նա, առանց բաժանվելու ծխամորճից, լուռ, մտազբաղ, տառապանքի պես երկար թվացող ժամերի ընթացքում նկարում էր իրենից պատասխան ու նեցուկ սպասող հոգնած ու ծերացած մարդու դիմանկարը: «Հոր դիմանկարը» դիտողի առաջ բացվում են մարդկային մի ամբողջ բնավորություն, մի երկար կյանքի ճշմարտացի կենսագրություն: Բարության հետ և դաժան է այդ մարդը: Քնքուշ է նա, բայց և միշտ խեղդել է այդ քնքշանքը: Եղել է հանգիստ ու միաժամանակ բռնկվող: Հակասությունների մեջ տանջվում է մարդը: Նա զգում է իր վիճակի երկդիմությունը ու չի կարող գտնել դրա պատասխանը: Նա սպասում է պատասխանի, որը երբեմն չի հասկանալու: Ծրագրային սիմֆոնիկ գործի նման նկարը դիտողի մոտ արթնացնում է պատկերներ, հույզեր, զգացմունքներ:

«Հոր դիմանկարն» ավարտելուց անմիջապես հետո Աղաջանյանը ձեռնամուխ է լինում «Մոր դիմանկարի» կերտմանը:

...Հնամենի արևելյան թախտին նստած, ձախ ձեռքը հենած սեղանին, երիտասարդությունը ժամանակից շուտ հետևում թողած կինը նայում է նկարչին, աշխարհին, մեզ: Տառապանքի հետ հույս, ամեն ինչ ներող սեր կա նրա հայացքում: Կնոջ ձեռքում նույնպես թասբեհ կա, սակայն հավատով ու ակնածանքով են հպված նրա մատները ճակատագրի ամենագետ հատիկներին: Ուժեղ, ամեն դժվարություններ հաղթահարող, օջախի ծխի շենության համար երջանկությամբ իրեն զոհող նահապետական հայ կինն է Աղաջանյանի այս նկարի հերոսուհին:

Որդին կերտում է իր գլուխգործոցները, իսկ նույն ժամանակ նոր դառն հիասթափություն է ապրում դերձակ Մելիքսեթը: Ոչ միայն անօգուտ, այլև ծիծաղելի է միջավայրի համար Ստեփանի զբաղմունքը:

Դժվար է երիտասարդ նկարչի համար ապացուցել իր ճշմարտությունը: Կատարած գործի նյութական անշահավետությունը փակում է նրա էսթետիկական ներգործման հնարավորությունները: Մտերիմների ու համաքաղաքացիների հետաքրքրությունն ու համակրանքը փոխարինվում են Մելիքսեթի հանդեպ կարեկցությամբ, որի 40-ամյա որդին, նրա ծերությունը թեթևացնելու փոխարեն նոր հոգս ու ծանրություն է դարձել իր համար:

Աղաջանյանի բոլոր փորձերը, արվեստով իր գոյությունը Շուշիում պահպանելու ուղղությամբ, ապարդյուն են անցնում: Հոգեկան վիճակը խանգարում է ստեղծագործելուն: Անավարտ են մնում սկսած գործերը: Աղաջանյանը որոշում է մեկնել Բաքու: Թվում է, որ Անդրկովկասի արդյունաբերական կենտրոնում նա կկարողանա ծառայել իր ժողովրդի արվեստին:

Սառն ու անհյուրընկալ ընդունեց Բաքուն Աղաջանյանին: Նկարիչը դառնությամբ զգաց իր երիտասարդական տարիների երազանքի անհիմն ու վերացական լինելը: Կիսագաղութային Հայաստանը և անընդհատ նոր արհավիրքներ սպասող հայ ժողովուրդը հնարավորություն չունեին քիչ թե շատ նորմալ պայմաններ ստեղծելու մշակույթի շատ բնագավառների գործիչների և, հատկապես, կերպարվեստագետների համար: Իսկ կապել հույսը ազգային բուրժուազիայի հետ, անհեթեթություն էր: Սեփական փորձով նկարիչը համոզվեց, որ հայ բուրժուազիային հայի



մկաններն ու քրտինքն են պետք և ոչ թե մշակույթը:

1904 թվականի վերջերին Աղաջանյանը մեկնում է Ռոստով, որը հայկական կուլտուրայի ամենախոշոր կենտրոններից մեկն էր Ռուսաստանում: Արդյունաբերական խոշոր այդ քաղաքում ապրում էին մեծ թվով հայ և ռուս մտավորականներ: Ռուս առաջավոր նկարիչների՝ Պերեդվիժնիկների, գործունեության շնորհիվ գեղարվեստական ցուցահանդեսների կազմակերպումը տրադիցիա էր դարձել Ռոստովում: Ռուս նկարիչների հետ ստեղծագործում ու իրենց աշխատանքներն էին ցուցադրում հայ արվեստագետները: Շուշիում ու Բաքվում անցկացրած տարիները վերջնականապես համոզեցին Աղաջանյանին, որ հայ արվեստագետը չի կարող պահպանել իր գոյությունը ստեղծագործական աշխատանքով: Աղաջանյանը մանկավարժությունն է ընտրում որպես ապրուստի միջոց, միաժամանակ նա զգում է, որ մանկավարժությունը միակ զբաղմունքն է, որով ինքը կարող է առանց արվեստագետի իր սկզբունքներից հեռանալու օգտակար լինել ժողովրդին և որոշ չափով հնարավորություն ունենալ շարունակելու ստեղծագործական աշխատանքը: Ռոստովում աշխատած առաջին տարիներին Աղաջանյանը կատարում է բնանկարներ և իր մտերիմների ու ծանոթների դիմանկարները: Առանձնապես աչքի են ընկնում Վ. Գասպարյանի, Ս. Էքմեքչյանի դիմանկարները: Այս աշխատանքներում հոգեբանական ճշգրիտ բնութագրումների, կատարողական բարձր վարպետության հետ զգացվում է նկարչի դժգոհությունը շրջապատի հանդեպ. ինչպես ինքը, այնպես էլ իր հերոսները օտար ու միայնակ են կյանքում, շրջապատում:

XX դարի առաջին տասնամյակի վերջում նոր թափով սկիզբ առնող ռևոլյուցիոն շարժումները շատերի հետ սթափեցնում են և Աղաջանյանին: Նա ավելի ուշադիր է սկսում դիտել շրջապատը և, առաջին հերթին, ինչպես միշտ, ինքն իրեն: Այս տեսակետից բնորոշ է 1909 թվականին կատարած ինքնադիմանկարը: Ծավալով ոչ մեծ այս կտավում նկարչի ողջ ուշադրությունը կենտրոնացված է աչքերի վրա, նրանք մտազբաղ, ինքնամփոփ և միաժամանակ վճռական են: Կոնկրետ մի հարցի վրա է ուղղված նկարչի հայացքը: Նա փնտրում է այդ հարցի պատասխանը: Գլխի մի փոքր խռիվ մազերը և մորուքը պատկերված են արագ, անգամ անկանոն վրձնահարվածներով: Թեքված սև փողկապի և սպիտակ օձիքի հակադրությամբ առավել ուժեղ է դարձնում աշխատանքի դինամիկ ներգործությունը: Մի քանի ամիս անց նա ստեղծում է այդ շրջանի իր լավագույն կտավներից մեկը՝ «Ռոստովցի ատաղձագործի դիմանկարը»: Այս դիմանկարն իր երփնագրով ամենապայծառն ու լուսավորն է Աղաջանյանի նախասովետական շրջանի բոլոր աշխատանքներից: Հաճելի, ոգևորող է երիտասարդ բանվորի խելացի, համարձակ հայացքը: Ընդգծված է ոչ թե նրա ֆիզիկական, այլ հոգեկան ուժը: Նկարիչը արվեստագետի ներքին մղումով գտել է ընկերոջ, բարեկամի, որին կարող է հավատալ, վստահել: 10-ական թվականներին նույնանման թեմաներով կատարված կտավներից քչերն են հասել մեզ, պահպանվածներից լավագույնն է «Ձկնորսը Տագանռոգից»:

Այդ տարիներին Աղաջանյանի կերտած կանացի դիմանկարներից ուրույն տեղ է գրավում նկարչի գլուխգործոցներից մեկը՝ «Մտորումները» (1914 թ.), որն Աղաջանյանի այն եզակի աշխատանքներից է, ուր պատկերվողի համար որպես ֆոն ծառայում է ինտերիերի մի անկյունը: Պատուհանից այն կողմ ձգված է տափաստանը՝ գյուղական խրճիթներով: Սենյակում ընդգծված է միայն սեղանի լապտերը: Աթոռի մեջքին հենված, ընկղմված խոհերի մեջ, նստած է երիտասարդ կինը. գուցե մեկը Աղաջանյանի նախկին աշակերտուհիներից, որը սիրում էր Դոնի տափաստանները և այն լույսը, որն այնպես պայծառությամբ տարածվում էր գրքից, նկարից... Եվ անծայրածիր տափաստանն է հեռվում հիմա, լապտերում չի վառվում լույսը, աշխարհից նրան կտրել են նկարչի կողմից ընդգծված տան պատերը: Ինչ-որ գերող մտերմություն ու ջերմություն կա անծանոթ, երիտասարդ, շիկահեր այդ կնոջ կերպարում: Ռիթմիկ ու երաժշտական է նկարի ողջ կոմպոզիցիան: Ոչ մի անվանում այնքան բնորոշ չէր կարող լինել այս նկարի համար, որքան նկարի ստեղծումից մի տասնամյակ հետո դիտողներից մեկի արած «Մտորումներ» բացականչությունը: Իրականում սա կոնկրետ անձնավորություն է՝ մոնումենտալ ընդհանրացումներով — Աղաջանյանի արվեստի ամենալիրիկական ստեղծագործությունը:

«Մտորումներ» կտավում Աղաջանյանը դրսևորում է գեղանկարչական կարողությունների մի նոր, աննախընթաց վարպետություն: Գույնն ու լույսը առավելագույն չափով հագեցված ու իմաստավորված են: Նկարչի երփնագիրը ինտենսիվ ու լարված է, գույնը իր հետ բերում է բովանդակություն ու տրամադրություն: Նա նյութական ու շոշափելի է այնքանով, որքանով հասկանալի ու ներգործիչ են աշխատանքի գաղափարական բովանդակությունը, նպատակասլացությունը, պատկերավոր մտածելակերպը:

Ինչպես նախորդ տարիներին, այնպես էլ տասնական թվականներին ստեղծագործելու համար քիչ ժամանակ ուներ Աղաջանյանը: Չնայած դրան, այդ շրջանը որոշակի բավարա-

բություն տվեց նրան որպես արվեստագետի: Ռուսաստանի և այլ վայրերի տարբեր քաղաքներից հրավիրված արվեստագետների ուժերով կազմակերպվում էին «գարնանային» տարեկան ցուցահանդեսներ: Աղաջանյանը ևս իր ընկերների հետ միասին սկսեց իր ստեղծագործություններով խոսել հասարակության հետ, ներգործել, դաստիարակել նրան: Այդ ցուցահանդեսները հնարավորություն տվին հայ և ռուս արվեստագետներին՝ ավելի մոտիկից շփվելու միմյանց հետ, կազմակերպելու հանդիպումներ ու բանավեճեր, լսելու մասնագետների խոսքը: Այսպիսի հանդիպումներից մեկի ժամանակ Աղաջանյանը մոտիկից ծանոթացավ Կոնստանդին Կարովինի հետ: Բնորոշ է, որ այցելելով տեղի նկարիչների ցուցահանդեսը, Կարովինը առանձնակի հետաքրքրություն է ցուցաբերում Աղաջանյանի արվեստի և նրա անձնավորության հանդեպ: Կարովինի հետաքրքրությունը Աղաջանյանով ուներ խոր արմատներ: Տասնական թվականներին ռուսական արվեստում լայնորեն տարածվել էին ամեն տիպի անկումային, շատ դեպքերում արևմուտքի արվեստը մեխանիկորեն կրկնող ուղղություններ: Մամուլի, հղփացած ու ձանձրացող բուրժուաների և էսթետացող քննադատների միակողմանի, սուբյեկտիվ վերաբերմունքը որոշակիորեն արգելակում էր ռեալիստ արվեստագետների նորմալ ստեղծագործական գործունեությանը: Իրականությունից և ռևոլյուցիայից ահաբեկված մտավորականության որոշ մասը, հեռանալով ռեալիստական արվեստից, պայմանականության ու վերացականության մեջ էր գտնում իր ահաբեկված հոգու մխիթարությունը: XX դարի ռուսական արվեստի ամենափայլուն ներկայացուցիչներից մեկը՝ Կոնստանդին Կարովինը նույնպես ստեղծագործական հակասություններ էր ապրում: Եվ հանկարծ, Ռոստովում, ռուսական արվեստի կյանքում նշանակալից դեր չխաղացող այդ քաղաքում, նա տեսավ հուժկու մի տաղանդի, որն առանց կոմպրոմիսի, առանց տուրք տալու ոչ դեկադենտային, մոդեռնիստական ուղղություններին, ոչ էլ պաշտոնապես ընդունված սալոնական քաղցրածոր ակադեմիզմին, շարունակում է պահպանել, զարգացնել ու հարստացնել ռեալիստական արվեստի լավագույն տրադիցիաները: Կարովինին, անկասկած, գերել են Աղաջանյանի ինքնատիպությունը, գեղանկարչական բարձր կարողությունները և հանդգնության հասնող հաստատակամությունը ստեղծագործական սկզբունքներով: Քչերը, շատ քչերը կարողացան 10-ական թվականներին պահպանել իրենց արվեստի այդ հատկությունները: Այդ քչերի մեջ իր արժանավոր տեղն ունի Ստեփան Աղաջանյանը:

Ծանր օրեր ապրեց քաղաքացիական պատերազմի տարիներին Ռոստովը: 1918 թվականի մայիսից մինչև 1920 թվականի հունվարը գերմանական օկուպանտները և դենիկինյան հրոսակախմբերն ավերում ու թալանում էին քաղաքի շրջակայքը: Իրարամերժ, հակասական լուրեր էին հասնում Մոսկվայից ու Պետերբուրգից: Լարված ու բարդ էր երկու Ռուսաստանի սահմանագծում կանգնած մտավորականության հոգեվիճակը: Աղաջանյանի այդ շրջանում ապրած խոհերի ու կզացմունքների լավագույն արտահայտությունը 1919 թվականին կատարած «Հակոբ Խաչատրյանի» դիմանկարն է: Մտածող, ուժեղ մարդու կաշկանդվածության ողբերգությունն է պատկերված այս նկարում: Լարված ու անհանգիստ է նկարի երփնագիրը: Պատկերվողի արտաքին նմանության պահպանման հետ միաժամանակ Աղաջանյանն ստեղծել է հավաքական պորտրեի հրաշալի օրինակ, որտեղ տրրված է պատմական մեծ իրադարձությունների մեջ դեռևս չկողմնորոշված, բայց ազնիվ ու հայրենասեր մտավորականության տիպական կերպարը:

1920 թվականի հունվարին կարմիր բանակը վերջնականապես ազատագրում է Ռոստովը: Սովետական իշխանությունը երկրի տնտեսության վերականգնման հետ կյանքի է կոչում ստեղծագործական ուժերին:

1921 թվականին Աղաջանյանը մշտապես տեղափոխվում է Երևան՝ ապրելու, աշխատելու, ստեղծագործելու համար: Նա հայրենիք է գալիս որպես մեծ կենսափորձ ունեցող, ճանաչված վարպետ, ինքնատիպ, անկրկնելի դեմքով:



Երբ այսօր թերթում ենք 20-ական թվականների Սովետական Հայաստանի պատմության տարեգրությունը, շատ փաստեր հեքիաթից կորեղ ու անհավանական են թվում: Քարքարոտ ու անբերրի լեռնաստանում սեփական և օտար կավթիչներից արյունաքամ եղած ժողովուրդը, որը դեռևս չունի հաց ու օթևան, իր վերածնությունը նշանավորում է երկրում անգրագիտությունը վերացնելու մասին կայացրած որոշումով: Ստեղծվում են պետական հրատարակություն, թանգարաններ, նկարչական ու երաժշտական ուսումնական հաստատություններ և մշակութային այլ կենտրոններ: Առաջին գործարանների ու ֆաբրիկաների կառուցման հետ զուգընթաց մշակվում է նոր մայրաքաղաքի նախագիծը, որն իր հրապարակներով ու պողոտաներով, ճարտարապետական կոմպլեքսներով գերազանցելու է աշխարհի հին ու նոր շատ ճանաչված քաղաքներին: Երիտասարդների մի խումբ, մոռանալով սովն ու անքնությունը, ինժեներ, բայց հոգով բանաստեղծ Տեր-Աստվածատրյանի ղեկավարությամբ, դարերով խոպան հողին ջուր և մթության մեջ խարխափող գյուղերին էլեկտրական լույս է տալիս: Սեփական սենյակ չունեցող Թամանյանը ավարտում է իր փառահեղությամբ նմանը չունեցող ժողովրդական տան շենքի նախագիծը, իսկ Ալեքսանդր Սպենդիարյանը լսում էր՝ ինչպես այդ շենքի վեհանիստ դահլիճում հնչելու է պայքարի ու հաղթանակի հավատով հագեցած «Ալմաստ» օպերայի նախերգանքը: Ձմռան ամիսներին անգամ իր կախարդական վրձինով Երևանին արև էր տալիս Մարտիրոս Սարյանը, իսկ երիտասարդ Չարենցը հրաբորբոք իր խոսքով մեծ հեղափոխության տարեգրությունն էր կերտում: Ամենուր քանդվում էր հինը, կառուցվում նորը: Կառուցվում էր խիզախ, համարձակ, կառուցվում էր երիտասարդական ոգևորությամբ, հավատով: Այդ մեծ վերափոխիչների շարքում իր հաստատուն տեղը գրավեց և Ստեփան Աղաջանյանը:

Երևանում նոր երջանկությամբ համակեց Աղաջանյանին մանկավարժական աշխատանքը: Դասավանդելով Հայաստանում ստեղծված առաջին նկարչական միջնակարգ ուսումնական հաստատությունում՝ գեղարդտեխնիկումում, նա զգաց, որ վերջապես ինքն էլ բախտ է ունենալու վայելելու իր աշխատանքի պտուղները: Երևանի գեղարվեստական ուսումնարանի կազմակերպման առաջին իսկ տարիներից նրա հետագա ողջ գործունեության վրա խկայական ազդեցություն ունեցավ Ստեփան Աղաջանյանը: Թվում է, դեռ այսօր էլ նա շրջում է ուսումնարանի լսարաններում ու պատկերավոր մի նախադասությամբ, դիպուկ վրձնահարվածով ու մատիտի շարժումով սովորեցնում ինչպես նկարել, որ ավելի արտահայտիչ լինի, ինչպես երփնագրել, որ գույնը միշտ թարմ մնա ոչ միայն կտավի, այլև, որ ամենակարևորն է՝ յուրաքանչյուր դիտողի հոգում:

1926 թվականը նշանակալից է դառնում Աղաջանյանի ստեղծագործության ուժի նոր փայլատակմամբ: Նկարիչն այսպես բեղմնավոր չէր եղել նախորդ 30 տարիների ընթացքում: Մեկ տարում նա կերտում է տասը դիմանկար՝ հոգեբանական խորությամբ, կատարողական վարպետությամբ մեկը մյուսից կատարյալ: Այս տարեթիվը շրջադարձային է դառնում Աղաջանյանի հետագա գործունեության համար: Փոխվում ու լայնանում է թեմատիկան, էվոլյուցիա է ապրում նկարչի ստեղծագործական մեթոդը: 1926 թվականին կերտած դիմանկարներում իրենց արտացոլումն են գտել նախորդ հնգամյակում նկարչի ապրած հույզերն ու կզացմունքները: Հեշտությամբ չի քանդվում հինը, ուրախության ու բերկրանքի հետ երբեմն այն ծնում է ներքին տառապանք, պատճառ է դառնում մարդկային ողբերգության: Մարդու տառապանքը միշտ հուզել է նկարչին, սակայն առաջին անգամ լրջորեն մտահոգվում է Աղաջանյանը. արդյոք ամե՞ն մի տառապանք արժանի է կարեկցանքի: Կյանքը թելադրում է նկարչին ճիշտ պատասխան: Երևանում բնակություն հաստատելու առաջին իսկ ամիսներին Աղաջանյանը հաճախակի էր շփվում հին «Կոնդի» սյուներից մեկի՝ նրա թաղապետ Սեդրակ բիձայի հետ: Հայաստանում սովետական կարգերի հաստատումը փշրել է երիտասարդական տարիքը վաղուց անցկացրած այդ մարդու կյանքի ուղին, իսկ ճիշտ ճանապարհը նա չէր կարող տեսնել: Դրան խանգարում էր նրա դասակարգային և բնածին սահմանափակությունը: Վաղուց արդեն կյանքին հրաժեշտ է տվել երբեմնի «հզոր» թաղապետը, սակայն նկարչի հանճարի շնորհիվ այսօր էլ մեզ են հառված նրա դառնությամբ լի, աշխահար հայացքը, բթամիտ, քառակուսի դեմքը, անասնական կոպտություն արտահայտող ծնոտն ու անցած «հզորության» վերջին խորհրդանիշը հանդիսացող երկար, փառահեղ բեղերը: Եթե նախորդ շրջանում Աղաջանյանը ճշմարտացի պատկերում էր մարդուն, իր միջավայրի ու ժամանակի հետ կապված և գեղարվեստական պատկերների ուժով ցույց տալիս անձնական վերաբերմունքը նրա հանդեպ, այժմ անձնական վերաբերմունքը փոխարինվում է հասարակական, սոցիալական վերաբերմունքով: Դրա շնորհիվ նա սկսում է պատկերել նաև այնպիսի մարդկանց, որոնց էությունը, վարքագիծը նա դատապարտում է: Դատապարտում է, որովհետև նրանք հակասում են իր քաղաքացիական իդեալներին: Աղաջանյանի այս տիպի աշխատանքների շարքում առանձնակի տեղ է գրավում Վասիլի դիմանկարը.

1926 թվականին Աղաջանյանի կերտած մյուս դիմանկարներից հատուկ հիշատակության են արժանի «Նկարչի կինը շնիկի հետ» և «Քրոջ» դիմանկարը: Առաջինը իր կոմպոզիցիայով և պլեներային լուծմամբ նորություն է Աղաջանյանի արվեստում; Կասկածից վեր է, որ նոր թեմաների առաջ կանգնած նկարիչը լրջորեն մտածում էր իր արվեստի արտահայտչական միջոցների թարմացման ու հարստացման ուղղությամբ: Գույնը Աղաջանյանի համար միշտ եղել է նկարի ներքին բովանդակության բացահայտման կարևորագույն միջոցներից մեկը: Այն թելադրվել է ոչ թե հին վարպետների հանդեպ նկարչի ունեցած նախասիրություններից, այլ կերպավորման ճշմարտացիության պահանջներից: «Սեդրակ բիձան», «Վասիլը» մասամբ «Սոֆիա Գևորգյանի» դիմանկարը իրենց թե-

մատիկայով և գեղագիտական մոտեցմամբ եզրափակում են մի ամբողջ շրջան ընդգրկող մոտ 30 տարիներ: Այդ նույն աշխատանքները միաժամանակ արդեն կրում են այն նոր մոտեցման բնորոշ կողմերը, որով ընթանալու է Աղաջանյանի հետագա ստեղծագործությունը:

Ռևոլյուցիայի հաղթանակը որոշակի խնդիրներ ու պահանջներ դրեց արվեստագետների առաջ: Այդ խնդիրներն իրենց հետ բերեցին նոր մոտեցում դեպի արվեստը, ձևավորվեց ժամանակին ու հասարակարգին համահունչ ստեղծագործական մեթոդ: Սոցիալիստական ռեալիզմի մեթոդը ռուսական գրականության մեջ իր անդրանիկ դրսևորումը գտավ դեռևս 1905 թվականի ռևոլյուցիայի նախօրեին, իսկ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայից հետո այն աստիճանաբար դարձավ սովետական բազմազգ արվեստի զարգացման բնորոշ կողմը: Կյանքի երևույթները ռևոլյուցիոն շարժման մեջ տեսնող ու պատկերող այդ մեթոդը, որի հիմնական խնդիրը արվեստը սոցիալիստական վերափոխումներին ծառայեցնելն է, դարձավ ոչ միայն հոկտեմբերյան սերնդի դավանանքը. այդ մեթոդին հարեցին ու շատ դեպքերում նրա անդրանիկ ներկայացուցիչները դարձան նախառևոլյուցիոն շրջանում իրենց ստեղծագործական աշխատանքն սկսած շատ խոշոր ռեալիստ արվեստագետներ: Այդ արվեստագետներից էր և Ստեփան Աղաջանյանը: Ինչպես միշտ, այնպես էլ 20-ական թվականների կեսերին, կգալով իր արվեստում դրսևորվող նորը, Աղաջանյանը փորձեց այն ստուգել, պարզել իր համար նախ և առաջ ինքնանկարում: 1926 թվականի ինքնանկարը լավագույնն է Աղաջանյանի բոլոր ավտոպորտրետներից: Առնական, խրոխտ ու եռանդուն է նա: Նոր ուժ ստացած վրձնահարվածները շոշափելիության աստիճան ռեալ են դարձնում նրա կերպարը: Նկարիչն ընդգծում է իր ֆիզիկական ուժն ու կորովը: Միայն դեմքի կնճիռներն են հիշեցնում, որ նա տասնամյակներ ունի հետևում թողած: Չնայած դիմանկարի պրոֆիլային լուծմանը, պատկերված է երկրորդ աչքը, որի արտակարգ փայլատակումը մեծապես նպաստում է առավել ցցուն դարձնելու գործելու անհագ ցանկությամբ լեցուն նրա հոգին: Հնչեղ ու մաժոր է նկարի գունային գամման: Հպարտություն կա այդ հընչեղության մեջ:

Այս ինքնանկարը Աղաջանյանի նոր էսթետիկական հայացքների հաստատումն ու ակդարարումն է: Այս աշխատանքից մոտ մեկ տարի անց նա կերտում է իր ամենակենսախինդ գործերից մեկը՝ «Անապատանը»: Նկարի սյուժեն ու վերնագիրը լիաթոք կատակ են ուղղված նկարի բովանդակությանն ու գաղափարական նպատակասլացությանը: Անապատան է դեռևս այսօր պատառոտված շորերով ու հին գլխարկով պատանին: Այլ բան են ասում նրա ժպտացող հայացքը, սիրով ու բերկրանքով գարնանային առավոտվա՝ կյանքի թովչանքներ շնչող կիսաբաց շուրթերը: Ժպիտի տակ խելք ու կամք են փայլատակում, կիսաբաց շուրթերում՝ հավատ ու վստահություն: Արևի առատ լույսով են ողողված դեմքն ու կուրծքը, խնդուն է ողջ նկարը ու շոյող իր ակնիվ մաքրությամբ:

1926—1940 թվականներին Աղաջանյանն ստեղծում է քանակով երկու անգամ ավելի դիմանկարներ, քան անցած երեսուն տարիների ընթացքում: Նա ձգտում է տարբեր պրոֆեսիաների, տարիքի ու խարակտերների միջոցով, հոգեբանական նրբին երանգավորումներով ցույց տալ շրջապատի ազդեցության տակ ծնվող, զարգացող ու հասակ առնող նոր մարդու, սոցիալիստական հասարակարգի մարդու կերպարը:

Աղաջանյանն իր դիմանկարներով 20-ական թվականների երկրորդ կեսից վարպետորեն հաստատեց նոր թեմատիկայի հաղթական մուտքը մեր կերպարվեստում: Նա տվեց նոր մարդու բնավորության, նրա էության բացահայտման փայլուն օրինակներ:

Աղաջանյանի՝ այս շրջանում ստեղծած շատ դիմանկարներ կերպարավորման հավաքականության շնորհիվ առաջին իսկ ցուցադրումների ժամանակ հասարակության կողմից ընկալվում էին որպես թեմատիկ գործեր: Շատ շուտով մոռացվում էին այնտեղ պատկերված կոնկրետ մարդկանց ազգանունները և մնում որպես *Պիոներուհի, Ընթերցող կոմերիտուհի, Կարմիր հրամանատար, Հարվածային բանվոր* և այլն: Ինչպես իր նախորդ շրջանների, այնպես էլ այս աշխատանքներում Աղաջանյանը բծախնդիր է եղել կերպարի արտաքին նմանության պահպանման հարցում և երբեք չի հեռացել մարդու անհատականության պատկերումից: Հավաքականության տպավորությունն ստեղծվում է կերպարի պատմականորեն ճշմարտացի առանձնահատկությունների չեշտման շնորհիվ: 20-ական թվականների վերջերից Աղաջանյանի նախասիրած կերպարներից էին նաև ստեղծագործական մտավորականության ներկայացուցիչները՝ գրող Է. Տեր-Գրիգորյանը, կոմպոզիտոր Ա. Տեր-Ղևոնդյանը, երաժշտագետ Ս. Մելիքյանը, ժողովրդական երգիչ Ջաֆարը. այդ թվականներին կատարած այլ դիմանկարներում նա չեշտը դնում է իրականությունը բազմակողմանիորեն ընկալող և այդ բազմակողմանիության մեջ իրենց անհրաժեշտությունը գիտակցող ամբողջական բնավորությունների պատկերման վրա:

Յոթանասուներկու տարեկան էր Ստեփան Աղաջանյանը, երբ կերտեց վրձնահարվածներով ամենաէներգետիկ, գույնով ամենաթարմ և ընկալման անմիջականությամբ ամենապատանեկան իր աշխատանքը՝ *Բարոնիկայի դիմանկարը: Բարոնիկայի դիմանկարով* Աղաջանյանը վարպետորեն դրսևորեց իր արվեստի կարևոր առանձնահատկությունը՝ միշտ նորարար ու ժամանակակից լինելը. գերող հանդգնություն կա կյանքի որոշակի ուղի անցած, բայց դեռ ուժեղ ու գեղեցիկ այդ կնոջ կերպարում: Չկան հիշողությունների հետ ծնվող երկյուղ ու դառնություն: Հանգստացնող ու ոգևորիչ իմաստության մեջ են մարմնավորված միևնույն կերպարում երեկը, այսօրն ու վաղը: Նկարիչն ստեղծել է ժամանակակցի ճշմարտացի կերպար՝ համարձակ և ուժեղ, գերող իր նպատակասլացության հանդգնությամբ և տարօրինակ կերպով միշտ երիտասարդ: Կլանված իր հերոսներով, Աղաջանյանն ինքը չէր զգում ոչ հոգնածություն և ոչ էլ ծերություն: Տարիների հետ ուժեղանում էր նրա հոգում աշխատելու, ստեղծագործելու ցանկությունը:

1940 թվականին Աղաջանյանը մոտ չորս ամիս ապրեց Մոսկվայում և Լենինգրադում: Նա օրերով շրջում էր թանգարաններում: Երկար, առանց շտապելու դիտում էր հին ու նոր վարպետների գործերը 77-ամյա նկարիչը և՛ հպարտ, և՛ հուզված էր: Ոչ այնքան վաղուց նրան շնորհվել էր ռեսպուբլիկայի ժողովրդական նկարչի պատվավոր կոչում, շուտով նրան Կրեմլում հանձնելու էին *Աշխատանքային կարմիր դրոշի* շքանշանը, որով նա պարգևատրվել էր հայկական արվեստի և գրականության տասնօրյակի ժամանակ: Լենինգրադում ցուցադրված էին Աղաջանյանի մի քանի լավագույն գործերը, որոնք ջերմությամբ էին ընդունվում հասարակության և մամուլի կողմից: Երջանիկ նկարիչը մտայբաղ շրջում էր հին ու նոր արվեստի թանգարաններում: Ալեհեր արվեստագետն զգում էր, որ շուտով միայն թանգարանի պատերից է խոսելու եկող սերունդների հետ, խոսելու է՝ առանց պատասխանը լսելու:

Նույն թվականի աշնանը Աղաջանյանը վերադառնում է Երևան: Չնայած տարիքին, նա երիտասարդական եռանդով, համեմատաբար կարճ ժամանակում կերտում է այնպիսի նշանակալից կտավներ, ինչպիսիք են՝ ժողովրդական ուսուցիչ Սիմակի և իր հարևանուհու՝ Բլանշի, դիմանկարները:

Նկարիչը վախճանվեց դեկտեմբերի 13-ին:

23 տարի է անցել Աղաջանյանի մահից, ավելի քան 65 տարի՝ ինքնուրույն ստեղծագործական գործունեության առաջին փորձերից: Ժամանակը չի թուլացրել նրա աշխատանքների էմոցիոնալ ուժը, նրանք այսօր էլ, ինչպես տարիներ առաջ, հուզիչ ու տպավորիչ են, իսկ նրանց կերտողը՝ ռեալիստ-դեմոկրատ արվեստագետը, իր անմահ կտավներով լավագույն ուսուցիչ, խորհրդատու ու ղեկավար է կերպարվեստագետների գալիք սերունդների համար:

---

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Կ. ՄԱՐՔՍ և Ֆ. ԷՆԳԵԼՍ—Մամուլի մասին: *Մ. ՎՊՇ հրատ., 1963, 388 էջ:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Երկերի լրիվ ժողովածու, *5-րդ հրատարակություն: 40-րդ հատոր: 1919 դեկտեմբեր— 1920 ապրիլ: Մ., Պետքաղհրատ, 1963, 506 էջ:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Ընտիր երկեր *3 հատորով, հ. 2-րդ: Պետհրատ, 1963:*

Մարքսիզմի և միջազգային բանվորական շարժման պատմությունից: *Կարլ Մարքսի ծննդյան 145-ամյա տարեդարձի առթիվ (ժողովածու): Մ. Պետքաղհրատ, 1963, 624 էջ:*

Ս. Ա. ԴԱՆԳՈՒԼՈՎ—Լենինը խոսում է Ամերիկայի հետ: *Պատմվածքներ: Մ., «Մոլոդայա գվարդիա» հրատ., 1963, 288 էջ:*

ՎԻԼՅԱՄ ԱԼԲԵՐՏ ՌԻՍ—Լենինի և Հոկտեմբերյան ռևոլյուցիայի մասին: *Ե., Հայպետհրատ, 1963, 356 էջ:*

Վ. ԶՈՐԻՆ—Ամերիկայի անբագակիր արքաները: *Ե. Հայպետհրատ, 1963:*

Բարոյական դաստիարակության հարցերը Ն. Կ. Կրուպսկայայի աշխատություններում *(ժողովածու): ՌՍՖՍՌ Մանկ. Գիտ. ակ. հրատ, 1963, 182 էջ:*

Գ. Ս.ՀԱՐՈՒԹՅՈՒՆՈՎ—Բանվորական շարժումը Անդրկովկասում նոր ռևոլյուցիոն վերելքի ժամանակաշրջանում *(1910—1914 թթ.) Մ—Բաքու, ԱՍՍՌ Գիտ. ակ. հրատ. 1963, 464 էջ:*

Ա. Ջ. ԲԵԳՅԱՆ—Միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնումը և նրանց մեծացումը — *Ե., Հայպետհրատ, 1963:*

---

# ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ

## ԴԻՖԵՐԵՆՑԻԱԼ ՌԵՆՏԱՅԻ ՄԱՍԻՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԺԱՄԱՆԱԿ

Ս. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Տնտեսագիտական գիտությունների թեկնածու

Վերջին տարիների տնտեսագիտական գրականության մեջ սոցիալիզմի քաղաքատնտեսության վիճելի հարցերի թվում մեծ բաժին է ընկնում դիֆերենցիալ ռենտային։ Հրատարակված են բազմաթիվ հոդվածներ պարբերականներում, հատկապես Вопросы экономики ամսագրում. 1956—1963 թվականների ընթացքում լույս են տեսել (ռուսերեն) Ի. Ի. Կուզոզոևի, Տ. Լ. Բասյուկի, Վ.Գ. Վենժերի և Լ. Դ. Լոզվինովի աշխատությունները, Հողային ռենտան սոցիալիստական գյուղատնտեսության մեջ հոդվածների ժողովածուն՝ Ն. Ա. Ցագոլովի խմբագրությամբ (1959 թ.) և Կոլտնտեսությունների դրամական եկամուտներն ու դիֆերենցիալ ռենտան կոլեկտիվ աշխատությունը՝ Գ. Պ. Կուլյաշենկոյի խմբագրությամբ (1963 թ.), պաշտպանվել են զգալի թվով դիսերտացիաներ, այդ թվում նաև դոկտորական։ Չկա դիֆերենցիալ ռենտային վերաբերող որևէ հանգուցային հարց, որի շուրջ ամենատարբեր տեսակետներ չլինեն։ Միօրինակություն չկա նաև վերջերս հրատարակված քաղաքատնտեսության դասագրքերում։ Այսպես, օրինակ, որոշ, ճիշտ է փոքրաթիվ, տնտեսագետներ առհասարակ ժխտում են դիֆերենցիալ ռենտայի հնարավորությունը սոցիալիզմի պայմաններում, իսկ տնտեսագետների մեծամասնությունը ընդունում է նրա առկայությունը։ Դիֆերենցիալ ռենտայի գոյությունն ընդունող տնտեսագետների մի մասը գտնում է, որ ռենտա է ստեղծվում սոցիալիստական ողջ գյուղատնտեսության մեջ, այսինքն՝ և՛ սովխոզներում, և՛ կոլտնտեսություններում, ինչպես և հանույթային արդյունաբերության, անտառային ու ջրային տնտեսության ու շինարարության մեջ։ Մյուս մասը գտնում է, որ այն գոյություն ունի միայն կոլտնտեսություններում։ Որոշ տնտեսագետներ գտնում են, որ ամբողջ ռենտան (դիֆերենցիալ ռենտա առաջին և երկրորդ) պետք է անցնի հասարակությանը (այսինքն՝ պետությանը), մյուսները կարծում են, որ հասարակության տնօրինությանը պետք է անցնի դիֆերենցիալ ռենտա առաջինը և դիֆերենցիալ ռենտա երկրորդի մի մասը. երրորդների կարծիքով ամբողջ ռենտան պետք է բաշխվի պետության, կոլտնտեսությունների ու կոլտնտեսականների միջև։ Տնտեսագետները տարբեր ձևով ու յուրովի են բացատրում ու սահմանում ռենտային վերաբերող այս կամ այն հարցը, այս կամ այն հասկացությունը։ Բանավեճը դեռևս շարունակվում է։ Դիֆերենցիալ ռենտայի հարցին անդրադարձել է նաև մեր ռեսպուբլիկայի մամուլը՝ Հայաստանի ժողովրդական տնտեսություն և Լենինյան ուղիով ամսագրերը։ Վերջինս անցյալ տարվա № 3-ում առաջարկության կարգով տպագրել է տնտեսագիտական գիտությունների թեկնածու Հ. Պետյանի Դիֆերենցիալ ռենտան սոցիալիզմի ժամանակ հոդվածը։

Վերը թվարկած հանգուցային, ինչպես և դիֆերենցիալ ռենտայի հետ կապված այլ հարցերի ճիշտ ըմբռնումն ունի ո՛չ միայն տեսական կարևորություն, այլև գործնական մեծ նշանակություն, որովհետև դրանք սերտորեն կապված են սոցիալիստական սեփականության երկու ձևի, հետևաբար, մեր հասարակության երկու դասակարգերի՝ բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության փոխհարաբերությունների հետ, կոլտնտեսային արտադրության զարգացման, գյուղատնտեսական մթերքների գնագոյացման ու գների քաղաքականության, նյութական շահագրգռվածության լենինյան սկզբունքի անշեղ կիրառման հարցերի, գյուղական ու քաղաքային բնակչության իրական եկամուտների կազմավորման, սովետական մարդկանց՝ աշխարհում ամենաբարձր կենսամակարդակի ստեղծման կարևորագույն հարցերի հետ՝ կոմունիզմի կառուցման հետ մեր երկրում։

Քանի որ ընթերցողները մեծ հետաքրքրասիրություն են հանդես բերում դիֆերենցիալ ռենտայի նկատմամբ սոցիալիզմի ժամանակ, ուստի և հարկ ենք համարում անդրադառնալ Հ. Պետյանի հոդվածում շոշափված մի քանի հարցերի։

***

Դիֆերենցիալ ռենտան պատմականորեն ծագել է կապիտալիստական արտադրաեղանակի պայմաններում և, ի տարբերություն ֆեոդալական ռենտայի, արտահայտում է խոշոր հողատեր սեփականատերերի ու փողատեր կապիտալիստների հարաբերությունները՝ վարձու աշխատանքի շահագործման հիման վրա։ Դիֆերենցիալ ռենտայի գոյությունը կապիտալիզմի ժամանակ ենթադրում է հողի՝ որպես տնտեսության օբյեկտի, մոնոպոլիայի գոյությունը, որի ընդհանուր հիմքը տվյալ ժամանակում մշակվող հարաբերականորեն լավագույն հողի սահմանափակվածությունն է։ Այդ չի նշանակում, իհարկե, թե ազատ հողեր չկան։ Խոսքը, բնականաբար, վերաբերում է մշակման համար յուրացված հողային տարածություններին, նրանց բերրիությանն ու տեղադրությանը։ Օգտագործելով գյուղատնտեսական մեքենաներ, պարարտանյութ, կիրառելով առաջավոր ագրոտեխնիկական միջոցառումներ, ըստ որում օպտիմալ ժամկետներում, մարդիկ բարձրացնում են հողի բերրիությունը, որը Մարքսն անվանել է տնտեսական բերրիություն։ Հաղորդակցության միջոցների զարգացումն ու նոր բնակավայրերի ստեղծումը փոխում են հողի տեղադրության նախկին վիճակը, հեռու հողամասերը դարձնելով մոտիկ և այլն։ Եթե հավասարամեծ հողատարածությունների վրա հավասարամեծ կապիտալների ծախսումը բերում է տարբեր քանակի բերք, իսկ տվյալ դեպքում մշակվող բոլոր հողերից ստացված բերքն անհրաժեշտ է հասարակության կարիքները բավարարելու համար, ապա կարգավորող գինը կլինի վատթարագույն հողից ստացված բերքի միավորի (օրինակ՝ ցենտների) գինը։ Լավագույն հողամասեր մշակող ֆերմերը, որ հավասարամեծ տարածությունից ավելի շատ բերք է ստացել, իրացնելով այն վատթարագույն հողամասից ստացված բերքի գնով, ստանում է լրացուցիչ շահույթ, որպես արտադրության հասարակական ու անհատական գների տարբերություն։ Հողի, որպես տնտեսության օբյեկտի մոնոպոլիայի առկայությունը այդ լրացուցիչ շահույթը դարձնում է դիֆերենցիալ (տարբերական) ռենտա։ Այս ռենտան, ինչպես և այն ռենտան, որը կարող է առաջանալ միանման բերրիություն ունեցող հողերի տարբեր տեղադրության հետևանքով, Մարքսն անվանել է դիֆերենցիալ ռենտա I։

Հասարակության համար անհրաժեշտ բերքի քանակը հնարավոր է մեծացնել ո՛չ միայն մշակվող հողատարածությունների ընդարձակման միջոցով՝ էքստենսիվ ձևով, այլև միևնույն հողատարածությունների վրա լրացուցիչ ներդրումներ կատարելու միջոցով (մեքենայացում, պարարտացում, ոռոգում, մելիորացիա), այլ կերպ ասած՝ տնտեսության ինտենսիվացման միջոցով։ Բայց տարբեր կլինի նաև լրացուցիչ ներդրումների արտադրողականությունը, և կարգավորող գինը կրկին կլինի վատթարագույն արտադրության պայմաններում գոյացող գինը։ Հաջորդական ներդրման բարձր արտադրողականություն ունեցող ֆերմերը կստանա լրացուցիչ շահույթ, որը ռենտա կդառնա հողի, որպես տնտեսության օբյեկտի նույն մոնոպոլիայի շնորհիվ։ Այս ռենտան Մարքսն անվանել է դիֆերենցիալ ռենտա II։ Դիֆերենցիալ ռենտայի

այս երկու ձևերը մի ընդհանուր կողմ ունեն։ «Առանձին հողային տնտեսությունների միջև անխուսափելի են տարբերություններ, որոնք բխում են հողի պտղաբերության, շուկայի վերաբերմամբ հողամասերի տեղադրության տարբերություններից, հողի մեջ կապիտալի լրացուցիչ ներդրումների արտադրողականության տարբերություններից։ Կարճատես լինելու համար այդ տարբերությունները կարելի է ամփոփել (չմոռանալով, սակայն, այս կամ այն տարբերությունների աղբյուրների անմիատեսակությունը) որպես լավագույն և վատթարագույն հողերի տարբերություններ»,— ասում է Լենինը (Երկեր, հատոր 13, էջ 375)։

Վերը շարադրվածից հետևում է, որ դիֆերենցիալ ռենտան արտահայտում է կապիտալիզմի ժամանակ վարձու աշխատանքի շահագործման վրա հիմնված դասակարգային հարաբերություններ. դրա պատճառը հողի, որպես տնտեսության օբյեկտի, մոնոպոլիան է, որի հետևանքով լրացուցիչ շահույթը դառնում է ռենտա։ Այդ մոնոպոլիան ենթադրում է կոնկուրենցիայի առկայությունը կապիտալիստների միջև, կապիտալի արտահոսումը մի ճյուղից մյուսը՝ կապիտալի ավելի շահաբեր կիրառման համար։ Դիֆերենցիալ ռենտան չի կարելի բացատրել ապրանքային արտադրությամբ, թեկուզ և դիֆերենցիալ ռենտան ենթադրում է ապրանքային արտադրության գոյությունը, որը կապիտալիզմից շատ ավելի շուտ է առաջացել և զարգացման միայն բարձր աստիճանին հասցրել է կապիտալիզմի ծագմանը։

Դիֆերենցիալ ռենտան կապիտալիզմի ժամանակ յուրացնում են հողի մասնավոր սեփականատերերը կամ այն կանցներ կապիտալիստական պետությանը, եթե հողն ազգայնացվեր ու դառնար կապիտալիստական պետության սեփականությունը։ Հողի կապիտալիստական ազգայնացումը չէր վերացնի կապիտալիստական սեփականությունը, դրանով հողը հասարակական սեփականություն (համաժողովրդական ունեցվածք) չէր դառնա, չէր տրվի անվճար ու անժամկետ, այսինքն՝ առհավետ օգտագործելու համար (ինչպես այդ կատարվել է հողի սոցիալիստական ազգայնացման շնորհիվ մեր երկրում), չէին վերանա շահագործման հարաբերությունները։ Այս դեպքում ֆերմերը (գյուղացին) հող կվարձակալեր կապիտալիստական պետությունից, որպես հողատերի։ Մասնավոր կալվածատիրոջ փոխարեն ռենտան կյուրացներ «ամբողջական կապիտալիստը» (Ֆ. Էնգելս, Անտի–Դյուրինգ, 1952 թ., էջ 357), կապիտալիստական պետությունը։ Հողի կապիտալիստական ազգայնացումը չէր նշանակի, թե հողը հանվում է առևտրական շրջանառությունից։ «Հենց ճիշտ հակառակը։ Հողի մասնավոր սեփականությունն արգելք է հանդիսանում կապիտալի ազատ կիրառմանը հողի նկատմամբ։ Այս պատճառով հողը պետությունից ազատ վարձակալելու ժամանակ (և հենց այս է հողի ազգայնացման էությունը բուրժուական հասարակության մեջ) հողն ավելի ուժգնորեն է ներգրավվում առևտրական շրջանառության մեջ, քան հողի մասնավոր սեփականության տիրապետության ժամանակ»,— գրել է Լենինը (Երկեր, հատոր 15, էջ 160)։

Կապիտալիստական արտադրաեղանակի վերացմամբ վերանում են և կապիտալիստական դիֆերենցիալ ռենտա ծնող պատճառները, վերանում է կապիտալիստական դիֆերենցիալ ռենտան։



Սոցիալիզմը, ինչպես այդ ցույց է տվել կյանքը, չի բացառում դիֆերենցիալ ռենտայի գոյությունը։ Նրա սոցիալական բովանդակությունը ընդհանուր ոչինչ չունի կապիտալիստական դիֆերենցիալ ռենտայի հետ, որը շահագործման հարաբերություններ է արտահայտում։

Դիֆերենցիալ ռենտան սոցիալիզմի ժամանակ արտահայտում է սոցիալիստական փոխօգնության ու համագործակցության հարաբերություններ, ստեղծվում է աշխատավորների աշխատանքով և պատկանում է աշխատավորներին։



Սոցիալիզմը կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայի զարգացման այնպիսի աստիճան է, երբ աշխատանքը չի դարձել մարդու առաջնահերթ կենսական պահանջմունք, իսկ աշխատանքի հասարակական արտադրողականության զարգացման դեռևս ցածր աստիճանը չի ապահովում նյութական բարիքների լիառատություն՝ ըստ պահանջմունքի բաշխելու համար։ Զարգացման այսպիսի աստիճանում ըստ աշխատանքի քանակի ու որակի բաշխումը դառնում է հասարակության գոյության ու արտադրողական ուժերի առաջընթաց զարգացման միակ ճիշտ ուղին։ Ըստ աշխատանքի բաշխումը պահանջում է հսկողություն աշխատանքի չափի ու սպառման չափի վրա, պահանջում է ո՛չ միայն սահմանել աշխատանքի որակական տարբերություններ, այլև չափակցել նրա քանակական մեծությունները, որի համար հասարակությունը իր բազում դարերի գոյության ընթացքում մշակել, կատարելագործել ու կիրառել է արժեքի օրենքը, օգտագործել փողը, իսկ նրա միջոցով տեղի է ունենում աշխատանքի հասարակական հաշվառք ինչպես որակական, այնպես էլ քանակական տեսակետներից։ Փողը հասարակական աշխատանքի թանձրուկ է,— ասում է Լենինը (տե՛ս, Երկեր, հատոր 1, էջ 516. հատոր 29, էջ 435)։ Սոցիալիստական հասարակությունն օգտագործում է այդ կարևորագույն տնտեսական գործիքը։ Դա արդեն նշանակում է, որ ապրանքային արտադրությունը դրա հետ առնչվող տնտեսական բոլոր միջոցներով սոցիալիզմի ժամանակ սոցիալական բոլորովին նոր բովանդակություն է ստանում կապիտալիզմի համեմատությամբ։ Եվ հասկանալի է՝ քանի դեռ հասարակությունը չի հասել արտադրողական ուժերի զարգացման այնպիսի մակարդակի, որ հասարակության համար անհրաժեշտ բարիքների լիառատություն ստեղծվի, քանի դեռ մնում է հասարակության կողմից աշխատանքի չափի և սպառման չափի վրա ամենախիստ վերահսկողություն ունենալու անհրաժեշտությունը, կմնա նաև ապրանքային արտադրությունը, կմնան ու կզարգանան ապրանքա-փողային հարաբերությունները։ Այլ կերպ ասած, ապրանքային արտադրությունը կհաղթահարվի ըստ պահանջմունքի բաշխման օրենքի լիակատար հաղթանակով, այսինքն՝ կոմունիզմի ժամանակ։

Կարելի՞ է, սակայն, այստեղից եզրակացնել, որ դիֆերենցիալ ռենտայի «առաջացման պատճառը» սոցիալիզմի ժամանակ ապրանքային արտադրությունն է, կամ, որ միևնույնն է՝ «ապրանքա-փողային հարաբերությունները», ինչպես այդ կատարում է Հ. Պետյանը, բաժանելով մեր տնտեսագիտական գրականության մեջ եղած նման, բայց ոչ միակ տեսակետը։ Հ. Պետյանը գրում է. «Սոցիալիստական հողագործության պայմաններում դիֆերենցիալ ռենտայի առաջացման երկու տարբեր գործոնները՝ հողերի հարաբերական բերրիությունը և ապրանքա-փողային հարաբերությունները, համազոր չեն այդ տնտեսական կատեգորիայի գոյացման գործում. առաջինը պայմանն է, իսկ երկրորդը՝ դիֆերենցիալ ռենտայի առաջացման պատճառը» («Լենինյան ուղիով», 1963 թ., № 3, էջ 49։ Ընդգծումը հեղինակինն է — Ս. Մ.)։ Նկատենք նախ, որ 48-րդ էջում այլ տեսակետի էր հեղինակը։ Այնտեղ գրված է. «Սոցիալիզմի ժամանակ ևս դեռ մնում են պայմաններ դիֆերենցիալ ռենտայի առաջացման համար։ Դրանք են. հողի հարաբերական բերրիությունը, ապրանքա-փողային հարաբերությունների գոյությունը»։ Հասկանալի է, որ «պատճառը» և «պայմանը» նույն բաները չեն և այդ կարծիքին է հեղինակը։ Նա պարզապես վրիպել է 48-րդ էջում։ Այդ, թերևս, այդպես է, որովհետև 49-րդ էջում հեղինակը կրկին պնդում է, թե «հողերի հարաբերական բերրիությունը ինքնին ռենտա չի ծնում։ Դիֆերենցիալ ռենտան, որպես տնտեսական կատեգորիա, բխում է հասարակական-տնտեսական հարաբերությունների ապրանքափողային ձևից»։ Այսպիսով, ուրեմն, Հ. Պետյանը բաժանում է որոշ տնտեսագետների այն կարծիքը, ըստ որի դիֆերենցիալ ռենտայի գոյության պատճառը սոցիալիզմի ժամանակ ապրանքային արտադրությունն է, ապրանքափողային հարաբերությունները կամ, Հ. Պետյանի խոսքերով ասած՝ «հասարակական-տնտեսական հարաբերությունների ապրանքափողային ձևը»։

Բաժանելով սովետական այն տնտեսագետների տեսակետը, ըստ որոնց դիֆերենցիալ ռենտայի պատճառը սոցիալիզմի ժամանակ ապրանքային արտադրության գոյությունն է, Հ. Պետյանը հետևողական չի գտնվում, չի ընդունում դիֆերենցիալ ռենտայի գոյությունը սովխոզներում, որտեղ կա հողերի հարաբերական բերրիություն պայմանը և ապրանքա-փողային հարաբերություններ պատճառը: Հ. Պետյանը գրում է. «Պետական սոցիալիստական ձեռնարկություններն ինչպես արդյունաբերության մեջ, նույնպես և գյուղատնտեսության մեջ կարող են արտադրության պրոցեսում արտադրել դիֆերենցիալ հավելյալ արդյունքներ, սակայն այդ հավելյալ արդյունքները չեն կարող դառնալ դիֆերենցիալ ռենտայի նյութական կրողներ, քանի որ նրանք պատկանում են հասարակությանը՝ ամբողջապես վերցրած» (էջ 50):

Ուրեմն, Հ. Պետյանը կամ պետք է մնար այն տեսակետի վրա, որ դիֆերենցիալ ռենտայի պատճառը սոցիալիզմի ժամանակ ապրանքային արտադրությունն է և, հետևաբար, համաձայներ, որ դիֆերենցիալ ռենտա կա նաև սովխոզներում, հանույթային արդյունաբերության մեջ և այլն, կամ պետք է պարզեր իրեն, թե ինչով պետք է բացատրել դիֆերենցիալ ռենտայի գոյությունը սոցիալիզմի ժամանակ, երբ ապրանքային արտադրությունը համենայնդեպս չի կարող նրա գոյության պատճառը լինել:

Եվ այսպես, ինչո՞վ է բացատրվում դիֆերենցիալ ռենտայի գոյությունը սոցիալիզմի ժամանակ, ի՞նչ հարաբերություններ է արտահայտում այն:

Սոցիալիզմի ժամանակ նույնպես մնում է հողերի սահմանափակվածությունը: Հասարակության կարիքները հնարավոր չէ բավարարել միայն հարաբերականորեն լավագույն հողամասերի մշակմամբ: Ուստի օգտագործվում են նաև հարաբերականորեն միջին և վատթարագույն հողամասերը: Որքան էլ զարգանան գիտությունն ու նրա հետևանքների տեխնոլոգիական կիրառումը, տեխնիկան ու հաղորդակցության միջոցները, միևնույն է, չի կարող այնպիսի վիճակ ստեղծվել, որ բոլոր հողամասերն ունենան միանման տնտեսական բերրիություն, այսինքն՝ հնարավոր չի լինի հավասարամեծ հողամասերի վրա հավասարամեծ ներդրումների դեպքում ստանալ հավասար քանակի արդյունքներ, ինչպես և բոլոր հողամասերը չեն կարող միևնույն հեռավորության վրա գտնվել իրացման վայրերից: Ուրեմն, տարբեր կլինեն բերքի միավորի արտադրության համար կատարված ծախսումների չափը և իրացման վայրը փոխադրելու ծախքերը: Նշանակում է, տվյալ յուրաքանչյուր դեպքում առկա կլինեն հարաբերականորեն լավագույն, միջին ու վատթարագույն հողամասեր: Քանի որ վատթարագույն հողամասերից ստացված բերքն էլ հարկավոր է հասարակության կարիքները բավարարելու համար, ապա բերքի միավորի հասարակական արժեքը կորոշվի վատթարագույն հողի վրա բերքի արտադրության արժեքով: Դրա համեմատությամբ փոքր կլինի լավագույն ու միջին հողամասերի վրա արտադրված բերքի անհատական արժեքը: Հասարակական արժեքի ու անհատական արժեքի միջև եղած տարբերությունը դիֆերենցիալ եկամուտ է: Դիֆերենցիալ եկամուտ գոյություն ունի ո՛չ միայն գյուղատնտեսության, այլև արդյունաբերության մեջ, որտեղ միևնույն արտադրանքի հասարակական ու անհատական արժեքները (ինչպես և միևնույն արտադրանքի ինքնարժեքը տարբեր ձեռնարկություններում) տարբեր են լինում: Բայց միշտ չէ, որ դիֆերենցիալ եկամուտը դառնում է դիֆերենցիալ ռենտա: Նշանակում է, ապրանքափողային հարաբերությունների առկայությունը բավական չէ դիֆերենցիալ եկամուտը դիֆերենցիալ ռենտայի փոխարկվելու համար: Դրա համար բավական չէ նաև հարաբերականորեն լավ հողերի սահմանափակության առկայությունը:

Դիֆերենցիալ եկամուտը սոցիալիզմի ժամանակ դիֆերենցիալ ռենտայի փոխարկվելու համար անհրաժեշտ է սոցիալիստական սեփականության երկու ձևի՝ կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության և պետական-սոցիալիստական սեփականության առկայությունը, համապատասխանաբար կոլտնտեսային գյուղացիական դասակարգի և բանվոր դասակարգի առկայությունը,



իսկ այդ ենթադրում է որոշակի հարաբերությունների՝ ռենտային հարաբերությունների անխուսափելիություն:

Կոլտնտեսային սեփականությունը խմբային սեփականություն է: Կոլտնտեսությունն իրեն պատկանող արտադրամիջոցներով ու աշխատանքով ստեղծում է նյութական բարիքներ և դրանք պատկանում են տվյալ կոլտնտեսությանը, համաժողովրդական չեն: Մինչդեռ գյուղացիությունը պարտավորություններ ունի ամբողջ հասարակության նկատմամբ, ի դեմս սոցիալիստական պետության, որը բանվորների և գյուղացիների պետություն է: Լենինն ասում էր, թե «Դիկտատուրայի բարձրագույն սկզբունքը պրոլետարիատի և գյուղացիության դաշինքի պահպանումն է...» (Երկեր, հատոր 32, էջ 633): Բանվորա-գյուղացիական դաշինքի և նրա տնտեսական ամրապնդման հարցերը չեն կորցնում իրենց նշանակությունն ու կարևորությունն այն պատճառով, որ պրոլետարիատի դիկտատուրան մեր զարգացման արդի պայմաններում վերաճել է համաժողովրդական պետության: Ընդհակառակն, այդ հենց արտահայտում է մեր հասարակության բարոյա-քաղաքական միասնության ամրապնդման նոր, ավելի բարձր մակարդակը, բանվորա-գյուղացիական դաշինքի տնտեսական ու քաղաքական ամրապնդման արդի աստիճանը:

Ռենտային հարաբերությունները կոլտնտեսային գյուղացիության և ամբողջ հասարակությունը ներկայացնող սոցիալիստական պետության միջև առկա հարաբերություններն են գյուղատնտեսության մեջ ստեղծված դիֆերենցիալ եկամտի օգտագործման հիման վրա: Հենց այդ հարաբերությունների շնորհիվ է, որ դիֆերենցիալ եկամուտները վեր են ածվում դիֆերենցիալ ռենտայի: Սովխոզում, ինչպես և հանույթային արդյունաբերության մեջ, դիֆերենցիալ եկամուտը ռենտայի չի փոխարկվում, որովհետև այն համաժողովրդական, և ոչ թե խմբային, ունեցվածք է: Հայտնի է, որ կապիտալիստական արտադրաեղանակի պայմաններում, երբ կապիտալիստը ինքն է հանդիսանում հողի սեփականատերը, և ոչ թե վարձակալում է հողը, ապա նա ռենտայի մեծությանը հավասար դիֆերենցիալ եկամուտ (միջինից ավելի լրացուցիչ շահույթ) է յուրացնում, որը, սակայն, ռենտա չէ, եթե նույնիսկ կապիտալիստի հաշվեմատյաններում այն գրանցված լինի ռենտայի անվան տակ: Կամ այն պատճառով, որ կապիտալիստը միջին շահույթը տրոհում է փոխատվական տոկոսի ու ձեռնարկուական եկամտի, բնավ չի նշանակում, թե կապիտալիստի կանխավճարած գործող կապիտալը դարձել է փոխատվական կապիտալ:

Եվ, վերջապես, հնարավոր է սոցիալիստական հասարակարգ՝ մեկ միասնական պետական սոցիալիստական սեփականությամբ ու ապրանքա-փողային հարաբերությունների առկայությամբ: Այսպիսի պայմաններում բացառված կլիներ դիֆերենցիալ ռենտայի գոյությունը:



Այժմ դառնանք այն օրինակներին, որոնցով Հ. Պետյանը կամենում է հաստատել դիֆերենցիալ ռենտայի գոյությունը հենց ապրանքափողային հարաբերությունների հիման վրա:

Նա գրում է. «Ընդունենք, որ երկու կոլտնտեսություն հավասար հողակտորների վրա կազմակերպել են հացահատիկի արտադրություն և հավասարաչափ նյութական ու աշխատանքային ծախսումներ կատարելով ստացել են անհավասար արդյունք, դրանցից առաջինի հավելյալ աշխատանքը առարկայացած է եղել 3, իսկ երկրորդինը՝ 4 ցենտներ հացահատիկի մեջ: Ենթադրենք, որ մեկ ցենտներ հացահատիկի պետական գնման գինը հավասար է 7 ռուբլի 50 կոպեկի և այդ գինը համընկնում է **երկու կոլտնտեսությունների արտադրանքի արժեքին**» (էջ 50: Ընդգծումը մերն է—Ս. Մ.): Մի կողմ թողնելով օրինակի պրիմիտիվությունը, պետք է նկատել, որ այստեղ սխալ ելակետ է ընդունված, որ ճիշտ հետևանքի չի կարող բերել: Բանն էլ հենց այն է, որ

հողի սահմանափակվածության պայմաններում երկու կոլտնտեսությունների արտադրանքի արժեքը միևնույնը լինել չի կարող, ուրեմն և Հ. Պետոյանի ընդունած գինը չի կարող համընկնել երկու կոլտնտեսությունների արտադրանքի արժեքին, որովհետև գյուղատնտեսական արտադրանքի արժեքը որոշվում է արտադրության վատթարագույն պայմաններում կատարված ծախսումներով։ Հ. Պետոյանի օրինակում այն ծախսումներով, որի հավելյալ աշխատանքը առարկայացած է եղել 3 ցենտներ հացահատիկի մեջ։

Երկրորդ օրինակում (տե՛ս էջ 51, երկրորդ և երրորդ պարբերությունները) փոխելով պետական գնման գինը առհասարակ արժեքին համընկնելու իր դրույթը, ներառնելով նաև կոլտնտեսային շուկայում բերքի որոշ մասը ավելի բարձր գնով վաճառելու հնարավորությունը, Հ. Պետոյանը կատարում է այսպիսի հետևություն. «**Դիֆերենցիալ ռենտան է գոյացնում կոլտնտեսության լրացուցիչ զուտ եկամուտը** և ոչ թե լրացուցիչ եկամուտն է դիֆերենցիալ ռենտա դառնում» (էջ 51)։ Այստեղ, ինչպես ասում են, ամեն ինչ գլխիվայր է դրված։ Այնպես է ստացվում, որ կարող է առանց լրացուցիչ եկամուտ արտադրված լինելու դիֆերենցիալ ռենտա գոյանալ։ Այս սխալը գալիս է դիֆերենցիալ ռենտայի էության սխալ սահմանումից, որ կատարում է Հ. Պետոյանը։ Նա կարծում է, որ «դիֆերենցիալ ռենտան ապրանքային արտադրության առանձնահատուկ պայմանների տնտեսական կատեգորիա է, իբրև **արժեքի և գնի տարբերությունից առաջացած բաշխման երևույթ**» (էջ 50։ Ընդգծումը մերն է— Ս. Մ.)։ Մինչդեռ դիֆերենցիալ ռենտան սոցիալիզմի ժամանակ կոլտնտեսային արտադրանքի հասարակական և անհատական արժեքների միջև եղած տարբերությունն է։

Քանի դեռ գոյություն ունի սոցիալիստական սեփականության երկու ձև, դիֆերենցիալ ռենտայի գոյությունն անխուսափելի է։

Այդպես չի կարծում Հ. Պետոյանը։ Նա գրում է. «Սոցիալիստական հողագործության պայմաններում դիֆերենցիալ ռենտայի առաջացումը կայուն բնույթ չունի, քանի որ պետությունն իր գների քաղաքականությամբ ձգտում է համարժեքային հարաբերություններ ստեղծել տնտեսության օբյեկտների միջև» (էջ 53)։ Իր միտքը հաստատելու համար նա բերում է մի քաղվածք պարտիայի Ծրագրից, որի մեջ ասված է այն մասին, որ «Գները պետք է ավելի ու ավելի մեծ չափով արտացոլեն աշխատանքի հասարակականորեն անհրաժեշտ ծախսերը, ապահովեն արտադրության ու շրջանառության ծախքերի փոխհատուցումը և որոշակի շահույթ՝ նորմալ կերպով աշխատող յուրաքանչյուր ձեռնարկությանը»։ Այս քաղվածքից երևում է, որ գները պետք է ապահովեն հարաբերականորեն վատթարագույն պայմաններում արտադրող կոլտնտեսության ծախսերի փոխհատուցումը, որոնք հասարակականորեն անհրաժեշտ ծախսեր են, և որոշակի շահույթ՝ **նորմալ կերպով** աշխատող կոլտնտեսությանը։ Հարաբերականորեն վատթարագույն պայմաններում նորմալ կերպով աշխատող կոլտնտեսությունը, իհարկե, չի կարելի շփոթել ետ մնացող կոլտնտեսության հետ. նույն վիճակում կարող է լինել և հարաբերականորեն լավագույն հողեր ունեցող կոլտնտեսությունը, եթե կարգապահությունն ընկած է, խախտվում են ագրոտեխնիկական կանոնները, անճարակ է ղեկավարությունը և այլն։ Պարտիայի ծրագրում նշված գների քաղաքականությունը է՛լ ավելի կամրապնդի տնտհաշվարկը կոլտնտեսություններում (իսկ գների կարգավորման բնագավառում դեռ շատ անելիքներ կան), կապահովի նրանց տնտեսական զարգացումը և չի հասցնի այն բանին, որ «դիֆերենցիալ ռենտան որպես տնտեսական երևույթ կկորցնի իր պրակտիկ նշանակությունը» (էջ 53), ինչպես կարծում է Հ. Պետոյանը։ Հետևողական չէ հեղինակը։ Նա իրավացիորեն ընդունում է, որ սովխոզներում դիֆերենցիալ ռենտայի առաջացումն անհնար է (տե՛ս էջ 50, 52) և փոխանակ եզրակացնելու, որ դիֆերենցիալ ռենտան սոցիալիզմի ժամանակ կանհետանա սոցիալիստական սեփականության երկու ձևի մերձեցման ու միաձուլման հետևանքով, կարծում է, որ ռենտան կկորցնի իր պրակտիկ նշանակությունը համարժեքային հարաբերության շնորհիվ, դրա տակ, ըստ երևույթին, հասկանալով գների հավա-



սարեցումը արժեքին, որը գործնականորեն անհնար է, որովհետև գինը շարունակ տատանվելու է արժեքի շուրջը, և խոսքը կարող է վերաբերել տատանման չափերին։

Մի դիտողություն ևս։

Վկայակոչելով Մարքսի «Կապիտալից» այն միտքը, թե գյուղատնտեսության մեջ զբաղված մարդկանց աշխատանքը պետք է բավական արտադրողական լինի ամբողջ հասարակության կարիքները բավարարելու համար, Հ. Պետոյանը գրում է, թե «գյուղատնտեսության տեղն ու դերը ժողովրդական տնտեսության մեջ առանձնահատուկ են», թե «մարդը չի կարող իր գործունեության այլ ճյուղերը զարգացնել, եթե անբավարար է սննդամիջոցների արտադրությունը» (էջ 48)։ Այսպիսի բացատրությունը թերի է և աչքաթող է անում այն բացահայտ ճշմարտությունը, որ հողի տնտեսական բերրիության մակարդակը և, հետևապես, սննդամիջոցների արտադրության ծավալը կախված են մեքենաշինական ու քիմիական արդյունաբերության զարգացման մակարդակից, որոնք պետք է ապահովեն գյուղատնտեսությունը տեխնիկայով, պարարտանյութերով, գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուների դեմ պայքարելու քիմիական նյութերով և այլն։ Կարիք չկա մեջբերել պարտիայի Կենտրոնական կոմիտեի պլենումների որոշումներն այդ մասին։ Արդյունաբերության և գյուղատնտեսության միջև սահմանվող պրոպորցիայի համար բնորոշը արդյունաբերության առաջատար դերի ապահովումն է և այս չի կարելի մոռանալ։

Իր հոդվածի վերջում Հ. Պետոյանը ճիշտ կերպով նշում է աշխատանքի արտադրողականության բարձրացման և կոլտնտեսային արտադրանքի ինքնարժեքի իջեցման դերը կոլտնտեսությունների եկամուտների աճման գործում։ Նա առաջարկում է, որ կոլտնտեսություններն ու տնտեսագետներն իրենց ուշադրությունը բևեռեն այդ ակտուալ հարցերի վրա, զբաղվեն վարձատրության կարգավորման ու մթերքների առատության ստեղծման լուրջ պրոբլեմներով, որպեսզի կոլտնտեսությունների եկամուտներն աճեն ոչ թե բարձր գների միջոցով՝ ի հաշիվ հասարակության, այլ աշխատանքի արտադրողականության բարձրացման ու արտադրանքի ինքնարժեքի իջեցման միջոցով։

Ինչ խոսք, այս առաջարկները միանգամայն ընդունելի են։ Այդ է կոլտնտեսությունների եկամուտների աճման ճիշտ ուղին, դրան են կոչված պարտիայի միջոցառումները, պարտիական ու պետական ղեկավարությունը արտադրական սկզբունքով կազմակերպելը, կոլտնտեսային-սովխոզային վարչությունների գործունեությունը։

Բայց դրանք ո՛չ միայն չեն պարզում դիֆերենցիալ ռենտայի էությունը, այլև չեն վերացնում նրա գոյությունը կոլտնտեսային արտադրության առկայության պայմաններում, ուստի և չի **վերանում դիֆերենցիալ ռենտայի էության ճիշտ ըմբռնման անհրաժեշտությունը**։



կովկասյան բանակի առաջին ավիացիոն դիվիզիոնը, որը պաշտպանում էր կարմիր բանակի նարձակումը մենշևիկյան Վրաստանի դեմ: Արթուր Գույյանն ակտիվ մասնակցեց եղբայրական Վրաստանի ազատագրման համար մղված մարտերին: Հետագայում իր մարտական ընկերներ Կուդրինի, Մելնիկովի, Պետրենկոյի և առաջին ավիացիոն դիվիզիոնի մյուս օդաչուների հետ Գույյանը կռվում էր մենշևիկյան, դաշնակցական և մուսավաթական բանդաների դեմ: Այդ կռիվների ընթացքում նա կատարում է ավելի քան 130 մարտական ու հետախուզական թռիչք:

Արթուր Գույյանը Թբիլիսիից Երևան է կանչվում և նշանակվում ավիաջոկատի հրամանատար: Հայկական ավիաջոկատն ուղարկվում է Մոսկվա՝ ստանալու նոր մեքենաներ: Գույյանը վարժեցնում է անձնակազմը նոր ինքնաթիռներով թռիչքներ կատարելու: Հայկական ավիաջոկատին մեծ չափով օգնում էր նրա շեֆը՝ Մոսկվայում Հայաստանի լիազոր-ներկայացուցիչ, հին բոլշևիկ Սահակ Տեր-Գաբրիելյանը: Այդ ժամանակ ջոկատի կազմում էին օդաչուներ՝ Յա. Սադովսկին, Ն. Զայնիլկովսկին, Վերժբիցկին, Գ. Գրիգորևը, Մ. Բրազաը, Տ. Նեկրասովը, Գ. Գորբանը, Լ. Արովյանը, Վ. Եփիմովը և Ն. Նուրովը: Ջոկատի մեխանիկն էր Մ. Բաղդասարովը: Մայիսի վերջերին Ա. Ռաֆայելյանցն ընդունվեց ռազմա-օդային ակադեմիա և նրա փոխարեն ջոկատի կոմիսար նշանակվեց Գ. Վոլոբույևը: Հետագայում Ա. Ռաֆայելյանցը դարձավ ականավոր սովետական ավիակոնստրուկտոր:

1922 թվականին Սովետական Հայաստանի ավիաջոկատը՝ նոր ինքնաթիռներով ու վարժված անձնակազմով վերադառնում է Երևան: Ջոկատին սիրով հանդիպում է Ս. Տեր-Գաբրիելյանը և լուսանկարվում նրա անձնակազմի հետ:

Արթուր Գույյանը ջոկատի հրամանատարի պոստում մնաց մինչև 1922 թվականի աշունը և, որպես առաջավոր օդաչու կրկին կանչվեց Թբիլիսի, իսկ հետո Մոսկվա, որպես հրահանգիչ-օդաչու նոր տիպի ինքնաթիռների վարժական ջոկատում: Նա վերականգնում է իր կապերը Գ. Դիմիտրովի և Վ. Կոլարովի հետ, կնոջ հետ միասին հաճախակի այցելում նրանց: Գ. Դիմիտրովը սիրում էր Արթուրին՝ նրա արիության, ոևոլյուցիոն եռանդի և բանվոր դասակարգի գործին անսահման նվիրվածության համար:

1925 թվականին մի խումբ օդաչուների՝ Տումանսկու, Պերեգոնովի, Շկապայի, Յանկոյի հետ Ա. Գույյանին ուղարկեցին Տաշքենդ՝ Թուրքեստանի ռազմանակատի ավիացիան ուժեղացնելու նպատակով: Այստեղ օդակի հրամանատարներ Գույյանը և Տումանսկին անձնակազմին սովորեցնում ու վարժեցնում էին թռիչքներ կատարելու կատարելագործված նոր ինքնաթիռներով, հաղորդում իրենց մարտական հարուստ փորձը, կռվի տակտիկան:

Եվ ահա սկսվում են Գույյանի ու նրա ընկերների մարտական գործողությունները ընդդեմ բասմաչների ջոկատների: Նրանք թռչում էին հետախուզության, ռմբակոծում Տուրդի-Տախտաբայի, Իբրահիմ բեկի, Ջունաիդ խանի և այլ ավազակախմբերի ջոկատները:

Զրույցի ժամանակ Թուրքեստանի ռազմանակատի ռազմա-օդային ուժերի նախկին հրամանատար, ավիացիայի պաշտոնաթող գեներալ-մայոր Ա. Ն. Աֆանասևն ասաց.

— Երբ մեզ մոտ՝ Տաշքենդ եկան քաղաքացիական կռիվների ականավոր օդաչուներ Գույյան-Ռիլսկին, Տումանսկին և ուրիշներ, ռազմանակատի ավիացիան միանգամից կենդանացավ: Մեր բոլոր օդաչուներին նրանք սովորեցրին թռիչքներ կատարել ավելի կատարելագործված ինքնաթիռներով, վարժեցնել նրանց: Դա հնարավորություն տվեց մեր ավիացիային՝ ավելի էական օգնություն ցույց տալ ցամաքային զորքերին՝ ինչպես հետախուզական տեղեկություններ հաղորդելու, այնպես էլ զորքերի մարտական փոխգործողությունները ծավալելու գործում: Հաճախ օդանավակայանում տեսնում էի, թե ինչպես Արթուր Գույյանն իր օդակի օդաչուներին սովորեցնում էր միջինասիական պայմաններում մարտական գործողությունների կիրառման տակտիկան: Ես նրան ճանաչեցի որպես մեծ եռանդի տեր օդաչուի ու հրամանատարի: Նա ինձ վրա մեծ տպավորություն թողեց: Արթուր Գույյանը գերազանց օդաչու էր, լավ մեթոդիստ և անձնակազմի հիանալի դաստիարակ: Միաժամանակ նա վերին աստիճանի կուլտուրական, գրագետ, հմայիչ մարդ էր, ընկեր:

Ես երբեք չեմ տեսել նրան ընկճված վիճակում: Նա միշտ կենսուրախ, համեստ ու կարգապահ էր: Ընկերների շրջանում մեծ հեղինակություն և հարգանք էր վայելում: Որպես հրամանատար շատ մանրանկատ էր, պահանջկոտ՝ իր և ներակաների նկատմամբ: Հենց այդ օդաչուական, հրամանատարական և մարդկային բարձր հատկությունների համար ես նրան նշանակեցի իմ շեֆ-օդաչուն և հանձնարարեցի սպասարկել ռազմանակատի հրամանատարին, ռազմանակատի խորհրդի անդամին, կառավարության անդամներին և մյուս բարձրաստիճան սպաներին:

Նա ո՛չ միայն լավ օդաչու էր, այլև՝ զգայուն ընկեր և լավ ամուսին: Ջերմորեն սիրում էր կնոջը՝ Ցյորիդա Իվանովնային: Բոլոր կովկասցիների նման նա էլ կրակոտ սիրտ ուներ: Գույյանը բազմակողմանի զարգացած, կրթված և լայն մտահորիզոնի տեր մարդ էր, հաճելի էր նրա հետ զրուցելը: Նա շատ էր կարդում գեղարվեստական գրականություն, լավ խոսում էր ֆրանսերեն, տիրապետում էր բուլղարերենին, նայերենին և ադրբեջաներենին: Ավելին, նա լավ երգում էր, պարում, նվագում դաշնամուրի վրա, հմուտ սպորտսմեն էր, հափշտակությամբ զբաղվում էր սպորտի համարյա բոլոր ձևերով»:

Արթուր Գույյանը 1922 թվականին ընդունվեց կոմունիստական պարտիայի շարքերը: «Պարտիական ու ընդհանուր ժողովներում նա հանդես էր գալիս կրակոտ ճառերով,— հիշում է ընկ. Աֆանասևը,— հանդես էր գալիս որպես իր գործի քաջահմուտ ու գիտակ մարդ. խելացի ու համոզիչ էին նրա փաստարկները, հետևությունները՝ պարզ ու հստակ: Իր ելույթներով նա ներկա գտնվողների սրտերում խոր տպավորություն էր առաջ բերում թշնամու նկատմամբ: Թշնամիներն այդ լավ գիտեին և ամեն կերպ փորձում էին ոչնչացնել նրան»:

Երբ մի առիթով զրուցեցինք Ա. Գույյանի մարտական ընկերոջ՝ Ալեքսեյ Կոնստանտինովիչ Տումանսկու հետ, նա ասաց.

«— Արթուրն իմ լավ բարեկամն էր: Ես նրա հետ ծանոթացել էի Մոսկվայում, բայց միասին գալով Տաշքենդ, մենք դարձանք ո՛չ միայն բարեկամներ, այլև՝ եղբայրներ: Նա միշտ կենսուրախ էր, աշխույժ ու շարժուն, ուներ մարտական օդաչուին հատուկ առյուծի սիրտ, բայց և՝ դեռատի աղջկա համեստություն: Գույյանը լավ ռազմագետ էր և բարձր կարգի օդաչու: Նրան հայտնի էին, ընդօրինակում նրա մարտական հարուստ փորձը, նրա ասածը օրենք էր բոլորի համար: Նա օդաչուական-տեխնիկական անձնակազմի դաստիարակության գործում հրամանատարի անփոխարինելի օգնականն էր: Մեր օդաչուները, այդ թվում նաև Արթուր Վասիլևիչը, մասնակցեցին 1925 թվականին Սովետական Թուրքեստան ներխուժած իրանա-գերմանական զորքերի ջախջախմանը:

Իրանցիներն ունեին շատ ինքնաթիռներ և գերմանական օդաչուներ: Օտրեկ գետի մոտ մարտեր էին մղվում և՛ ցամաքում, և՛ օդում:

Մեր ավիացիան կենտրոնացած էր Հասան Կուլի և Չիկիշլի օդանավակայաններում: Ավիաջոկատի օդաչուները սկզբից ևեթ լավ դաս տվին գերմանական օդաչուներին, նրանց հասկացրին, թե ինչ է նշանակում ավազակային թռիչքներ կատարել սովետական տերիտորիայի վրա: Օդային մարտերում առանձնապես աչքի էր ընկնում Արթուր Գույյանը: Նա հաճախ էր փորձում օդային մարտի մեջ քաշել գերմանացիներին: Արթուրը դեռևս 1917—1918 թվականներին հանդիպել էր գերմանացիներին, նա լավ գիտեր նրանց տեխնիկան ու բարքերը: Դեռևս Արևմտյան մղված մարտերում նա բազմիցս հաղթանակով էր դուրս եկել օդային մարտերից:

Թուրքեստանում գերմանացիները հանձին Արթուր Գույյանի տեսնում էին սովետական Ասսին, որն ուներ ավիացիոն բարձր կուլտուրա. ահա թե ինչու, երբ նկատում էին նրա ինքնաթիռը, խույս էին տալիս մարտից և, օգտագործելով իրենց ինքնաթիռների արագության առավելությունը, հեռանում:

Մեր օդաչուների արիության ու խիզախության շնորհիվ սովետական երկինքը շուտով մաքրվեց իրանա-գերմանական օդահեններից: Ցուցաբերած անձնվիրության համար Թուրքեստանի ռազմանակատի հրամանատարը շնորհակալություն հայտնեց Արթուր Գույյանին ու նրա օդակի օդաչուներին պարգևատրեց թանկարժեք նվերներով: Գույյանին հանձնված արծաթե ծխախոտատուփի վրա փորագրված էր. «Խ ի զ ա խ, ա ն ձ ն վ ե ր օ դ ա յ ի ն մ ա ր տ ի կ ի ն՝ ռ ա զ մ ա ն ա կ ա տ ի ռ ա զ մ ա ռ և ո լ յ ո ւ ց ի ո ն խ ո ր հ ր դ ի կ ո ղ մ ի ց»:

1925—1926 թվականներին ավիաջոկատը, որտեղ ծառայում էր Գույյանը, մասնակցում էր Իբրահիմ բեկի բանդաների դեմ մղվող մարտական գործողություններին:

Հաճախ Գույյանը հեռու էր թռչում, գնում հետախուզության՝ պարզելու, թե դեպի ո՞ւր են շարժվում բասմաչների ջոկատները, ճշտում էր մեր զորքերի գործողությունների ու կրակի ուղղությունը: Նա հմտորեն էր կատարում այդ պատասխանատու առաջադրանքները: Հենց որ բացահայտում էր հակառակորդի շարժման ուղղությունը, անմիջապես ինքնաթիռով տանում էր մի քանի գնդացրորդների և նրանց իջեցնում այն ճանապարհների մոտ, որտեղից շարժվում էին հակառակորդի ջոկատները: Երբ մոտենում էին նրանք, մեր գնդացրորդները գետնից, Գույյանը օդից՝ խորտակիչ կրակ էին բացում, իսկ կարմիրբանակայինների հեծյալ խմբերը հետապնդում էին մեր կրակից շշմած, ցաքուցրիվ թշնամուն և ոչնչացնում:

Այդ ավազակախմբերի ղեկավարները թանկ էին գնահատել մեր օդաչուների գլուխները: Մասնավորապես Գույյանի գլխի համար տասը հազար ռուբլի ոսկով պարգև էր սահմանվել:

1927 թվականին անգլիացիների կողմից լավ զինված բասմաչների խմբերը՝ միջինասիական ժողովուրդների ոխերիմ թշնամի Ջունաիդ խանի գլխավորությամբ Աֆղանստանի տերիտորիայից շարժվում էին Թուրքեստանի խորքը, նպատակ ունենալով տապալել սովետական իշխանությունը և վերականգնել բայերի ու խաների տիրապետությունը:

Ջունաիդ խանի բանդաները մտեցել էին Խոջա-Կումբեզ ղշլաղին: Այդտեղ ապրում էին խսկական հայրենասերներ, որոնք ամեն ինչ անում

էին սովետական իշխանությունը պաշտպանելու համար: Այդ դշլաղի շեֆն էին Թուրքեստանի ռազմաճակատի կոմբրիգ Յա. Մելքումովի հրամանատարության տակ գտնվող առանձին հեծյալ բրիգադայի զորամասերը: Դշլաղի բնակիչները բազմիցս օգնել էին մեր զորամասերին բասմաչների դեմ մղվող մարտերում: Ահա թե ինչու Ջունաիդ խանը ցանկանում էր շրջապատել և ոչնչացնել դշլաղի բոլոր բնակիչներին:

Հոկտեմբերի 2-ի առավոտյան Գուլյանը հետախուզության գնաց: Նա նկատեց, որ Ջունաիդ խանի խմբերը շարժվում են Թերմեզի ուղղությամբ: Արթուրը ոմբակոծեց ու գնդակոծեց հակառակորդին և, վերադառնալով Թերմեզ, հրամանատարությանը զեկուցեց հետախուզության արդյունքների մասին: Նա հրաման ստացավ՝ Ի. Պետրովի հետ թռչել Խոջա-Կումբեգի շրջանը և կասեցնել հակառակորդի առաջխաղացումը՝ մինչև որ մոտենան Մելքումովի հեծյալ զորամասերը:

Հրամանը հարկավոր էր անհապաղ կատարել: Գուլյանն անմիջապես օդ բարձրացավ: Խոջա-Կումբեգի շրջանում նկատեց, որ բասմաչները շրջապատել են դշլաղը և ցանկանում են այն գրավել: Նա ռումբեր գցեց հակառակորդի առանձին կուտակումների վրա, ապա սրընթաց անցնելով թշնամու գլխավերևով, գնդացրային ուժեղ կրակ բաց արեց: Թշնամուն ռմբակոծում ու գնդակոծում էր նաև օդաչու Պետրովը:

Ջունաիդ խանն ուներ անգլիական զենիթային գնդացիրներ: Նրանք կրակ բացեցին Գուլյանի ու Պետրովի ինքնաթիռների վրա: Գնդակը դիպավ Գուլյանի ինքնաթիռի ռադիատորին, ծակեց այն, ջուրն սկսեց հոսել: Շարժիչը կանգ առավ. Այդ վիճակում Գուլյանն այլ ելք չուներ, քան թողնել մարտը: Սակայն ինքնաթիռը գտնվում էր ոչ մեծ բարձրության վրա և նման քայլ անել հնարավոր չէր: Նա հեռու թռչել չէր կարող և հարկադրական վայրէջք կատարեց հակառակորդից ոչ հեռու ավազուտներում:

Ջունաիդ խանը հրամայեց շրջապատել օդանավը և օդաչուներին գերի վերցնել: Սակայն սխալ էին թշնամու հաշիվները: Վայրէջք կատարելուց հետո Գուլյանը, օդաչու-դիտորդ Յանկոն և բորտմեխանիկ Ֆյոդորովը կրակ բացեցին ամեն կողմից մոտեցող թշնամու վրա: Անհավասար մարտում քաջերը ստացել էին 2—3 վերք, բայց շարունակում էին մարտնչել: Երբ փամփուշտները վերջացան, նրանք շարունակեցին հակառակորդին հարվածել նռնակներով, կրակել ատրճանակներով:

Տեսնելով, որ մարտական ընկերները զոհվել են, և հակառակորդն ավելի է սեղմում օղակը, Գուլյանը ատրճանակի վերջին գնդակով վերջ տվեց իր կյանքին:

Ջունաիդ խանը հրամայեց կտրել Գուլյանի գլուխը և ամրացնել ցցի վրա: Ցիցը կանգնեցվեց ինքնաթիռի առջևում՝ 10 մետր հեռավորության վրա: Նրա հրամանով մաս-մաս արվեց Գուլյանի մարմինը, ապա օդանավը՝ օդաչուների դիակների հետ, հրկիզվեց:

Հերոսի մահով ընկան Արթուր Գուլյան-Ռիլսկին ու նրա զինակիցներ Յանկոն ու Ֆյոդորովը, նրանք իրենց կյանքը նվիրեցին մեր հայրենիքի ազատության, անկախության ու պատվի համար: Հերոսների պարմ գերեզմանաքումբը բարձրացավ Թաշաուզի կենտրոնական հրապարակում:

Գուլյանի ընկերները և հեծյալ բրիգադը՝ Յա. Մելքումովի հրամանատարությամբ, վրեժ լուծեցին մեր քաջարի օդաչուների կյանքի համար և գլխովին ջախջախեցին Ջունաիդ խանի ավազակախմբերին: Արթուր Վասիլևիչ Գուլյանը հետմահու պարգևատրվեց «Կարմիր դրոշ» մարտական շքանշանով:

Սովետական ականավոր օդաչու, հայ ժողովրդի արժանավոր զավակ Ա. Գուլյանի մահվան կապակցությամբ *«Вестник воздушного флота»* հանդեսի 1927 թ. № 12-ում տպագրված մահախոսականում ասված է.

«Հոկտեմբերի 2-ին ողբերգական մահով զոհվեց Սովետական Միության անվեհեր օդաչուներից մեկը՝ օդաչու Արթուր Ռիլսկին: Նրա հերոսական, անժամանակ մահը բոլորի, նույնիսկ նրա հետ ամենափոքր շփում ունեցող մարդկանց սրտերում առաջ է բերել խոր կսկիծ: Երիտասարդ, բացառիկ կենսուրախ և մեծ եռանդի տեր ընկ. Ռիլսկին առաջադրված խնդիրները կատարելու ճանապարհին ոչ մի արգելքի առաջ կանգ չէր առնում: Ինչ-որ, մարդ չի հավատում, որ նա չկա մեր շարքերում, որ կորվել է երիտասարդ սովետական ավիացիայի համար այնքան անհրաժեշտ կյանքի թելը...

... Հանգուցյալ ընկ. Մյասնիկյանը ընկ. Գուլյանին համարում էր գերազանց օդաչու, տաղանդավոր կազմակերպիչ...»:

Խ. ՊԵՏՐՈՍՅԱՆՑ

Գվարդիայի պաշտոնաթող գնդապետ



# ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ



## ԱԶՆԻՎ ՀՈԳՈՒ ՄԵԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ




«Եթե երբևիցե եղել է այնպիսի մի կին, որն իր երջանկությունն ուրիշներին երջանկացնելու մեջ է գտել, ապա այդպիսին նա էր»: Ֆ. Էնգելսը մարդու անսահման մեծությունն արտացոլող այս խոր ու պարզ խոսքերով է վերջացրել իր դամբանականը լավագույն կանանցից մեկի՝ Ջեննի ֆոն Վեստֆալեն Մարքսի մասին: Նրա շիրմի վրա արտասանած այդ խոսքերով է սկսում գերմանացի կին գրող Լուիզա Դորնեմանը իր Ջեննի Մարքս գիրքը*: Գրքի ամեն մի տողը հագեցած է այն ջերմ սիրով, որ տածել է հեղինակը Մարքսի հավատարիմ ու անձնվեր ուղեկցի նկատմամբ: Այդ սքանչելի և նույնքան գերող ու ազնիվ հոգու տեր կնոջ՝ զրկանքներով ու զոհողություններով լի կյանքը հեղինակը նկարագրել է սերտորեն կապված Կարլ Մարքսի կենսագրության հետ: Նրանց կյանքի պատմությունը նա հյուսել է միջազգային բանվորական շարժման ֆոնի վրա՝ ֆրանսիական բուրժուական ռևոլյուցիայից սկսած մինչև Փարիզյան կոմունան:

Մարքսը միշտ հիացել է իր կնոջ արտաքին ու հոգեկան գեղեցկությամբ:

Երկու խորապես իրար սիրող մեծ հոգիների անզուգական, կատարյալ սիրո պատմությունն է այս գիրքը, սեր, որը երիտասարդ Մարքսին մղեց տարվելու բանաստեղծություններ գրելով, բանաստեղծություններ, որոնք ստանալով Ջեննին լալիս էր երջանկության ու ցավի արցունքներով և, ինչպես պատմում է նրա փեսան՝ Պոլ Լաֆարգը, իրենց պատանեկան սիրո այդ ամենախոս վկայությունները նա սրբությամբ պահում էր մինչև կյանքի վերջը:

Կարլ Մարքսի հայրը՝ Հենրիխ Մարքսը և Ջեննիի հայրը՝ բարոն Լյուդվիգ ֆոն Վեստֆալենը մտերիմներ էին: Նրանց երեխաները միասին են անցկացրել իրենց մանկությունը: Մանկական անմեղ խաղերում է ծնվել նրանց սերը: Ծերանալուց հետո էլ զույգին ջերմացրել, տոկուն ու կենսախինդ է պահել նրանց հոգիներում թևածող հավերժական սերը, որը համակում, հոգեպես վեհացնում էր նաև այն բոլորին, ովքեր նրանց ճանաչելու, նրանց մտերմությունը վայելելու երջանկությունն էին ունենում:

Ջեննիի հայրն իր դասակարգի մարդկանցից տարբերվում էր լայն մտահորիզոնով, կրթությամբ ու բազմակողմանի զարգացմամբ: Երեխաների՝ գրոսանքներից հետո վայելած հանգստի ժամերը համեմվում էին Հոմերոսի երգերից, Շեքսպիրի ողբերգություններից ու կատակերգություններից կատարած նրա արտասանություններով: Զմռան գիշերները կարճացնում, ջերմացնում էին նրա հուզաթաթավ ձայնով պատմած հրապուրիչ հեքիաթներն ու անմոռաց պատմությունները... Այդ ամենի շնորհիվ վաղ մանկությունից երեխաների մեջ արթնացավ սերը պոեզիայի, կատարյալի, մարդկային լավագույն հատկանիշների, գեղեցկի նկատմամբ: Այդ զգլխիչ մթնոլորտում նստած էր ամենագեղեցի-

* Луиза Дорнеман — Женни Маркс, М., 1962 г.

# ԲԱՑ ՆԱՄԱԿ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐԻՆ

ՀԱՐԳԵԼԻ ԸՆԿԵՐ Ջ. ՆԱՐԻՄԱՆՈՎ

Թույլ տվեք հրապարակով հիշեցնել Ձեզ այն տրադիցիաների և պրակտիկայի մասին, որոնք ստեղծվել են սովետական մամուլի և սոցիալիստական շինարարության ընթացքում: Երբ պարտիական-սովետական մամուլի այս կամ այն օրգանում որևէ հարց է արծարծվում, որի լուծումը վերաբերում է տվյալ գործչին, ապա նա մամուլի համապատասխան օրգաններին գրավոր պատասխանում է իր ձեռնարկումների ու նկատառումների վերաբերյալ: Այդպես են վարվում և պարտիական ու սովետական մարմինները, հասարակական կազմակերպությունները:

Սակայն Դուք, չունկնդրելով մամուլի ձայնին, փաստորեն ոտնահարում եք այդ տրադիցիաները: 1962 թ. մեր ամսագրի 10-րդ համարում զետեղեցինք բժիշկներ Ա. Հայիրյանի ու Հ. Հովհաննիսյանի նամակները, առաջինի գիտական փորձի առթիվ: Այս կապակցությամբ գրել էինք. «...ամսագրի խմբագրությունը հույսով է, որ Հայկական ՍՍՌ առողջապահության մինիստր ընկ. Ջ. Նարիմանովը և գիտահետազոտական հիմնարկները պայմաններ կստեղծեն ընկ. Հայիրյանի մտահղացումն իրականացնելու համար»:

Այս առթիվ Դուք լռեցիք:

Խմբագրությունը նոյեմբերի մեկին, հիշեցման կարգով, դիմել էր Ձեզ՝ խնդրելով հայտնել, թե մինիստրությունը գործնական ինչ քայլեր է անում բժիշկ Հայիրյանի մտահղացումներն ավարտին հասցնելու համար:

Ցավոք, Դուք նորից լռեցիք:

Մեր ամսագրի անցյալ տարվա 7-րդ համարում զետեղեցինք բժիշկ Ա. Հայիրյանի կենսաբրիո քնույթի հոդվածը, որի վերջում հարկադրված հականե անվանե նշել էինք, որ Դուք բռացել եք մամուլի նկատմամբ ունեցած Ձեր պարտականության մեջ: Ա. Հայիրյանի հոդվածի առթիվ ամսագրում արտահայտվեցին 12 ընկերներ, որոնք ընդգծեցին հարցերի այժմեականությունն ու կարևորությունը:

Այս անգամ ևս հավատարիմ Ձեր ոճին՝ լռեցիք:

Ի վերջո, մեծ ուշացումով (ավելի քան երեք ամիս) Ձեր գլխավորած մինիստրության բուժպրոֆիլակտիկ օգնության վարչության պետ ընկ. Ռ. Վիրաբյանից ստացանք մի «բացատրագիր», որում փորձ է արված հոդվածի բարձրացրած ծանրակշիռ հարցերին գրասենյակային մեկնություն տալ:

Անկեղծ ասած, դա մեզ չբավարարեց: Մենք այն համոզմանն ենք, որ բժ. Ա. Հայիրյանի խոհերը չափազանց կարևոր են և իրագործելի: Իսկ երբ գտնում էիք, որ որոշ հարցեր Ձեր իրավասության սահմաններից դուրս են (ինչպես դա մեզ գրում է ընկ. Ռ. Վիրաբյանը), ապա դա հիմնավոր առիթ և հարուստ նյութ կտար Ձեզ հանդես գալու միութենական մամուլում և հարց հարուցելու վերադաս օրգանների առջև լուծելու այդ հրատապ խնդիրները:

Մամուլում մինիստրների հանդես գալը անհրաժեշտ է և օգտակար: Ուստի հանուն հանրային շահերի միք զլանա օգտվելու մամուլի ուժից, որն անգնահատելի է:

ՀԱՐԳԱՆՔՆԵՐՈՎ՝ «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Մ. Գ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Է. ՍԱՐՈՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2-02-24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении тел. 2-02-24

ՎՖ 05201 | Պատվեր 3404 | Տիրաժ՝ 9250 | Գինը 25 կոպ.

Տա. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: | Ստորագրված է տպագրության 4/I1964 թ.

Հայկական ՍՍՌ կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության N 6 տպարան, Երևան:



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԷԼԵԿՏՐՈՆՆԵՐՆ ԱՄՐԱՑՆՈՒՄ ԵՆ ՊԼԱՍՏՄԱՍՍԱՆԵՐԸ

Բարձր հաճախականության էլեկտրական դաշտում պոլիմերային նյութերը փոխում են իրենց հատկությունները: Այդպիսի գիտումներ կատարել են սովետական ֆիզիկոսները և քիմիկոսները: Հետազոտական աշխատանքները կատարվել են Նոր շինանյութերի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի էլեկտրոֆիզիկայի լաբորատորիայում:

Գիտնականները բարձր հաճախականության հոսանքի ներգործությանն են ենթարկել պոլիվինիլքլորիդից, պոլիէթիլենից, պոլիստիրոլից պատրաստած շինանյութերի զանազան նմուշներ: Պարզվել է, որ տաքացման հետ միաժամանակ նյութերի մեջ տեղի են ունենում ֆիզիկոմեխանիկական փոփոխություններ: Բարձր հաճախականության դաշտի ազդեցության տակ այդ նյութերի կառուցվածքը կարգավորվում է, փոխգործողություն է սկսվում պոլիմերների մոլեկուլների և լցիչ նյութերի միջև: Մասնավորապես ուժեղանում է պոլիմերների կապը լցիչ նյութերի հետ:

Այդ հետազոտությունները թույլ կտան հետագայում ստեղծելու չկծկվող պոլիմերային նյութեր: Բարձր հաճախականությամբ մշակելուց հետո նկատելի չափով ամրանում են մակերևույթները: Գիտնականների կարծիքով հնարավոր կլինի ստանալ այնպիսի նյութեր, որոնք ավելի դժվար կմշակվեն, քան մարմարը:

## ՆԱՎԹԱՄՈՒՂ՝ ՆԱՎԹԻՑ

Պոլիմերիզացված պլաստմասսաների գիտահետազոտական ինստիտուտի աշխատողներն ստացել են հրակայուն պոլիստիրոլի նոր տեսակ: Մշակված է այն արտադրելու տեխնոլոգիան: Այդ պլաստիկատի ստացման համար հումքի աղբյուր են ծառայում նավթավերամշակման մթերքները:

Նոր մարկայի պոլիստիրոլն ունի մեխանիկական մեծ ամրություն, աչքի է ընկնում քիմիական բարձր կայունությամբ: Նավթամթերքի տեղափոխման և պահպանման համար դրանից պատրաստված խողովակները և ռեզերվուարները չեն վախենում կոռոզիայից: Այդպիսի նյութի մեկ տոննան փոխարինում է 6 տոննա պողպատի: Պոլիստիրոլից պատրաստված խողովակները հեշտ են եռակցվում, ենթարկվում են մեխանիկական մշակման:

## ԷԼԵԿՏՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐՁՐԱՑՆՈՒՄ Է ԲԵՐՔԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ

Սերմի ճառագայթահարումը ուլտրամանուշակագույն ճառագայթներով հասկավոր կուլտուրաների և հատիկային եգիպտացորենի բերքատվությունը բարձրացնում է միջին հաշվով 10 տոկոսով:

Գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման համամիութենական ինստիտուտի Զապորոժիեի ֆիլիալում ստեղծված է բարձր արտադրողական հարմարանք սերմերի ճառագայթահարման համար: Առանձնապես բարերար է նրա ազդեցությունը եգիպտացորենի վրա: Սիլոսի համար աճեցվող եգիպտացորենի սերմերը ճառագայթահարելիս բերքը 20 տոկոսով ավելանում է. բացի դրանից բարելավվում են կանաչ մասսայի կերային հատկությունները:

## ԿԱՇՎԻՑ ԱՄՈՒՐ

Նոր սինթետիկ նյութը՝ պավինոլը, իր մեջ միավորում է գործվածքի ու կաշվի հատկությունները: Այն օդաթափանց է, կամ, ինչպես ասում են մասնագետները, հիգիենիկ լավ հատկություններ ունի: Արտաքնապես պավինոլը նման է բնական կաշվին, բայց մի քանի անգամ ամուր է: Այդպիսի նյութ ստացել են Նորբաթաղանթի և արհեստական կաշվի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի աշխատակիցները:

Երկրի ձեռնարկություններն արդեն սկսել են պավինոլից կոշիկներ արտադրել տարվա բոլոր եղանակների համար:

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## *ԿԻՍԱՀԱՂՈՐԴՉԱՅԻՆ ԱՊԱՐԱՏ ԹԱՏՐՈՆԻ ՀՈՒՇԱՐԱՐԻ ՀԱՄԱՐ*

*Լեհաստանում պատրաստել են թատրոնի հուշարարին օգնող կիսահաղորդչային ապարատ։ Փոքրիկ ռադիոընդունիչը դերասանը դնում է ականջի հետևում, իսկ անտենան՝ դիմակի մեջ։ Այսպիսով դերասանին կարելի է հուշել ո՛չ միայն հուշարարի խցիկից, այլև բեմի ամեն մի կետից։*

## *ՍԵՐՄԱԽՏԱՀԱՆՄԱՆ ՄԵՔԵՆԱ*

*Բույսերի պաշտպանության համամիութենական ինստիտուտի մեքենայացման լաբորատորիայի ինժեներները գլխավոր մասնագիտական կոնստրուկտորական բյուրոյի աշխատակիցների հետ մեկտեղ ստեղծել են հացահատիկային կուլտուրաների սերմերը քիմիկատներով ախտահանելու ինքնաշարժ նոր մեքենա, որը կոչվում է «կոլոս»։ Մեքենան ինքն է բեռնում հացահատիկը և մի ժամում կարող է մշակել մինչև 20 տոննա սերմ։*

*«Կոլոսը» արդեն փորձարկվել է Սիբիրի, Դոնի, Հյուսիսային Կովկասի փորձադաշտերում։ Մեքենան իր կառուցվածքով շատ պարզ է, հարմար և շահավետ։ Այժմ այն փորձարկվում է եգիպտացորենի, բամբակենու և շաքարի ճակնդեղի սերմերի ախտահանման նպատակով։*

## *ԲՈՐԸ ԿՈՐԶՈՒՄ ԵՆ ՋՐԻՑ*

*Արժեքավոր քիմիական էլեմենտ բորը մինչև այսօր ստանում էին բոր պարունակող ապարներից։*

*Վրաստանի պոլիտեխնիկական ինստիտուտի անալիտիկ քիմիայի ամբիոնի աշխատակիցներն ապացուցել են, որ առավել հեշտ ու շահավետ է բորը կորզել ջրից՝ կիրառելով հայրենական իոնիտներ։ Բորը պատկանում է միկրոէլեմենտների թվին, առանց որոնց անհնար է կենդանիների ու բույսերի նորմալ կենսագործունեությունը։ Բորի միացությունները կիրառում են արդյունաբերության և գյուղատնտեսության ավելի քան հիսուն ճյուղերում։ Իսկ բնության մեջ դրանց հանքավայրերը հազվադեպ են։*

## *ՌԵՏԻՆ՝ ԱՎԱԶԻՑ*

*Դեռևս մոտիկ անցյալում անհնար էր այնպիսի ռետին ստանալ, որն իր առաձգականությունը, ամրությունն ու ճկունությունը պահպաներ հարյուր աստիճան սառնամանիքում և երեք հարյուր աստիճան շոգում։*

*Ահա Ս. Վ. Լեբեդևի անվան սինթետիկ կաուչուկի համամիութենական ինստիտուտում առաջին անգամ ստացել են հայտնի առաձգական նյութերից ամենաջերմակայունը։ Ուշագրավ է, որ այդ արտասովոր ռետինի հումքը սովորական ավազն է։*

*Նոր տեսակի կաուչուկը 5 անգամ ավելի ջերմադիմացկուն է, քան առաջներում թողարկվածները։ Այն ունի մի կարևոր առավելություն ևս — չի մաշվում, շրջապատի նկատմամբ չեզոք է, հետևապես և կարող է ծառայել որպես մեկուսիչ։*

## *ԷՆԵՐԳԻԱՆ ՊԱՀԵՍՏԱՎՈՐԵԼՈՒ ՆՈՐ ԵՂԱՆԱԿ*

*Ադրբեջանի գիտնականներն արևի էներգիան «պահեստավորելու» արտասովոր եղանակ են գտել։ Ի տարբերություն կրաքարը վառելու տարածված մեթոդի, նրանք առաջարկել են այն այրել արևի տակ։ Արևի ճառագայթները սպիտակ քարից անջատում են ածխաթթու գազ, որն արևի էներգիայի ներգործությամբ տարրալուծվում է թթվածնի և ածխածնի։ Ճառագայթահարված այդպիսի կրաքարը նույնիսկ շատ ժամանակ անց, հանգցնելիս շփվելով ջրի հետ, տալիս է մեծ քանակությամբ ջերմային էներգիա, որը կուտակվել է արևից։*